ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՂԷ.

ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ

ՔՆՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲՆԱԳԻՐ

—

ՀԱՏՈՐ Ա.

1. [illegible] — 2. [illegible] — 3. [illegible] — 4. [illegible]

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՄԻԱԲԱՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1922

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՂԶ.

# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ

Ա.



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1922

ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ

ՔՆՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲՆԱԳԻՐ

---

ՀԱՏՈՐ Ա.

1. ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ Ի ԳԻՐՍ ՊԱՏՃԱՌԱՑ. ԳՐԻԳՈՐ ՈՐԴԻ ԱԲԱՍԱՅ. ԴԱՒԻԹ ՔՈԲԱՅՐԵՑԻ. ՎԱՐԴԱՆ ՀԱՂԲԱՏԵՑԻ. — 2. ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ Ս. ԿԻՊՐԻԱՆՈՍԻ. — 3. ԹԷՈԴՈՐՈՍ ԱԲՈՒԿՈՒՌԱ ԵՒ ՆՈՐԱ ԳՈՐԾԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ԵՒ ՆՈՆՆԱՅԻ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ՀԱՅԵՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆԸ. — 4. ՇԱՊՈՒՀ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ ԵՒ ԻՒՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ։

---

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՄԻԱԲԱՆ




ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1922

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Որպէս զի ունենանք Հայոց Մատենագրութեան ընդհանուր Պատմութիւն մը, հարկ է կանխաւ հաւաքօրէն առանձին ուսումնասիրութիւններով նախնեաց մատենագրութիւնները, ճշդորոշել անոնց հեղինակներու ժամանակին եւ կենսագրութիւնը եւ լուծել կարգ մը խնդիրներ, որոնք ի մերձուստ կամ ի հեռուստ աղերս ունին անոնց հետ: Ասոնց պակասն նախապատրաստութեան կամ պիտի դժուարանայ Հայոց Մատենագրութեան պատմագրին գործը եւ կամ պիտի ծանրաբեռնէ Պատմութեան էջերը երկրորդական խնդիրներու լուծմամբ:

Այս ճանապարհին ընթացողի առջեւ այս կարգի խոչնդոտներ քանդել նպատակ ունին մեր “Մատենագրական Հետազօտութիւններ„, ուր առանց ժամանակի յաջորդութեան կամ նիւթի ընտրու-

թեան միտ դնելու՝ պիտի յուզուին նախնեաց Մատենագրութեան հայող խնդիրներ եւ պիտի տրուի անոնց անկաւոր լուծումը:

Այս ուղղութեամբ երեւցած են սկսեալ 1904 թուէն այլ եւ այլ ուսումնասիրութիւններ մեր գրչէն՝ «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ, որոնք ըստ մասին մնացած են ցրիւ նոյն Ուսումնաթերթին մէջ, քիչերուն մատչելի: Անոնցմէ մաս մը այս տեղ ամփոփելով կը յուսանք թէ աւելի ընդարձակ շրջանակի ծանօթացուցած կ՚ըլլանք:

Ա. գլուխը, էջ 78—84 ունի Յաւելուած մը, որուն կը խնդրենք որ մտադիր ըլլան ընթերցողները նախորդ էջերու ուղիղ իմացման համար (հմմտ. ուրիշ Յաւելուած մ՚ալ էջ 226):

Ամենայն ինչ յօգուտ եւ ի պայծառութիւն տոհմային մատենագրութեան:

Վիեննա, 30 Դեկտ. 1922:

ՀԵՂԻՆԱԿԸ

## Ա.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ Ի ԳԻՐՍ ՊԱՏՃԱՌԱՑ

---

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

## ԳՐԻԳՈՐ ՈՐԴԻ ԱԲԱՍԱՅ

*Վիեննայի Մխիթարեանց Մատենադարանի թիւ 47 Ձեռագիրը կը ներկայացընէ մեզ "Պատճառ լայն եւ նուրբ գրեանց առեալ ի Հարցն սրբոց եւ ի վարդապետաց եւ ի մի հաւաքեալ եւ հոգացեալ Մեծ րաբունապետին Գրիգորի որդւոյ Աբասայ": Այս խորագիրն կը գտնուի Ձեռագրին 6բ էջին վրայ, բուն գրութեան սկիզբը, ասկէ առեալ կոչած են յետինք գրութիւնս "Գիրք պատճառաց", ինչպէս կը տեսնուի գրքին ճակատէն (թղ. 1ա): Կարեւոր գործ մ'է բովանդակ գրութիւնս եւ շատերու ուշադրութիւնն գրաւած արդէն[1]. Երբ մենք յատուկ քննութեան նիւթ կ'ընենք զայս, բնականաբար առաջին քայլին իսկ պիտի պահանջուի մեզմէ պատասխանել թէ ով է Աբասայ*

---

[1] Հմմտ. Տաշեան՝ "Ցուցակ" էջ 213—233. նաեւ М. Теръ Мовсесянъ: Исторія перевода Библіи на армянскій языкъ. С.-Петербургъ 1902, էջ 225—238: Հմտալից գործոյս հեղինակին Մ. Տէր-Մովսէսեան երկար կը խօսի յիշեալ էջերու մէջ Պատճառաց գրոց արժէքին (Ա. Գրոց յարաբերութեամբ), հեղինակին եւ ժամանակին վրայ, ի մէջ բերելով նաեւ Էջմիածնի թ. 1650 Ձեռագրէն 7 հատուած (էջ 233—7):

որդի Գրիգորն եւ երբ կ՚ըլլայ գրութեան յօրինման ժամանակը։

Մեծ. Հ. Յ. Տաշեան նկատելով թէ պատճառաց գրոց հեղինակն ծանօթ է Դիոնեսիոս Արիսպագացւոյն վարուց, զոր թարգմանած է Յովհ. բժիշկ յամի 889 կամ 869 («Մատենադարան»՝ 383), կը դնէր հեղինակի եւ գրութեան ժամանակն այդ թուականէն ետքը (Յուց. 224—25) եւ ուրիշ տեղ մը (Սրբ. Պատարագամատոյց. 178) կը կցէր եզրակացութեան «կամ նաեւ կէտեր՝ որ աւելի ուշ ժամանակի կը վերաբերին»։ Եւ ուղիղ էր Հ. Տաշեանի նկատողութիւնը. թէեւ Մեսրոպ Վ. Տէր-Մովսէսեան իր յիշեալ գործոյն մէջ (էջ 230—32) շատ հիմնաւոր չտեսնելով ուշադրութիւն չդարձուց վերջին տողերուն եւ փորձեց աւելի հին Է—Ը դարէն ցուցնել։ Այս կարծիքը բոլորովին նոր եւ պատճառաց գրոց հեղինակի եւ ժամանակի համար ծանրակշիռ ըլլալուն հարկ է փոքր ինչ մանր դիտել։ Տէր-Մովսէսեան նկատելով որ Հ. Տաշեան հիմնուած է մի միայն Արիսպագացւոյն վարուց թարգմանութեան վրայ, կ՚ենթադրէ թէ նոյն գործն Ը դարուն՝ Արիսպագացւոյն գործոց հետ թարգմանած ըլլայ նաեւ Ստ. Սիւնեցի 730էն ոչ ուշ եւ ասկէ անմիջապէս օգտուած ըլլայ Գրիգոր։ Այսպէս Ը դարուն զետեղելէ ետքը զԳրիգոր, կը փնտռէ այդ դարուն Արշարու որդի Գրիգոր մը։ Արդեամբք ալ կը գտնէ «Արշարուն Գրիգորի Զօրափորեցւոյ» անձն, որ յամի 678 կը թարգ-

մանէ Սեղբեստրոսի վարքը[1]: Առանց դժուարու-թեան, կը գրէ, այս "Սրբոյ ոսկի (!) Գրիգոր եպիսկոպոս (!) Հօրափորեցին» (անդ. էջ 231, եւ ԱՐՐՏ, 1904, էջ 217) կրնար օգտուիլ Ստեփանոսի թարգմանութենէն: «Այն ժամանակ նա եօթից — ութերորդ դարու հեղինակ է, հետեւապէս նոյն ժամանակից է նաեւ նրա կազմած պատճառաց գիրքը» (ԱՐՐՏ. անդ): Ու այս նպատակաւ որ կը համարի այն պարագան ալ, որ Սիոն կաթողիկոսի կանոններու (յամի 768) ազդեցութիւնն չի տեսնուիր Գրիգորի վրայ: Ենթադրութեանս շատ չափազանց ըլլալը զգացած է եւ ինքը հեղինակն եւ չհամարձակելով վճռաբար կանգ առնալ այսպիսի ենթադրութեան քով, կը բաւականանայ terminus ad quem համարել Թ. դարը: «Իսկ Թ. դարն կը համարինք վերջին ժամանակակէտ Գրիգորի գրքին. վասն զի եթէ նա Թ. դարէն յետոյ ապրած ըլլար, օգտուած պիտի ըլլար նաեւ այնպիսի գրութիւններէ, որոնք Թ. դարէն վերջը գրուած կամ թարգմանուած են» (անդ. 232):

Այս հաստատութիւնն ընդունելու համար հարկ է կանխաւ տարակուսիլ Պատճառաց գրոց հարազատութեան վրայ. որ սակայն անհիմն է. մեր Ձեռագիրն ծագելով Էջմիածնի Թ. 1650 (ըստ Կար. Ցուց. էջ 178, Թ. 1608) Օրինակէն յամենայնի նոյն է բովանդակութեամբն անոր հետ. իսկ Էջմիածնի Ձեռագրէն հնագոյն մը

[1] Սոկրատայ Սքոլաստիկոսի Եկեղ. Պատմութիւն. Վաղարշապատ, 1897. էջ 591 եւ Յաջր. մէջ:

ծանօթ չէ. Հետեւաբար քանի որ կը պակսի որ եւ իցէ ապացոյց փոփոխութեան ենթարկուած ըլլալու ի նպաստ, պէտք ենք ճանչնալ անպատճառ համաձայն սկզբնականին:

Այս վիճակի մէջ կրկտենք թէ չկա՞յ Թ. դարէն ուշ ժամանակաց հետքեր: Հ. Տաշեան կը հաստատէր զայս, եւ մենք այսպիսի հեղինակութեան մը վրայ յեցած մեր քննութեան քայլերն անկասկած կրնանք առնուլ: Բաց ի ծանօթ հնագոյն (Է—Ը դար) հարց եւ մատենագրաց յիշատակութենէ, կը պատահինք Պատճառաց գրոց մէջ նաեւ ընդարձակ կոչումներու "Դաւիթ վարդապետի" կամ "Դաւիթ Վ. Քոբայրեցւոյ" անուամբ, որ ծաղկեցաւ ԺԲ դարուն (Պատմ. Հայկ. Հին Դպր. Գ. տպ. 702). եւ անկէ աւելի անագանագոյն ժամանակի՝ Մխիթար Գոշի գրութենէն[1]: Մխիթար Գոշ վախճանեցաւ 1213ին. այս պարագան կը ցուցընէ թէ Պատճառաց գրոց հեղինակն այդ թուականէն ետքը կամ ոչ շատ կանուխ ապրած եւ յօրինած պիտի ըլլայ: Զարմանալի է որ այս կէտին ուշադրութիւն չէր դարձուած: Այս տակաւին անորոշ ժամանակամիջոցն ալ կարելի է ամփոփել:

1904ին, երբ Նոննոսի Գրիգոր Աստուածաբանի հինգ ճառից Մեկնութիւններն ուսումնասիրելու առթիւ (ՀԱ. 1904, էջ 139—146, 165—73) հարկ եղաւ Պատճառաց գրոց

---

[1] "Փիլոնի յաղագս Նախախնամութեան բան առաջին առ Աղեքսանդրոս. Գոշէն ասացեալ պատճառ" ։ Թ. 47. Թղ. 217բ. Հմմտ. Ցուց. 224.

ժամանակն ճշգրտել, իրեն ընտելական աղնու-
թեամբն մոռցիր ըրաւ զմեզ Մեծ. Հ. Տաշեան
Ս. Վ. Ջալալեանցի ճանապարհորդութիւն ի
Մեծն Հայաստան գործոյն մէջ (Մասն Ա. Տփ.
1842) "Աբասայ որդւոյ Գրիգորի„ մէկ արձա-
նագրութեան, նկատելով թէ ապահովապէս
պատճառաց գրոց հեղինակին ըլլալը է. ար-
դեամբք ալ գտայ նոյն գրոց մէջ (էջ 12) Սա-
նահնի վանքի արձանագրութեան մը հետեւեալ
տողերն. "Գրիգոր որդի Աբասայ ընծայեաց մե-
նաստանիս մեծ խաչ եւ ԾԴ գիրք, ի թվին
Հայոց ՈԿԶ (1217)„, ուր որչափ ալ պարզ
կերպով կը նշմարուէր պատճառաց գրոց հեղի-
նակի անունն եւ ժամանակն[1], այսու հանդերձ
կը լռէր արձանագրութեան մեր բերած հա-
տուածն Գրիգորի անձնաւորութեան մասին. այս-
պէս թէ եկեղեցակա՞ն էր նա թէ աշխարհական
անձ. եւ կարելի էր տարակուսիլ փոքր դժուա-
րութիւն մ'իսկ եղած ժամանակ: Պատճառաց
գրոց վերը ի մէջ բերուած խորագիրն զննելով,
բարձրաստիճան եկեղեցական անձ մը — "Մեծ
րաբունապետ„ մը կը ներկայանայ Գրիգոր,
թէեւ նորէն՝ մութ բացատրութեամբն մեր աչ-
քէն վարագուրաւ մը սքօղեալ[2]: Ինչ պիտի

---

1 Ժամանակին փութացինք նշանակել Հանդէսի մէջ (էջ 144 ծն. 4) իբրեւ ամենահաւանական թուական պատճառաց գրոց յօրինման, որ եւ ընդունելի երեւցաւ. Հմմտ. ՀԱ. 1905, էջ 15 ծն.:

2 Այս մթութեան մէջ նշմարած է ինք զինքը Կարապետ Վարդապետն ալ (ԱՐՐՏ. 1895, էջ 148), երբ կը հրատարակէր այս Գրքէն "Որոգինի ասացեալ ի տեսութիւն Եզեկիէլի մարգարէի„ հատուածը (անդ. էջ 149–150):

*իմանանք Մեծ րաբունապետով, եպիսկոպոսի¹, թէ կաթողիկոս²:*

*Բայց Սանահնի վանաց վերոյիշեալ արձանագրութիւնն, ինչպէս այժմ կը տեսնեմ, բուն իսկականը չէ, այլ համառօտ բովանդակութիւնն միայն։ Պետերբուրգի Ռուսաց կայսերական Ակադեմիային ներկայացուցած է գիտնականն Բրոսէ* 1862*ին Յովհ. Ղրիմեցւոյ Հաղբատ եւ Սանահին վանաց ստորագրութիւնն ռուսերէն լեզուաւ, եւ որ նոյն Ակադեմիայի Յիշատակագրոց մէջ հրատարակուած է յաջորդ տարին³։ Յովհաննէս Ղրիմեցի մի առ մի նշանակած է հոս հանդերձ ռուսերէն թարգմանութեամբ՝ վանացս* 60 *արձանագրութիւններն էջ* 46—67)։ *Վերոյիշեալ արձանագրութիւնն այսպէս է իսկականի մէջ.*

*"Ի թուին Հայոց ՈԿԶ* (= 1217) *ես Գրիգոր Վարդապետս՝ որդի Արասայ⁴, առաջնորդ ուխտիս (Սանահնի Ս. Աստուածածնի վանաց)՝ ետու յԱստուածածինս խաչ մի մեծ, ժգ գիրք.*

---

1 Այսպէս կը համրեն եւ կը թարգմանէ Տէր-Մովսէսեան, անդ, 226 եւ այլուր. ԱՐԱՏ. 1904, էջ 217։

2 Հմմտ. Պատմ. Հայկ. հին գիր. 779։

3 Description des monastères arméniens d'Haghbat et de Sanahin, par l'archimandrite Jean de Crimée, avec notes et appendice par M. Brosset. (Mémoires de l'Académie impériale de Sciences de St. Pétersbourg. VII série, t. VI, n. 6) St. Pétersb. 1863.

4 Այս արձանագրութիւնս ունի նաեւ Քաջալ. անդ. էջ 20 փոխադրելով. "Աքառայ", տպուած է հոն Սմբատայ թէեւ էջ 235 կը ստորագրուի. նոյնպէս ՆԶ. առ. Քաջալ. եղած է ՆԵ։

գրեցաւ ինձ սրբոյն Բարսղի տաւնին [պատարագ] յամէն եկեղեցիքս մինչ ի կատարած աշխարհի։ Որք յաւժար կամաւ կատարեն զխնդիրս իմ, աւրհնին յԱստուծոյ, իսկ թէ ոք խափանել ջանայ, նզովս առցէ յԱստուծոյ„ (p. 57)։

Այս արձանագրութիւնն կը պարզէ մեր առջեւ բաւականաչափ գոհացուցիչ Գրիգորի անձնաւորութիւնն. Նա չէ եպիսկոպոս կամ կաթողիկոս, այլ պարզապէս “վարդապետ„ եւ “առաջնորդ„ Սանահնի Ս. Աստուածածին վանաց, իր այս դիրքին շատ համաձայն է պատճառաց գրոց մէջ տրուած տիտղոսն “Մեծ րաբունապետ„։

Ե՞րբ արդեօք անցաւ Գրիգոր մենաստանիս գլուխը։ Սանահնի Վանաց արձանագրութիւնք այս հարցման տալ գոհացուցիչ պատասխան կու տան։

Հայոց ՈԿԳ (1214) թուէն արձանագրութիւն մը ունի այսպիսի տողեր “... ընկալայ ես Գրիգոր վարդապետ առաջնորդ սուրբ Նշանիս„ (Աստուածածին վանացս, ընծայման Աբրահամու վրդ.) եւն (անդ. p. 56)․ դարձեալ ՈԿԴ (= 1215) թուէն “...Ես հայր եւ վարդապետ Գրիգոր, Վարդան եւ ամէն միաբանքս„... (անդ. p. 56) եւ ՈԿԶ (1217) թուէն “...Եւ առաջնորդն սուրբ ուխտիս՝ վարդապետս Գրիգոր եւ միաբանքս ընկալաք զԳուրգենի ընծայն„... (p. 57)․ այս երեք արձանագրութիւններս տալ միաբան վերնոյն հետ՝ կը հաստատեն թէ մի եւ նոյն Աբասու որդի Գրիգորն է

յիշատակուած "առաջնորդն„ եւ "հայրն,, Սանահնի։ Հետեւաբար Գրիգորի առաջնորդութիւնն 1214—1217 անվիճելի է. սակայն այս 4 տարւոյ անջրպետն միայն կ'ամփոփէ անոր բովանդակ առաջնորդութեան տարիները. զայս չենք համարձակիր հաստատել։ 1214 թուականն Գրիգորի առաջնորդութեան առաջին տարին կ'երեւայ, վասն զի արձանագրութիւնք ճիշդ սոյն տարւոյն Սանահնի առաջնորդ կը յիշեն նաեւ զՓիլիպպոս (p. 55)։ Հիմ չկայ մի եւ նոյն ժամանակ երկու առաջնորդ ենթադրելու ի Սանահին. եւ հարկ է ընդունիլ թէ 1214 տարւոյն ընթացքին մէջ վախճանելով Փիլիպպոս՝ յաջորդ կարգուած է Գրիգոր որդի Աբասայ։ Թէեւ մահուան թուականի նկատմամբ յայտնի յիշատակարան մը չունինք, սակայն 1221էն ետքը տակաւին կենդանի անհնարին է ենթադրել, երբ Մենաստանիս առաջնորդ կը յիշատակուի Յովհաննէս (անդ. p. 57—58)։ Բրոսէ լաւ նկատած է (p. 57 ծն. 1) թէ հետեւելով արձանագրութեանցս Գրիգոր վախճանած պիտի ըլլայ 1217ի եւ 1221ի մէջերը։ Գերեզմանն մինչեւ ցայսօր կը տեսնուի սոյն վանացս՝ Ս. Աստուածնի եկեղեցւոյն հիւսիսային կողմն այսպիսի տապանագրով. "Գրիգոր սուրբ Վարդապետ՝ որդի Աբասայ,, (p. 57), ցաւ է որ թուականն մոռցուած է։

Որչափ կը տեսնուի Սանահնի արձանագրութիւններէն Գրիգոր իբրեւ միաբան մենաստանիս երկար ժամանակ ապրած է հոն եւ ա-

*առաջնորդութենէ յառաջ իսկ նշանաւոր դիրք ունէր.* 1211 *թուին գրուած արձանագրութեան մը մէջ կը կարդանք. "Առաջնորդ սուրբ ուխտիս Հայր Վարդան, եւ վարդապետս Գրիգոր՝ միաբանքս հաստատեցին„* ... (p. 55). *եւ այլուր* 1214*ին "ընկալաք մեք առաջնորդ Ս. ուխտիս Փիլիպպոս Հայր, եւ Գրիգոր վարդապետ եւ միաբանք„* (p. 55). *առաջնորդի քով յականէ յիշատակութիւնն աննշանակ բան չէ անշուշտ: Թէ եւ նպատակ չունինք ներբող յօրինելու Արասայ որդւոյ վրայ, սակայն աւելորդ չենք նկատեր ըսել թէ նա իւր խոնարհամիտ բարուքն եւ իմաստուն առաջնորդութեամբն յանիրաւի եւ հակառակ արժանեաց՝ յախուռն չէ կոչուած անշուշտ "սուրբ վարդապետ„:*

*Թէ սա է պատճառաց գրոց հեղինակն, այլ եւս տարակոյս չի մնար. ամէն կողմանէ կը համաձայնին "Առաջնորդ եւ Վարդապետ„ ու "Մեծ Րաբունապետ„ տիտղոսներն իրարու: Այս համաձայնութիւնն ի նկատի առնելով պէտք է ըսել միանգամայն թէ Գրիգոր իւր առաջնորդութեան միջոցին գրեց գիրքս, այսպէսով* 1217*էն յառաջ, նախ քան "ժգ„ կամ "ծգ„ գրքերն վանքին մատենադարանին յանձնելը, ինչպէս ենթադրած էինք արդէն այլուր* (ՀԱ. 1904, *էջ* 144 *ծն.* 4):

*Հայկական հին Դպրութեան պատմութեան հեղինակն այսպէսով անծանօթ անձամբ գրութեանս, կ'ուզէ նոյնացնել Արասայ որդին՝ Գրիգոր Անաւարզեցի կաթողիկոսի հետ*

եւ անոր համարիլ Պատճառաց գիրքն (Գ. տպ. էջ 779), թէեւ էջ 780 կը գրէ "Գրիգոր որդի Աբասայ, հեղինակ 'Հաւաքումն պատճառաց սուրբ գրոց ի մեծամեծ հարց, կոչուած գրուածքի մը": Այս "Հաւաքումն" տարբեր անուան ներքեւ նոյն Պատճառաց գիրքն է, ինչպէս կը տեսնուի:

Շահխաթունեանց (Ստորագր. Էջմ. Բ. 218) երկու հատուած ի մէջ բերելով Պատճառաց գրքէն, հեղինակ կը համարի զԴաւիթ Քոբայրեցի: Յառաջ կը բերենք, կը գրէ, Բարսղի հարցողաց գրոց պատճառն "զայրարեալն ի Դաւթէ վարդապետէ ումեմնէ, որոյ վատտակոցն մատեան ընդ այլ արդեանց ամանց երեւելի վարդապետաց Հայոց՝ վերակոչի Պատճառ ճառից": Երկրորդ հատուածն փիլոնի "Տեսականի" պատճառն է: Այս երկու հատուածներն ալ բառական կը գտնուին մեր թիւ 47 Ձեռագրին մէջ (Թղ. 317բ—319ա. եւ 212ա—213բ) առանց Դաւթի յիշատակութեան: Սակայն Դաւիթ անծանօթ չէ Պատճառաց գրոց հեղինակին, որ ի մէջ կը բերէ նաեւ սոյն վարդապետին "տեսութիւններէն" գլուխներ միշտ նշանակելով հեղինակին անունն. այսպէս երկրորդ հատուածին յաջորդող գլուխն կը կրէ խորագիրս. "փիլոնի այնոցիկ որ ի լինելութեան խնդրոց եւ լուծմանց ասացեալ սկիզբն բան միահամուռ եօթանց գրոցն Դաւթի վարդապետի Քոբերեցւոյ" (Թղ. 213—217բ): Շահխաթունեանց արդեօք Դաւթի տեսու-

թեւանց ամբողջակա՞ն «մատեանն» ունէր ձեռքը՝ եւ անկէ կոչում կ՚ընէ, թէ սոյն Պատճառաց գրոց իր Օրինակին մէջ հատուածներուս սկիզբը կարդացած է «Դաւթի» անունը, ի վիճակի չենք վճռական բան մ՚ըսելու. կարելի է ենթադրել Դաւիթ Վ. Քոբայրեցւոյ (ԺԲ դար) Տեսութեանց հաւաքածոյ մը, ուսկից օգտուած է նաեւ Գրիգոր Արասայ որդին, զոր ապացուցանելու առիթ պիտի ունենանք վարը, թէեւ Հ. Զարբանալեան (Պատմ. Հայկ. Հին Դպր. 702) չի յիշեր։

## ՊԱՏՃԱՌԱՑ ԳԻՐՔԸ

Պատճառաց Գրոց հեղինակի — Արասայ որդւոյ Գրիգորի հետ ծանօթանալէ ետքը անցնինք բովանդակութեան եւ անոր յարակից խնդրոց։

«Գիրք Պատճառաց գործը, կը գրէ Հ. Տաշեան (Սրբազան Պատարագամատոյցը, 178), բովանդակ հայ մատենագրութեան մէջ եզական երեւոյթ մըն է»։ Ունեցած ենք պատմագրութիւններու, Ս. Գրոց եւ Ս. Հարց գրուածոց բազմաթիւ մեկնութիւններու, հոգեւոր ճառերու ճոխ մատենագրութիւն, բայց ի զուր պիտի որոնենք Գրիգորի Արասայ որդւոյ ձեռնարկութեան համապատասխան երկրորդ երկասիրութիւն մը։ Մեր նախնիք առ հասարակ սիրած են «Գրոց գիտութեան անեզր եւ անհաս ծովու» (Գիրք Պատճառաց. Յաջք.) վրայ նաւել, կարդալ

գրքեր, պատմագրել ժամանակակից կամ անցեալ դէպքեր, ուսումնասիրել Ս. Գրոց մթին տեղեր եւն, բայց՝ Գրիգորէն զատ, ոչ ոք, եւ այս կարելի է ըսել բացարձակապէս, խորհած է ուսումնասիրել գրքի պատմութիւնը, ի մի ամփոփել հեղինակի մ'անձին, գրութեանց թուոյն, շարժառիթին (պատճառին) եւն մասին գրիւ ըսուածները՝ աւանդութիւնն, պատրաստել քննական-համեմատական տեսութիւններ անոնց վաւերականութեան կամ անվաւերութեան վրայ, կատարել վերջապէս գործ մը, որ այսօր «Մատենագրութեան պատմութիւն» յօրինողի մը պաշտօնն կը համարուի։ Ահաւասիկ առաջինն Աբասայ որդի Գրիգորն կը հանդիսանայ այս ասպարէզին իջնողը — թէեւ շատ ուշ ԺԳ դարուն — եւ յայսմ կը կայանայ Պատճառաց Գրոց եզակիութիւնն։ Գործս իսկապէս Մատենագրութեան Պատմութեան փորձ մ'է, թէպէտ մասնական ծրագրով։ Հեղինակն դիտած է այսու տալ «Մատենախօսութիւն մ'իր ժամանակի տեսութեանց համաձայն՝ Ս. Գրոց եւ եկեղեցւոյ գլխաւոր վարդապետաց գրութեանց վրայ, մեծաւ մասամբ որչափ ծանօթ էին հեղինակին հայերէն թարգմանութեամբ» (Տաշեան՝ անդ)։ Գործն չնայելով իր մեծ կարեւորութեան, պէտք է ըսել թէ ցայսօր իսկ դեռ «շատ քիչ ծանօթ» մնացած է (Ցուցակ. 213)։ Հ. Տաշեան թէպէտ իւր Ցուցակին մէջ ընդարձակ խօսած է գրոցս բովանդակութեան մասին (էջ 213—233) եւ

յատուկ ուսումնասիրութեան կարօտ ըլլալն չեշտած, բայց տակաւին այսպիսի ուսումնասիրութիւն մը չձեռնարկուեցաւ: Մենք պիտի փորձենք պարզել այս եւ յետագայ յօդուածներով գրոցս արժէքն, յատկապէս ծանրանալով Բ. մասին, — „Նուրբ. գրոց — վրայ

Գրոցս ցայժմ ծանօթ օրինակներն երեք են թուով. Հնագոյնն կը գտնուի Էջմիածնի Մատենադարանն, ուր ըստ Կարենեանցի Ցուցակին (էջ 178) 1608 թիւն կը կրէր երբեմն, իսկ այժմեան Նոր կարգի համաձայն՝ 1650 (ZAPh. II. 36): Էջմիածնի օրինակին հանգամանքներն բաւականաչափ ծանօթ են Կարենեանցի Ցուցակէն, Կարապետ Վ. Տէր-Մկրտչեանի (ԱՐՐՏ 1895, էջ 148) եւ Մ. Վ. Տէր Մովսէսեանի (Исторія перевода Библіи на арм. языкъ, p. 227—28) գրութիւններէն:

Ձեռագրին հանգամանքն կը ներկայացուի մեզ „քառածալ... ի տեղիս տեղիս եղծեալ եւ կարկատեալ„ (Կար. Ցուցակ, 178) „գրքի վերջից թերթեր ընկած լինելով Յիշատակարանն եւս պակասում է„ (ԱՐՐՏ անդ) կամ ըստ Ист. 228 „Ձեռագիրը ժամանակի հետ կրած է հնութեան ազդեցութիւնն՝ կորսնցուցած է թերթեր, կազմը, լեցուած է անընթեռնլի տեղերով, այնպէս որ անյայտ տէրը ստիպուած է զայն կրկին կազմել, աւելցուցած է քանի մը մաքուր թերթեր, լրացնելու նպատակաւ, զոր ինքն իսկ չէ յաջողած ընել:„ Նիւթ՝ „հաստ մոմեալ թուղթ„ (Ист. 227).

Գիրք՝ «Ձեռագրի մեծ մասը հին շղագրով է (կամ «բոլորագիր»), բայց կան մի քանի կտորներ երկաթագիր, որ ընկած թերթերից մէկին փոխարինում է եւ աւելացրած է երեւի գիրքը վերջին անգամ կազմելու միջոցին» (ԱՐՐՏ անդ)։ Ժամանակ՝ թէպէտ գլխաւոր յիշատակարանն կորսուած է, «բայց ինչպէս մէջի մէկ երկու յիշատակութիւններից երեւում է, այս ձեռագրի ստացող Խաչատուր Վարդապետը ԺԷ[1] դարու գրող Կեչառեցին է» (ԱՐՐՏ անդ. եւ Ист. 227), հետեւաբար ԺԳ—ԺԴ դարէ է, գրեթէ ժամանակակից հեղինակին։ Այս է Էջմիածնի Ձեռագրին այժմեան որպիսութիւնն, զոր քիչ մը մանր նկատել անհրաժեշտ էր հիմ ըլլալով միւս ծանօթ ձեռագրաց։ Տէր-Մովսէսեան (Ист. 228) այս վիճակի մէջ կ'ենթադրէ 1725էն ի վեր, «երբ գաղափարուած է Վիեննայի օրինակն» (Թ. 47) ի Կ. Պոլիս, եւ ապա անկէ Էջմիածին տարուած։ Բայց այսպէս չէ իրականութիւնը. վասն զի մեր Թ. 47, ինչպէս Թ. 48էն կը տեսնուի, ոչ թէ 1725ին օրինակուած է, այլ իրր 1830ին, 1725ին Էջմիածնի Թ. 1650էն օրինակուած Գրչագրէ մը. ահա այդ Գրչագրին հանգամանքներն. «Ձեռագիր մատեանն, յորմէ օրինակեցան Գիրք Պատճառաց

---

1 Իմա ԺԳ դար. «Սորա գիտենք որ ԺԳ դարու վերջերն եւ ԺԴ դարու սկիզբը կ'ապրէր (Խաչատուր), բայց ծննդեան եւ մահուան տարին դեռ անծանօթ է»։ Տաշեան՝ Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալլիսթենեայ վարուց Աղեքսանդրի. Վիեննա 1892, էջ 124։

(Թ. 47), Հաւաքումն Մեկնութեան եօթանեցունց թղթոցն կաթուղիկէից (Թ. 48) եւ Եւսեբեայ պատմութիւն եկեղեցւոյ (Թ. 49), է ի ձեւ փոքր միածալ, էջքն յերկուս սիւնս բաժանեալ, նօտրագիր նշանագրովք գրեալ։ Ձեւ նշանագրոցն մաքուր, փայլուն, միաձեւ եւ բազում զգուշութեամբ գրեալ. եւ այն՝ ի սկզբանէ ցվերջ մատենին։ ...Թուի ինձ անշուշտ՝ եթէ բուն իսկ ձեռագիր օրինակն, յորմէ զաղափարեալ է այս մատեան, առաւելապէս ի սկզբանն եւ ի վերջն՝ պատառեալ կամ մաշեալ իցէ եւ թերթք ինչ եւս ի բաց անկեալ իցեն. քանզի ի սոյն գաղափարին զատարկ տեղիք թողեալ են վասն պակասեալ մասանցն եւ բանից» (Ցուց. էջ 243)։ Այս Ձեռագրին օրինակութիւնն եղած է 1725ին, կ'երեւայ ի Կիլիկիա. թէ այժմ ուր կը գտնուի, անյայտ է. յընթացս գրութեանս պիտի անուանենք զայս B Օրինակ։ Մեր Թ. 47—49 Ձեռագիրք ասկէ օրինակուած են՝ հաւանականօրէն ի Կ. Պոլիս 1830—40ի մէջերը (Ցուց. 213)։ 1725ին գրուած B Օրինակին Ա. մասը, ինչպէս յաւելուած է Թ. 47ի Գրիչը, գաղափարուած է ճիշդ այն Ձեռագրէն, որ կը գտնուի այժմ Էջմիածին։ — Մեր Մատենադարանին մէջ կը գտնուի սոյն գրոցս ուրիշ նօտրագիր թերի Օրինակ մ'ալ (Թ. 305), որուն գրութեան ժամանակն եւ ո՛ր նախագաղափարէ ծագած ըլլալն դժուարին է որոշել։ Գրչութիւնն թէեւ Հ. Տաշեան (Ցուց. էջ 733)

*ԺԸ. դարէ կը համարի, բայց կարելի է քիչ մ'աւելի հնագոյն ԺԶ—ԺԷ դարէ ենթադրել։ Մենք ինչպէս յայսմ, նոյնպէս այն կէտին մէջ — թէ "Գիրք պատճառացս (Թ. 305) միեւնոյն ձեռագրէն օրինակուած ըլլալու է, որմէ էր Թ. 47, ուստի միեւնոյն պակաս մասերն հոս ալ պակաս են, բայց գրիչը չի նշանակեր պակասորդներն, այլ միապաղաղ գրեր է՝ իբրեւ թէ ամենեւին թուղթ ինկած չըլլար գաղափարօրինակին մէջ„ (Ցուց. 733) — չենք կրնար համաձայնիլ Հ. Տաշեանի։ Մանր զննելով Թ. 47 եւ Թ. 305 Ձեռագիրներն հոն յանգեցանք որ Թ. 305 օրինակուած է Էջմիածնի Թ. 1650էն, եւ կամ անկէ ծագած երկրորդ Օրինակէ մը, եւ այն նախ քան կրկին կազմուիլը, եւ երբ շատ տեղեր տակաւին անեղծ էին գրերը[1]։*

---

[1] *Նշա գրալ է. յիշենք հոս քանի մ'օրինակ. Թ. 305 թղ. 3բ. կը կարդայ "քանզի աննման է. ընդգծեալն բաց թողուած է Թ. 47ի մէջ իբրեւ անընթեռնլի։ Թ. 305ի թղ. 55ա. փառն Յունանու մարգարէի սկիզբն. Յունան էր ի Կ..... Մ......, որ է մերձ. — Թ. 47 թղ. 110բ. "Սկիզբն եւ պատճառ Յունանու մարգարէի. Յունան էր ... (անընթեռնլի) որ է մերձ ...։ Եւ յաճախ այլուր։ Իսկ այն տեղերն, ուր Թ. 47ի մէջ դատարկ սիւներ նշանակուած են, Թ. 305ի մէջ փոքր տեղ միայն դատարկ թողուած կը գտնենք, այսպէս Թ. 305 թղ. 14բ, 4 տող թողուցած է ցուցնելու համար թերութիւնն, ուր Թ. 47 թղ. 25 մէկ ու կէս սիւն դատարկ կը նշանակէ. այսպէս եւ այլուր։ Միայն, որչափ նկատեցինք, Թ. 47ի (թղ. 15ա) մէջ "Զօր օրինակ„էն յառաջ կիսագրուած է, եւ կը նշանակուի ի ծան. թէ հոս յօր. 6 սիւն դատարկ կայ. եւ իրօք խօսքն ալ թերի է. Թ. 305ի (թղ. 8ա) գրիչն հոս թերութիւն չէ զգացած, եւ առանց բան մը նշանակելու.*

Թ. 47 հետեւելով իւր նախագաղափարին (B) կը նշանակէ շատ տեղ թէ յօրինակին " այսչափ „ սիւն դատարկ ձգուած է թերթին լրացնելու համար. այսպիսի տեղերն սակայն պէտք չէ ենթադրել պակասն ստուգիւ այնչափ շատ, ինչպէս կը նշանակուի։

Այս բառածներէն կարելի է կազմել հետեւեալ ճիւղագրութիւնը.




Թերեւս ըլլան հօս եւ հոն ուրիշ Ձեռագիրներ ալ, որոնք չեն հասած մեր ծանօթութեան։

Տէր-Մովսէսեան (Ист. 228) Թ. 47 (իմա B Օրինակն) շատ հաւատարիմ չէ գտնուած, կը գրէ, իւր Նախագաղափարի (Էջմ. Օրինակին) կարգին։ Եւ այս կը հաստատուի նաեւ Կարենեանցի Ցուցակէն։ Ընդօրինակողն թոյլ տուած է իրեն քանի մը փոփոխութիւններ մուծանել նիւթերու դասաւորութեան մէջ, ոչ միայն Ս. Գրոց մատենից, այլ եւ " Նորը „ գրեանց " պատճառ „ներու մէջ։ Այսպէս Յոբայ գրոց " պատճառ „ները կը տեղաւորուի հօս Սաղմոսաց պատ-

(ինչպէս այլուր կ'ընէ, տեղ թողլով) յարունակած է. այս տեղի պիտի չունենար պարահական, եթէ իւր օրինակին մէջ դատարկ թուղթ եղած ըլլար։

ճառներէն յառաջ, կամ Գործք Առաքելոցի մասն չորս աւետարաններէն յառաջ: Եւ Նուրբ գրքերու մէջ Դիոնեսիոս Արիսպագացւոյն գրուածոց երրորդ տեղին կը շնորհուի, մինչդեռ Էջմիածնի Ձեռագրին մէջ Յոբայ գիրքն Սողոմոնի գրքերէն վերջը կու գայ (կար. Ցուց. 178) եւ Նոր Կտակարանի գրքերն «Նուրբ գրքերէն» վերջը, այնպէս որ Ձեռագիրն Յուդայ առաքելոյն թղթին պատճառովը կ'աւարտի եւ վերջին ինկած թերթերն ասոր կը հային: Չկրցանք ստուգել թէ արդեօք Էջմիածնի Ձեռագրին մէջ Դիոնեսիոսի գրքերն ուր կը տեղաւորուին:

Այս տեղափոխութիւնն Bի (թ. 47ի) մէջ դիտմամբ եղած է, թէ Օրինակողն հիմ մ'ունէր: Մեր երկու Ձեռագրաց (թ. 47 եւ 305) յայսմ միութիւնն նախատակաւոր տեղափոխութեան ամէն կասկած կը բառնայ: Բայց ասկից Էջմիածնի Ձեռագրին կարգն համաձայն չերեւար նոյն իսկ Հեղինակի մօտ. վասն զի Գրիգոր, ինչպէս ակներեւ կը տեսնուի խօսքերէն, կը զանազանէ երկու խումբ գրքեր՝ Աստուածաշունչ եւ Ս. Հարց գրքեր. եւ իւրաքանչիւրին վրայ ճառել կը խոստանայ կարգաւ նախ Ս. Գրքէն սկսելով. Էջմիածնի օրինակի մէջ կ'ընդհատուի այս կարգը: Եւ ինչպէս պիտի տեսնենք վարը՝ թ. 47ի կարգն կը պահանջէ նաեւ Սարկաւագ Վարդապետի Ցանկն, որուն հետեւած է հոս: Ներելի չէ՞ կարծել թէ Էջմիածնի այժմեան նոր կազմին վերջին կողմէն ծագած է: Այս կէտը կարելի է ստուգել եթէ կայ Էջ-

միածնի Օրինակին մէջ ալ մեր կրկին օրինակաց սկիզբը գտնուած «Արդ այսուքիկ են ցանկ եւ ցուցակք յառաջիկայ գրոցս» (Թ. 47 Թղ. 1ա–6ա եւ Թ. 305 Թղ. 1բ—3ա) մասը, ուր մի առ մի կը նշանակուի ԺԹ գրոց մէջ իւրաքանչիւր գլուխ կամ հատուած: Հատուածներու թուարկութեան մէջ համաձայն չեն մեր կրկին Ձեռագիրք իրարու. Թ. 47 իւրաքանչիւր գրոց գլուխներն առանձին կը թուէ. մինչ Թ. 305 անընդհատ կը շարունակէ մինչեւ վերջ 81 գլուխ հաշուելով: Այս ցանկը որչափ կ'երեւայ Յի եւ 305ի օրինակողներէն է, ուր կը պակսին այն ամէն թերի հատուածներու վերնագրերն, որոնք չկան բնագրին մէջ. օր. համար Ա. եւ Բ. մնացորդաց պատճառին վերնագիրն:

Բովանդակութիւնն ըստ այժմեան բանասիրութեան եթէ նկատենք, հարկ է բաժնել երկու մասի.

Ա. Ներածութիւն ի Ս. Գիրս.

Բ. Հայրախօսութիւն.

Այս բաժանումն ինքն հեղինակն ալ կ'ընէ զանազանելով «Լայն» եւ «Նուրբ» գրքեր:

Ա. Մասն արդի Աստուածաբանից սովորական բացատրութեամբ այսպէս Ներածութիւն ի Ս. Գիրս կոչել (հմմտ. եւ ԱՐՐՏ. 1895, էջ 148) շատ պատշաճ կը թուի մեզ եւ լիով համապատասխան նիւթն այդ ուսման գաղափարին: Եկեղեցական մատենագրութեան պատմութեան այս ճիւղն, որ կ'ուսումնասիրէ յանկա-

պէս Աստուածաշունչ Ս. Գրոց մատեանները եւ անոնց յարակից նիւթերը, շատոնց ստացած էր Ներածութիւն ի Ս. Գիրս (Introductio in Scripturam sacram) յորջորջումը, որուն, ինչպէս եւ առ հասարակ ամէն գրոց ներածութեան՝ նպատակն է առաջադրեալ գրոց լաւ իմացման համար լուծել այն նախահարցերը, տալ այն նախածանօթութիւնները, որ կը հային մասամբ գրոց հեղինակին, ծագման, գրուելու շարժառիթին, վաւերականութեան եւն, եւ մասամբ դժուարիմաց տեղեաց եւ ոճին, որոնք կրնան ըլլալ պատմական, հնախօսական, լեզուական, եւ որոնց ծանօթութիւնն անհրաժեշտ պայման կը համարուի բնագրին ճիշդ եւ որոշ իմացման, ճշմարիտ արժանիքն գնահատելու եւ օգտուելու համար։ Այս տեսակէտով որոշ չափով մ'ուսմանս մէջ կ'իմացուի եւ Մեկնութիւն Ս. Գրոց բաժինն, որ թէեւ այսօր ներածութենէն անկախ կը համարուի, բայց հին ժամանակներն բոլորովին մի եւ նոյն կը նկատուէր. այսպէս Որոգինէս, Եփրեմ, Աւգոստինոս, Յերոնիմոս, Ոսկեբերան եւ այլք փորձած են լնուլ այս պէտքն իրենց մեկնողական գրուածոց մէջ, յատկապէս յիշենք Ոսկեբերանի Նոր Կտակարանի Մեկնութիւնքը, որոնց իւրաքանչիւր գրոց սկիզբն ջանացած է Մեծանուն Վարդապետը նախ հաղորդել տեղեկութիւն հեղինակին, գրութեան եւն մասին։ Թէպէտ գտնուեցան մատենագիրներ ալ, որոնք յատուկ տեղեր նուիրեցին ուսմանս ուրիշ գրուածոց մէջ, այսպէս Եւսեբիոս իւր Եկեղ.

Պատմութեան եւ Ցերոնիմոս «Վասն երեւելի արանց» հռչակաւոր գրուածին մէջ եւ ուրիշ շատեր (Եւթաղ եւն). բայց մինչեւ ԺԳ դար մեծ յառաջադիմութիւն չի տեսնուիր ուսմանս մէջ. յետինք բաւականացած են նախորդաց աւանդածներն պահպանել եւ դիւրամատչելի ընել, այլ եւ այլ եղանակաւորմամբ։ Հազիւ ԺԳ դարուն յերեւան կ'ելլեն կանոնաւոր ներածութիւններ, այժմեան գաղափարով եւ այն ալ դարձեալ մեծաւ մասամբ կից Ս. Գրոց մեկնութեանց իբրեւ յառաջաբան[1]։

Գրիգոր որդի Աբասայ, որ ուսմանս Նոր շրջանին սկիզբներն ծաղկեցաւ, գրեթէ նոյն ծրագրով ձեռնարկած է իր ուսումնասիրութեան, գլխաւորաբար հետեւելով հնոց — Ս. Հարց եւ տոհմային մատենագրաց. բայց կոչելով իր գիրքն ոչ թէ Ներածութիւն, այլ «Պատճառք լայն եւ նուրբ գրեանց»։

Բնականաբար հազիւ գիտելու պէտք կայ թէ սոյն գրութեանս մէջ Ներածութեան գաղափարն ի բողբոջի է եւ վայրապար է փնտռել գիտական ճշդութիւն եւն։ Հեղինակն ամփոփած է հոս ի մի ինչ որ կարեւոր տեսած է իբրեւ նախապատրաստութիւն Ս. Գրքին իմանալու. լեզուագիտականը, հնախօսականը, մեկնողականը եւն յաճախ շատ անկարգ կուտակուած են առանց համեմատական քննութեան։

---

1 Հմմտ. F. Kaulen, Einleitung in die heilige Schrift alten und neuen Testaments. Freiburg 1876.

Այս արուեստն բոլորովին իսկ անծանօթ է Հեղինակին, եւ որ շատ զգալի է։

Գրիգոր կը սկսի իր գործը, ինչպէս բնական էր, Ծննդոց գրքէն եւ կը հասցնէ մինչեւ Յուդայ առաքելոյն թուղթը, իւրաքանչիւր մատենի վրայ կը խօսի ըստ նիւթոյն եւ ըստ աղբերացը երբեմն երկար եւ երբեմն կարճ՝ նախ համառօտիւ հիւսելով գրքի մը մասին իր ստացած տեղեկութիւններն ասկէ եւ անկէ, եւ ապա յառաջ կը բերէ ուրիշ մատենագրաց, այսպէս Ոսկեբերանի, Եփրեմի, Ստ. Սիւնեցւոյ եւն մեկնութիւններէ նոյն մասին խօսուածները. օր. համար Եսայեայ գրոց "Սկիզբն եւ պատճառ" իմն կը յօրինէ (Թղ. 15բ—16ա) եւ ապա կը դնէ "Եղիշէի Հայոց Վարդապետի" եւ Տեառն Եփրեմի գրութիւններէ յարմար երկու հատուած (Թղ. 16բ—17բ.), թէեւ կան տեղեր ալ, որ ուղղակի կ'օրինակէ։ Այս է ընդհանուր ոճը։ Մեսրոպ Վ. Տէր-Մովսէսեան (Мст. 228) վերջին կէտս նկատելով ուզի կը մտի Շղթայք կամ Հաւաքածոյի (Catena) բառած հաւաքածոյ համարել Պատճառաց գիրքս. բայց այս յորջորջումն այնչափ յարմար չի թուիր մեզ ընդհանուր բովանդակութեան. Շղթայից մէջ ընդհանրապէս հաւաքիչն միշտ Ս. Հայրց խօսքը կու տայ[1], մինչ հոս նշանաւոր տեղ կը գրաւեն նաեւ Գրիգորի խօսքերը։

---

1 Համմ. Գործոց խմբագիր Մեկնութիւն ըստ Եփրեմի եւ Ոսկեբերանի. Մեկն. Կաթողիկեայց (Թ. 48 մեր Մատենադարանի). Մեկն. Պօղոսի (Մատենադարան, էջ 358)։

փոքր գաղափար մը տալու համար Ա. մասին մէջ բռնուած եղանակի (Methode) նկատամբ, պատկերացնենք հօս Ծննդոց գրոց պատճառը: Նա կ'ուսումնասիրէ նախ Հաւատոց կարեւորութիւնն. Ս. Երրորդութեան խորհուրդն, արարչութիւնն մարդոյ, աշխարհիս ստեղծումն յոչընչէ, կը յիշէ առ այս հեթանոս փիլիսոփայից թիւր կարծիքներն, եւ ի վերջոյ կը յաւելու. անտեղեակ Մովսէս, կ'ըսէ, այս ստոյգ գանդաջանքները Ճշմարիտ Աստուածը քարոզեց իբրեւ մի միայն Ճշմարիտ Աստուած եւ արարիչ ամենայնի յոչընչէ. այս է նաեւ Ծննդոց գրոց բովանդակութիւնն եւ վախճանն: Ապա կ'անցնի Ծննդոց գրոց Հեղինակին. "բայց նախ պարտ է գիտել զայս, թէ ընդէ՞ր ոչ եդ Մովսէս զանուն իւր ի վերնագրի անդ, յսկիզբն ճառիցն իւրոց. ա. պատճառ այս, զի ոչ հեռաւոր ազգաց գրեաց, այլ յորոց միջի բնակէր համապազ .... (Թղ. 10ա), այս ձեւով յառաջ կը բերուի 5 պատճառ. կը թուէ Մովսիսի 5 գրքերը. կը պատճառաբանէ ոչ աւելի գրած ըլլալը եւ հուսկ վերջը կը դնէ վեցօրեայ արարչութեան կարգը: Գրիգոր երբեմն կը համառօտէ նաեւ ճառած մասերին բովանդակութիւնն եւ նոյնին նշանակական մեկնութիւնը կը դնէ. այսպէս Ելից մասերին վրայ խօսած ժամանակ գրեթէ բովանդակ "տեսութիւնը. մեկնութեամբ կ'աւարտէ. "Զօր օրինակ, կը գրէ, զՄովսէս պրտուեալ տապանն կրեաց ի խաղ գետոյն, նոյնպէս եւ Տէր մեր կրեաց կուսական

յարգանդն ի խաղս աշխարհի գետոց: Եւ զոր օրինակ զՄովսէս դուստրն փարաւոնի, նոյնպէս եւ Տէր մեր Եկեղեցի հեթանոսաց ընկալաւ ուրախութեամբ» եւն (թղ. 12ա—բ):

Հեղինակի բռնած այս ոճն թերեւս մեկնուի նկատելով աշխատութեանս գրուած նպատակն: Գրիգոր կը գրէ ձեռնարկութեանս մէջ հաւաքել Ս. Հարց երկասիրութիւններէն Ս. Գրոց իւրաքանչիւր մասին վրայ համառօտ պատմական եւ մեկնողական ծանօթութիւններ, յօգուտ եւ ի դիւրութիւն «մանկանց եկեղեցւոյ». սակայն կը յեղյեղուի հոս եւ հոն այս կէտը (հմմտ. 60ա եւն): Առ այս մատենագրութեան արժանի է Հեղինակին անկայ, բայց համեստ յառաջաբանս.

«Հարք իմ եւ եղբարք, որք այժմ եւ որք զկնի, աղերս սիրական բանի մաղթեմ առաջի ձեր, զիտութիւն Գրոց ծով է անեզր եւ անհուն, եւ չէք զբովանդակն իմանալ ումեք բառ արժանւոյն, այլ զսակաւս ի բազմացն: Նաեւ զի ամենայն մասնեանք աստուածաշունչք ոլիչ եւ առանձին ունի սկիզբն իւրոյն դիւրութեան. եւ չէ գիր... (բառ մը պակաս) յամենայն ժամու պիտոյից առ... (բառ մը պակաս) խնդիրն... (մէկ տող պակաս) հարկեց... (մէկ տող պակաս) խնդրոյ... (բառ մը պակաս): Մի ոք կարծեսցէ յանձնէ ինչ առեալ ծանել... (բառ մը պակաս. Ընթե՞ռ կամ ի) յաւելումն կամ ի պակասումն, այլ զոր ոքոց արանցն ասցեալ է ի Հոգւոյն ազդմանէ, զայն ի մի վայր ժողովեալ բառ կարի խմուժ. զի եթէ իցէ համայ ամենեցուն Աստուծոյ շնորհ. եւ եթէ ոչ այն մեր տմարդութեանս. սակայն յամենայնի հայցեմ անպարտ մնալ: Եւ որպէս առաջին է յամենայն սասս աստուածային Հին եւ Նոր Կտակարանաց Մովսէսի ասացեալ արարածական պատմութիւնս, նոյնպէս եւ սորի զնեմք բառ օգնելոյ Հոգւոյն սրբոյ, եւ ի սմանէ բառ կարգի զայլոց մարգարէիցն գիրքս, որպէս եւ յաջորդեսցէ մեզ իւրով օգնութեամբ»: (Թ. 47. թղ. 6ա. Ցուցակ 213:)

Գրիգորի այս երկասիրութիւնն՝ թէեւ անյարմար հանգամանքներով, այնպէս որ աւելի ապագայ ուսումնասիրութեան համար հաւաքուած հում նիւթ պէտք է նկատել, բայց ունի կարեւոր դիրք Ս. Գրոց պատմութեան հետազօտութեան համար: Հեղինակն ջանացած է տոկուն եւ համբերող աշխատասիրութեամբ "ըստ կարի„ հաւաքել իրեն մատչելի եղած ամէն կարգի գրութիւններէ իր ծրագրին համապատասխան նիւթեր. եւ այս կէտն այնու աւելի նշանակալից պէտք է համարել, որ նա միայն հայերէն գիտնալով՝ օգտուած է միշտ հայերէնախօս գրութիւններէ, որոնց մէջ կը նշմարուին այնպիսիներ ալ, որոնք ամբողջապէս ծանօթ չեն մեզի այլուստ: Մատենագրական տեսակէտէ շատ հետաքրքրական եւ կարեւոր է այս մասին քննութիւնը. մենք կը բաւականանանք նշանակել հոս յանկանն, յիշուած աղբիւրները.

1. Ս. Հայոց գրուածներէն.

ա. Եփրեմի (Մեկնութիւնք Արարածոց, Ելից, Ղեւտացւոց եւն գրոց եւ Նոր Կտակարանէն Պաւղոսի թղթոցն եւ Գործոց Առաքելոցն, որոնք հրատարակուած են արդէն Եփրեմի Մատենագրութեանց մէջ: Գործոցը քաղուած է "Մեկնութիւն Գործոց Առաքելոց խմբագիր արարեալ նախնեաց յՈսկեբերանէ եւ յԵփրեմէ„ մատենէն (Վենետ. 1839):

բ. Ոսկեբերանի՝ Եսայեայ, Եզեկիէլի Մեկնութիւնները. վերջինս տակաւին չէ յայտ-

նուած ։ Նոր կտակարանի գրոց Մեկնութիւննե-րէն յանուանէ կը յիշուին Պաւղոսի ԺԴ․ թղթոց եւ գործոց Մեկնութիւնները, թէեւ կը կարծուի Յովհաննու Մեկնութիւնն ալ։ Գործոց Մեկնութիւնն վերը նշանակուած «խմբագիրն» է։

գ․ Ս․ Աթանասի Յառաջաբանն Սաղմոսաց (Թղ․ 42ա—48)։

դ․ Եպիփանու Կիպրացւոյ առաջաբանք Սաղմոսաց (Թղ․ 48բ—56ա)։

ե․ Գր․ Նիւսացւոյ Մեկնութիւնն Ժողովողին (Թղ․ 64—66)։ Մեկնութիւնն Երգոց երգոյն (Թղ․ 66—68)։

զ․ «Որոգինի ասացեալ ի տեսութիւն Եզեկիէլի մարգարէի» (Թղ․ 96ա—98ա)․ այլուստ անծանօթ տակաւին։

է․ Հիպպողիտի Մեկնութիւնն Յոբայ (Թղ․ 32բ—34ա)։

ը․ Կիւրղի պատճառ Եբրայեցւոց թղթոյն (189բ)։

թ․ ժ․ Եւսեբեայ եւ Եւթաղի գրութիւնքն։

2․ Տոհմային Մատենագիրք․

ա․ Եղիշէի Հայոց վրդ․ի Մեկնութիւնն Յեսուայ (Թղ․ 16բ—17ա)։

բ․ Դաւթի փիլիսոփայի Նախակարգեալ յառաջաբանք Սաղմոսաց (Թղ․ 48բ—56ա)։

գ. Ստեփաննոսի փիլիսոփայի Մեկնութիւն եւ սկիզբն Յոբայ (Թղ. 40բ—41բ) եւ պատճառք եւ թելադրութիւնք առաջին տեսլեանն Եզեկիէլի (Թղ. 95ա—96):

դ. Ե. Գրիգորի (Արշարունւո՞յ) Մեկնութիւն Պատարագաց (Թղ. 18ա—բ) եւ "Գէորգ կաթ.-ի Պաւղոսի հետ թղթոց նախադրութիւնքը:

Այս գրուածներէն կ'օգտուի հեղինակն ընդհանրապէս բառական օրինակելով իրեն կարեւոր համարուածները. եւ թէեւ նոյն նիւթին վրայ ճառեն երկու երեք մատենագիր, ամէնուն բառերն ալ կ'օրինակէ: Այսպէս օրինակի համար Յոբայ գրոց վրայ գրած են Հիւսիքոս, Եփրեմ եւ Ստեփանոս, երեք գլխով առանձին առանձին ի մէջ բերուած են երեքին ալ խօսքերը (Թղ. 32բ—41բ): Այս ամէնը ի հարկէ այլեւայլ տեսակէտներով մեծ նշանակութիւն կրնայ ունենալ այսօր, շատ գեղեցիկ կը գրէ այս կողմանէ Կարապետ Վրդ. "Ինչպէս առ հասարակ ամբողջ ձեռնարկութիւնը, այնպէս եւ ի մասնաւորի հայրերից յառաջ բերած հատուածները մատենագրական հետազօտութիւնների կարօտ են եւ ընդարձակ ուսումնասիրութիւնների նիւթ" (ԱՐՐՏ 1895, 148):

Ուշադրութեան արժանի հարց մ'է դարձեալ, զոր թէ Կարապետ Վրդ. եւ թէ Տէր-Մովսէսեան կը յուզեն. "Արդեօք այս ձեռնարկութիւնը նա ինքնաբերաբա՞ր է սկսել, թէ արդէն պատրաստի մի նախագաղափար ունեցել է աչքի

*առաջ»: Կ. Վ. «դժուար է որոշել» կը պատասխանէ. բայց մենք հաստատապէս կրնանք ըսել թէ չկար որ եւ իցէ նման աշխատութիւն մը, եւ առաջին ձեռնարկուն ինքն Գրիգորն է: Պատրաստ աղբիւրներ, օր. համար Ս. Հարց Մեկնութիւններն եւ այլ եւ այլ անհատներէ ցրիւ ըսուածներ կային, զայս կարելի չէ ուրանալ, եւ հեղինակն ալ կը հաստատէ, բայց ոչ յօրինուածութեամբ ի մի ամփոփուած երկասիրութիւն: Վերը ենթադրեցինք Դաւիթ Քոբայրեցւոյ ձեռքէն այլեւայլ գրոց վրայ Տեսութեանց Հաւաքածոյ մը, բայց այսպիսի գրութեան մ'ընդարձակութեան մասին բան մը կարելի չէ ըսել: Աստուածաշունչ մատենից սկիզբն նշմարուած նախադրութիւններէն յուսալի էր թէ օգտուած ըլլար Գրիգոր, բայց, ինչպէս ապացուցեց Տէր-Մովսէսեան* (Ист. 270—3. *եւ* ԱՐՐՏ· 1904 *էջ* 206—219) *ԺԳ· դարուն տակաւին չէին յօրինուած այդ նախադրութիւնքն, որոնք ԺԳ—ԺԴ դարու հեղինակ Գէորգ Սկեւռացւոյ արդիւնքն են (մերձաւորապէս* 1292*ին): Գրիգոր թէպէտ ունեցած է աչաց առջեւ այսպիսի նախադրութիւններ ալ, զոր. օր. Եւթաղի, բայց այսպիսիք չկային ամէն մատենի համար: Նախափորձն ինքն առաջին անգամ կ'ընէր:*

*Այս իսկ պատճառաւ Գրիգորի այս երկասիրութեան ազդեցութիւնն յետագային վրայ մեծ եղած է: Թէպէտ նպատակ չունինք հոս մանր հետազօտել ազդեցութեանս չափն,*

սակայն առանց նշանակելու չենք կրնար անցնիլ քանի մը կէտ: Էջմիածնի Մայր ցուցակի մէջ (կար. 178, թ. 1610, այժմ թ. 1652) կը պատահինք այսպիսի գրութեան մը. «Պատճառաց գիրք վերոյիշեալ («Դիոնեսիոսի, Դաւթի Անյաղթի, Գրիգորի Նիւսացւոյ, Գր. Նարեկացւոյ եւ այլոց,,) հեղինակաց, մեծագիր բոլորգիր գրեալ ի թղթի ի մենաստանն Ամիրտոլու ի Վարդան քահանայէ. ի թուին Հայոց ՌԿԶ,, (1617). որ մեր Ճառերի Գրոց ազդեցութեամբ յօրինուած բան մը պիտի ըլլայ ապահովապէս: Նոյնպէս նոյն Մատենադարանի թ. 1775 (կար. էջ 191, թ. 1733) Ձեռագիրն, որ ըստ Մանանդեանի «մօտաւորապէս ԺԳ դարու, գրչութիւն է (ՀԱ. 1905, էջ 15) եւ բովանդակութիւնն է Նոննոսի Մեկնութիւնքն եւ «Պատճառ բոլոր գրոց Աստուածաշնչին,, (կար. Ցուց. 191), առանց ազդեցութեան մնացած չէ Պատճառաց Գրքէն, եթէ ոչ նոյն իսկ ուղղակի օրինակուած, ինչպէս կը հաստատէ Մանանդեան (անդ): Իսկ ժամանակաւ ոչ շատ հեռու՝ անուանի մատենագիրն Վարդան († 1271) արդէն ծանօթ կը ցուցընէ ինք զինքը Գրոցս իր Հնգամատեննին Մեկնութեան մէջ եւ կ'օգտուի — տեղ տեղ բառական իսկ, մանաւանդ Ծննդոց գրոց Յառաջաբանին մէջ (հմմտ. թ. 482 մեր Մատ. թղ. 2—5 եւն): Գէորգ Սկեւռացին եւս մեծապէս օգտուած է անկէ իր յօրինած Ս. Գրոց Նախադրութեանց մէջ: Սակայն, կը խոստովանինք, յականէ յի-

*շատակուած չգտանք Հեղինակիս՝ Գրիգորի անունը տեղ մ'ալ:*

*Ի վերջոյ չենք կրնար առանց նկատելու թողուլ "լայն", այս է Կանոնականն գրոց վրայ Գրիգորի՝ հետեւաբար Նաեւ ժամանակի, ունեցած գաղափարն, որ Ս. Գրոց կանոնաց վերաբերեալ հարց մ'է: Այս կէտիս մէջ Գրիգոր կգալապէս կը խօսի Սարկաւագ Վրդ.ի "Կարգադրութիւնք գրոց սրբոց" անուն ցանկէն, թէ կարգի եւ թէ թուոյն կողմանէ, թէեւ ծանօթ են — որչափ կ'երեւայ — Սարկաւագի կարգադրութիւնքն իրեն. վասն զի կրկին բաժանումն — "սուրբ" (կամ ըստ Գրիգորի "լայն") եւ "Նուրբ" գրքեր — Սարկաւագէ են, եւ, ինչպէս պիտի տեսնենք, յետիններս — Նուրբքերն, նոյն են գրեթէ յէականս Սարկաւագի ցանկին հետ:*

*"Լայն" գրքերն հետեւեալներն են ըստ Պատճառաց Գրոց.*

Հին Կտակարան.

| | |
|---|---|
| Արարածոց. | Յոբ. |
| Ելից. | Սաղմոսք Դաւթի. |
| Ղեւտական. | Սողոմոնի Առակք. |
| Թուոց. | " Ժողովողք. |
| Բ. օրինաց. | " Երգ երգոց: |
| Յեսու. | Եսայի. |
| Դատաւորաց. | Երեմիա. |
| Հռութ. | Բարուք. |
| Ա. Թագաւորութեանց. | Եզեկիէլ. |
| Բ. " | Դանիէլ. |
| Գ. " | ԺԲ մարգարէքն. |
| Դ. " | ա. Ովսէ. |
| Մնացորդաց Ա. եւ Բ. | բ. Յովէլ. |

Է. Ամոս.
Ը. Աբդիու.
Թ. Յովնան.
Ժ. Միքիա.
ԺԱ. Նաւում.
ԺԲ. Ամբակում.
ԺԳ. Սոփոնիա.
ԺԴ. Անգէոս.
ԺԵ. Զաքարիա.
ԺԶ. Մաղաքիա:

Նոր Կտակարան.

Յովհաննէս.
Մատթէոս.
Մարկոս.
Ղուկաս.
Գործք Առաքելոց.
„ԺԴ„ Թուղթք Պաւղոսի.
Ա. Հռովմայեցւոց.
Բ. Կորնթացւոց Ա.
Գ. " Բ.
Դ. " Գ.
Ե. Գաղատացւոց.
Զ. Եփեսացւոց.
Է. Փիլիպպեցւոց.
Ը. Կողոսացւոց.
Թ. Թեսաղոնիկեցւոց Ա.
Ժ. " Բ.
ԺԱ. Եբրայեցւոց.
ԺԲ. Տիմոթէոսի Ա.
ԺԳ. " Բ.
ԺԴ. Տիտոսի.
ԺԵ. Փիլիմոնի:
Յակոբայ թուղթ.
Պետրոսի Ա.
" Բ.
Յովհաննու Ա.
" Բ.
" Գ.
Յուդայի թուղթն:

Այս ցանկը ըստ ամենայնի նոյն է Սիոն կաթողիկոսի, այս է Պարտաւայ ժողովոյն (768) ԻԴ կանոնիւ առաջարկած ցանկին[1] հետ, այս տարբերութեամբ միայն, որ հոն կը յիշուի Նաեւ Եզրայ Բ գրքերն եւ Սիրաք, որոնք Պատճառաց Գրոց մէջ չկան: Այս միութիւնը առանց տարակուսի նշանակալից է Ը—ԺԳ դարուց Ս. Գրոց կանոնին Հայոց քով ունեցած արժէքին համար: Երկու հեղինակներս ալ Մեծ Հայաստանի մէջ կ'ապրին, թէեւ ոչ միաժամանակ, բայց նոյն գաղափարներով: Գրիգոր այս կէտիս մէջ գիտա՞ծ է արդեօք մանաւորապէս հետեւիլ Սիոնի կանոնին թէ ուրոյ կարծեաց համաձայն ընթա-

[1] Համմ. Տէր Մովսէսեան Ист. 257—58 եւ Մէրք-Թանգեան՝ Հայոց եկեղ. իրաւունքը 436:

ցած է։ Առաջինն հաստատել դժուարին է, թէ եւ ծանօթ ըլլայ այն իրեն[1], այլապէս անհասկանալի պիտի մնայ Եզրայ եւ Միրաքայ գրքերու պարապսումն եւ կարգի տարբերութիւնն։ Երկրորդ կարծիքն ըստ մեզ հօս աւելի հաւանական պէտք է համարիլ։ Գրիգոր թէ իւր գրոց Ազգին մէջ եւ թէ ուրիշ տեղեր կը ծանուցանէ թէ ինքն կ'ընթանայ այն կարգին, որ կը գտնուի իւր Աստուածաշնչին մէջ, այսպէս մօտագրութեան արժանի են ԺԲ մարգարէից վրայ գրած հատուածին սա տողերը. "Ոչ դարձեալ որպէս եղեալ են ի մատենին, այնպէս է եւ ժամանակն նոցա, այլ այլ իմն օրինակաւ. զի ի սոցանէ ոմանք ժամանակաւ յառաջ մարգարէացան, բայց ոչ յառաջին եդեալ են...։ Արդ զի ոչ արարին այսմիկ հոգք շարադրողք Ս. Տառից, զի ի հոգեւորն խորհուրդ ոչինչ առնէ յաւելումն կամ պակասումն առաջին եւ երկրորդ դասիլ" (Թ. 47. Թղ. 102բ.)։ Եւ սակայն Գրիգորի ի մէջ բերած կարգն յայտ ալ կը շեղի մինչեւ ցայժմ ծանօթ դասաւորութիւններէն։ Նոր Կտակարանի բաժինը մասամբ համաձայն է Սարկաւագի կարգադրութեանց, այսպէս Աւետարանչաց դասաւորութիւնն։ Պաւղոսի ԺԴ (ԺԵ) թղթոց շարքն Այրիվանեցւոյ յիշատակած (էջ 34) "Ըստ գրութեան Կղեմայ որպէս եգիտ, դասաւորութեամբ է եւ որ ամենէն ընդունում ածն է[2]։

---

[1] Տէր-Մովսէսեանի տարակոյսն այս նկատմամբ (Ист. 231) սխալ ժամանակագրութեան հետեւութեամբ է։

[2] Համմ. Տէր-Մովսէսեանի ի մէջ բերած ցանկերն հետ. Ист. 253—266։

*Բ. Մասը, որ Պատճառաց գրոց Գ.—ԺԲ. գլուխները կը կազմուի, անուանեցինք Հայրախօսութիւն, ըստ հեղինակին Սուրբ գրեանց բաժինն է այս: Մինչ ներածութիւնն Ս. Գրոց կանոնական մատեանները կ՚ընէր իւր քննութեան առարկայ, իբրեւ աստուածային յայտնութեան ներշնչեալ աղբիւրներ, Հայրախօսութիւնն կ՚ընդգրկէ եկեղեցւոյ հին մատենագրաց, Ս. Հարց հեղինակութիւններն, ուր ամբարուած է եկեղ. աւանդութիւնը: Ս. Հարց գրութիւնք, թէ իբրեւ եկեղեցւոյ անդամոց գրուածքներ, եւ թէ իբրեւ աղբիւր աստուածաբանութեան, ուսումնասիրութեան կարօտ են հաւասարապէս: Քննութեան եղանակն եւ նպատակն նոյն է հոս եւ հոն, այս է՝ պարզել գրութեան մը հեղինակի անձը, կեանքը, գրութեանց շարժառիթն, թիւն, եւ վերջապէս գնահատել աստուածաբանութեան համար ունեցած արժէքը: Այժմեան աստուածաբանք երկու ճամբով կը հասնին առ այս. Հայրախօսութեամբ* (Patrologie), *եւ Հայրագիտութեամբ* (Patristik). *երկու բաժանումներս ալ մեր հեղինակին քով ի մի ձուլուած են, համաձայն հնոց*[1]*: Հայրախօսութեան ընդարձակ գաղափարն թէեւ Պատճառաց գրոց մէջ շատ անձուկ կը նկատուի, ըստ որում միայն այն կարգի գրութիւններն ի նկատի առնուած են հոս, որոնք «Նուրբ» գրուած են եւ առաւելապէս խորհրդական աստուածաբանութեան*

[1] J. Nirschl, Lehrbuch der Patrologie und Patristik. Mainz, 1881—1885, *երեք հատոր*:

(Mystik) կը հային, բայց այս չի մնասեր ամենեւին հայրախօսութեան գաղափարին, հեղինակ անձերը — ի բաց առեալ զՓիլոն — եկեղեցական մատենագիրներ են, մանաւանդ թէ նաեւ Փիլոն անոնց թուէն է ըստ Գրիգորի, վասն զի դարձած է ապա քրիստոնեայ: Թէ ինչու Նուրբ գրութիւնք միայն ընտրած է Գրիգոր իւր ուսումնասիրութեան նիւթ, զայն կարելի չէ բացատրել. բայց կրնանք հաստատել թէ նա ինքնաբերաբար չէ վարուած հոս: Իրմէ շատ յառաջ՝ Սարկաւագ Վարդապետ նման խտրութիւն մը ըրած էր Ս. Հարց գրուածոց մէջ, ինչպէս կը տեսնուի իւր “Կարգադրութիւնք գրոց սրբոց„ ուսումնասիրութենէն (հմմտ. Այրիվ. 33). հոս Յովհ. Սարկաւագ Վարդապետ երեք տեսակ զանազանութիւն կը դնէ առ հասարակ սուրբ գրքերու մէջ. 1. Նոր կտակարան. 2. Հին կտակարան. 3. Նուրբեր:

Երրորդ խումբը “Նուրբ„ յորջորջմամբ առաջին անգամ հոս կը պատահի, եւ ասկէ սորված է Գրիգոր. այս կոչումը ապահովապէս գրքերու նիւթի եւ ոճի պայմանէն առնուած է. յիրաւի ալ միտ դնելով բովանդակութեան, կը տեսնուի խօսքերու “Նրբութիւն„ մը, խորին ոճ մը: Կարրիէր կը թարգմանէ այս բառը livres subtils, profonds (Une version arménienne de l'histoire d'Assèneth, p. 478. հմմտ. եւ Brosset, Histoire chronologique par M. d'Aïrivank. St. Pétersb. 1879, p. 24) եւ կը հասկընայ ակնարկուած՝ “գրքեր, որոնց

ընթերցուածն թոյլ տրուած կամ յանձնարարուած է հաւատացելոց»: Այս մեկնութիւնն ուղիղ չի թուիր մեզի. վասն զի հակառակ դէպքին պիտի պնդուի թէ Ցանկիս մէջ չառնուած գրութիւնք արգելեալ էին, այսպէս Ոսկեբերանի, Աթանասի եւ այլոց գրութիւնք, որոնց յիշատակութիւնն անգամ չենք տեսներ: Հ. Ալիշան կը նկատէ հոս ակնարկուած «խորթնաբան գիրք հարց» (Այրարատ, 351), Պատկանեան (Ռուս. թարգմ. Այրիվ. էջ 362) եւ Տէր Մովսէսեան (Ист 101, 229) կը թարգմանեն ըստ իմաստին Философскія книги, Փիլիսոփայական գրքեր, որ նոյնպէս շատ ճիշդ չէ: Նուրբք կոչուածն, ինչպէս ըսինք, գրուածոց ոճէն առնուած է, որ նիւթոյն համեմատ խորհրդական, վերացական ոճով գրուած է, ինչպէս են Աստուածաբանի, Նիւսացւոյ, Փիլոնի, Պրոնեսիոսի գրութիւնք, ուր փիլիսոփայ մատենագիրք աղեքսանդրեան դպրոցի յատուկ այլաբանական ոճով կը ճառեն քրիստոնէական խորհրդոց վրայ: Այս բացատրութիւնն Սարկաւագի ազդեցութեամբ կը նշմարուի Գրիգորի Պատճառաց գրոց մէջ ալ, եւ՝ անշուշտ ասոր եւ Սարկաւագի գրութիւններէն՝ Մովսէս Երզնկացւոյ եւ այլոց քով. Մովսէս գրէ՝ «Գիրք Աստուածաշունչ, Մեկնչեր, եւ Նրբեր եւ Վարդապետական գիրք» (Ист. 229): ԺԷ. դարուն սովորական բացադրութիւն էր «Նուրբ» առ հասարակ ամէն փիլիսոփայական գրութեանց համար. Խաչատուր Կեսարացի Գր. Կեսարացւոյ

վրայ յօրինած գովեստի մէջ կը կոչէ զԳրիգոր "պատմող Նրբից եւ արտաքնոց" (Պատմ. Նոր Ջուղայի, Բ. էջ 22) եւ Առաքել Դաւրիժեցի (էջ 11) "այր գիտնական Նրբից եւ արտաքնոց": — "Լայն գրեանք" յորջորջուած Աստուածաշունչ մատենից՝ միայն Գրիգորի քով կը պատահի:

Նուրբ գրոց ուսումնասիրութիւնն ըստ պատճառաց գրոց արտաքոյ կարգի նշանակալից է հայ թարգմանական գրականութեան պատմութեան տեսակէտէ (հմմտ. եւ Կարրիէր, անդ, ծն. 3), թէ իբրեւ ճոխ ցանկ մը ընծայելուն նախնեաց թարգմանութեանց, եւ թէ իւր մէջ բովանդակելուն համար իւրաքանչիւր գրոց մասին կարեւոր տեղեկութիւններ: Թէեւ պատճառաց գրոց ցանկն համեմատութեամբ Սարկաւագի ներկայացուցած ցանկին շատ աղքատ կարելի է համարիլ, բայց յետականս կը համընթանայ անոր հետ եւ զգալի է Գրիգորի հետեւիլն Սարկաւագեան կարգադրութեանց. Մխիթար Այրիվանեցւոյ քով [1] սակայն շատ հարազատ չէ մնացած նախնական օրինակն, ինչպէս կարելի է տեսնել հետեւեալ համեմատական ցանկէն, ուր դրած ենք Մխիթարայ կրկին խմբագրութիւններն [2] ալ:

1 Ինչպէս Հ. Գալէմքեարեան (ՀԱ. 162) կը գրէ Ձեռագրին մէջ այս կարգադրութիւնք գտանուած է Մխիթար ժամանակագրութեան վերջերն, այն տեղ, ուր Սարկաւագի մահը կը յիշատակուի (յամի 1111—1121):

2 Մին ըստ ժամանակագրութեան եւ միւսն ըստ ճառընտրի կարգին (հմմտ. Թ. 217 Ձեռ.), որուն հետեւելով դրած է առաջինը: Լոյս գրքերու համեմատական տախտակն տես ՀԱ. 1891, էջ 163—164:

| Գերք Պատճառաց։ | Ճառընտիր (Թ. 217)։ | ՄԽԻԹ. Այրիվ. 35 6։ |
|---|---|---|
| | *Փիլոն.* | |
| Յղ. Նախախնամութեան։ | Յղ. Նախախնամութեան բան Ա. Բ. | Փիլոն Թ. գիրք. |
| Յղ. Տեսականին, այս ինքն Նահապետացն. | Կեանք Վարուց իմաստնոյ (= Նահապետաց)։ | Նախախնամութիւն. Խ.<br>Նահապետացն, Ա. |
| Տեսական, այս ինքն միակեցաց, Հեսեայք. | Յղ. Վարուց տեսականին (Հեսսեանցն)։ | Հեսսեանցն („Հեսսեցն“). Ա. |
| Յղ. Այլաբանութեան. | Աստուածային օրինացն այլաբանութեան։ | Այլաբանութեանց. Ա. |
| Յղ. Ծննդոց գրոց.<br>Որ ի լինելութեան խնդրոց։ | Այնոցիկ որ ի լինելութեան խնդրոց եւ լուծմանց բան Ա.<br>բան Բ. | Առաջին որ ի լինելութեանց. ՂԹ.<br>Բ. որ ի լինութեանց. ՉԲ. |
| Այնմ թէ երեւեցաւ Աբրահամու կաղնեաւն Մամբրէի | բան Գ.<br>բան Դ. | Գ. որ ի լինելութեանց. ԿԲ.<br>Դ. երեւեցաւն. ՃԿԸ։ |
| Յղ. Ելից Եգիպտոսէ։ | Այնոցիկ որք յելսն Եգիպտոսի խնդրոց եւ լուծմանց. Ա. Բ։ | |

¹ Պատճառաց գիրքը Փիլոնի գործիններէն 7 գլխաւորներն կը յիշէ յանուանէ, թէեւ ծանօթ են իրեն մանունք ալ։

Փիլոն.

Յղ. Քահանայից:
Յղ. Ժ·Բ·իցն (իմա Յղ. Ժ բանիցն):
Յղ. Թէ ոչ չնայցես:
Ընանց պատրաստելոյ ի Սամոսն:
Յղ. Յունանու:
Յղ. զԸստուած ի բարեգործու-
 թեան հուր ծախող անուանել
 ի տեսլեան Գ. մանդանցն:

Պիտնեսիոս Արիոպագացի

| | |
|---|---|
| Յղ. Երկնային քահանայապետու-թեան. | Պիտնեսիոսի Է գիրք. Երկնային քահանայապետութեան. Ժ·Է. |
| Յղ. եկեղ. քահանայապետութեան. | Եկեղեցւոյ քահանայապետութեան Ժ·Գ. |
| Յղ. Աստուածային անուանց. | Աստուածային անուանցն. Ժ·Բ. |
| Խորհրդական աստուածաբանու-թեանցն. | Խորհրդական աստուածաբանու-թեանցն. Գ. |
| Թուղթք: | Թուղթ Ժ·Բ: |

[illegible]

*Գրիգոր Նիւսացի*

| | | |
|---|---|---|
| Ժողովող · | Յղ · բնութեան · | Բնութիւնն ԼԴ · |
| Երգ երգոց · | Յղ · կազմութեան · | Կազմութիւն ԼԲ · |
| Թ · երանութեանցն · | Յղ · կուսութեան · | Կուսութիւնն Ի · |
| Հայր մեր · | Մեկն · ժողովողին · | Ժողովողն Ը · |
| Կուսութեան գիրք · | Մեկն · Երգոց երգոյն · | Երգ երգոցն ԺԴ · |
| Յղ · կազմութեան մարդոյ · | Մեկն · Թ · երանութեանցն : | Թ · երանութիւնքն Ը · |
| Բնութեան գիրք : | Մեկն · Հայր մերի · | Հայր մեր որ յերկ · Զ : |

*Աթանասիոս*

| | | |
|---|---|---|
| Չէ · | Ի մէջ Քրիստոսասիրացն · | Ի մէջ Քրիստոսասիրացն Ա · |

*Գրիգոր Աստուածաբան*

| | | |
|---|---|---|
| [illegible] : | Քրիստոս ծնեալ լինի (ժԲ ճառ · | Քրիստոս ծնեալն ժԲ · |
| | Յաղթեցայ , Ը · | Յաղթեցայն Ը · |
| | Եա որս , ժԵ · | Եա որսն ժԵ · |
| | Որք յեգիպտոսէ ժԱ · | Որք յեգիպտոսէ ժԱ : |

¹ Պատճառաց Գրոց մէջ Գր. Նիւսացւոյ գրութիւնք դասուած են Աստուածաբանի գրութիւններէ վերջ

| | | |
|---|---|---|
| | *Բարսեղ Կեսարացի* | |
| Գիրք Պահոց. | Զ Պահոց. | Բարսղի Գ. գիրք: |
| Հարցողաց. | Հարցողաց (ՅԿԱ հարցումն + ժԱ): | Հարցողացն ՅԿԱ. |
| Զօրէայ: | Վեցօրէից Թ. | Զօրէն Թ. |
| | | Կուսութեան Ա ճառ: |
| | *Եւագր Պոնտացի* | |
| Նշանակ յԵզեկիէլէ. | Նշանակ յԵզեկիէլի-ն | |
| | Վասն հանդերձից Ա. Հարցն | |
| Գիտնական եւ արգիւնաւոր. | Գիտնաւոր եւ արգիւնաւոր ...[1] | |
| Առ Անատօլիս. | Հարիւրաւորքն. | |
| Յերինսսի գրոց հարցումն: | Բան խրատու. | |
| | Թուղթք: | |
| | *Դաւիթ Անյաղթ* | |
| Բարձրացուցէք. | | |
| Սահմանաց գիրք. | Սահմանաց | Սահմանքն Դաւթի. ԽԴ. |
| Քերականութիւն: | | |
| | *Պրոկղ.* | |
| | Պրոկղի Լուծմունք. | Պրոկղի Եղիադոխայ ան. |
| | | եւ Ադիափաւսի լուծմունքն: |

[1] Կը յիշուին որիշ մանունք ալ:

| | |
|---|---|
| *Դիոնեսիոս* | |
| Քերականութիւն. | Քերականութիւն ՄԺԱ. |
| Հերմէս իմաստասիրի. | Հերմէս. Ա. |
| *Պորփիւրի* | |
| Ներածութիւն. | Պորփիւրն ԾԱ. |
| Դաւիթի ի Ներածութենէ Պորփիւրի. | |
| *Արիստոտէլի* | |
| | Ի Դէտ. |
| Ստորոգութիւն. | Ժ Ստորոգութիւնքն. |
| Պերիարմէնիաս. | Պերիարմենեան, ՀԹ. |
| Յղ. Առաքինութեան. | Առաքինութեանցն, Ա. |
| Յղ. Աշխարհաց ....... | Աշխարհացն, Ա. |
| ...............¹ | ................. |

Յովհաննու ընթերցուածք.

¹ Թ. 217ի ցանկն հոս կ'աւարտի, ապա անդին թերթ ընդամ Էջմիածնի Ճառընտիրը։

Համեմատական տախտակիս վրայ հարեւանցի ակնարկն իսկ պիտի պարզէ մեր աչաց, թէ Գրիգորի ցանկին մէջ կը պակսին շատ մը գրքեր, որոնք Սարկաւագի ցանկին մէջ կը տեսնուին։ Սակայն այս չ'արգելուր զմեզ բնաւ պնդելու թէ Գրիգոր հետեւած է Սարկաւագի։ Առ երեւոյթ դժուարութեանս հանդէպ ուղղենք հարցում մը. Արդեօք Մխիթարայ յառաջ բերած այս ցանկը ամբողջական եւ հարազա՞տ է, կամ Մխիթար 170 օրուան մէջ օրինակած ստուարահատոր ճառընտիրին մէջ միայն Սարկաւագի նշանակած գրութիւննե՞րն ներս առաւ նոյն կարգաւ, թէ ուրիշներ ալ կցեց։ Հարցում մը, որուն պատասխանն պիտի խոնարհի ի նպաստ Գրիգորի։ Թէ ստուգիւ Սարկաւագ Վարդապետ ըրած է այսպիսի կարգադրութիւն մը, զայն չենք ժխտեր, որուն վկայ է եւ Կիրակոս Գանձակեցի (94) “Գրեաց (Սարկաւագ) եւ օրինակս ստոյգ գրոց„․ բայց Մխիթար հոս մեզ անփոփոխ չի ընծայեր Սարկաւագի կարգադրութիւնքը։ Այսպէս Մխիթար ի կարգին նշանակած է Եւագրեայ գրոց թուոյն մէջ Հարիւրաւորքը յարակիցներով, զորոնք Վարդան թարգմանած է ԺԳ դարուն. Պրոկղի Լուծմունքը, որուն թարգմանիչն Սիմէոն Գառնեցին է նոյնպէս ԺԳ դարուն, որոնք բացարձակապէս չէին կրնար ծանօթ ըլլալ Սարկաւագի ԺԲ դարուն։ Մխիթար փոխած է Սարկաւագեան կարգադրութիւնքն նաեւ աւելցնելով մեկնողական գրքեր, որոնք չեն վերաբերիր “Նրբերուն„։ Աչքի զարնող փոփո-

խուլթիւն է նաեւ Բարձրացուցէք ճառին գասելն լայն գրոց մէջ, որ Նուրբերու խմբէն է։ Չենք կրնար տալ ասոր պատճառը. նոյնպէս չենք գիտեր, թէ ինչ պատճառաւ Գր. Նիւսացւոյ գրութիւնք նախադասուած են Գր. Աստուածաբանի գրութիւններէն։ Այս ամէնը նորագոյն ձեռք մատնանիշ կ'ընէ, եւ չկայ որ եւ իցէ Հիմ՝ Մխիթարայ ընծայեած կարգագրութիւնքն հարազատ համարելու եւ ոչ Գրիգորինը։

Ինչպէս Լայն գրքերու մէն մի մատենին պատճառները հետազօտեց Գրիգոր, նոյնպէս նիւթ ըրած է հետազօտութեան յիշեալ հեղինակաց մէն մի գրութիւնքն առանձին առանձին, այն ոճով, որով Ա. մասն քննած էր։ Այս կէտիս վրայ հոս յընդհանուրն խօսիլ անպէտ կը համարինք, քանի որ նպատակ դրած ենք մէն մի գրութիւն ի մերձուստ կրկտել։ Իսկ աղբերյաց մասին հոս ալ կ'արժէ հեղինակի խոստովանածն թէ «զոր սրբոց արանցն ասացեալ է . . . զայն ի մի վայր ժողովեցի ըստ կարի իմում». (տես վերը էջ 24), ինչպէս յետագայ տողերու մէջ պիտի ցուցնենք։

Ի վերջոյ չենք կրնար չյայտնել այն թերութիւնն, զոր ունին այժմեան Ձեռագիրք հոս։ Գրիգոր յատուկ ազդ մը դրած էր Լայն գրոց սկիզբը, յուսալի էր նման ազդ մ'ալ Նուրբ գրոց մուտքին. Էջմիածնի ձեռագիրն թերակատար ըլլալուն, Յուդայի առաքելոյն թղթոյն կատարածին հետ Նուրբ գրոց մուտքն ալ կը պակսի։

## ԴԱՒԻԹ ՎԱՐԴԱՊԵՏ ՔՈԲԱՅՐԵՑԻ

Առիթ ունեցանք յիշատակել (էջ 10—11) Դաւիթ Վ. Քոբայրեցւոյ անունն, որ պարապած էր գրքերու պատճառներով, ուսկից քաղուածներ ալ եղած են իր դրացւոյն եւ ժամանակակցի ձեռքէն՝ Պատճառաց գրոց մէջ։ Յատուկ գլխով կարեւոր է յերեւան հանել իր անձն ալ, որուն գոյութիւնն թէեւ ցայժմ անյայտ չէր, բայց շատ անկատար էր մեր ծանօթութիւնն իր մասին։

Դաւիթ Վարդապետ անուան կից կը կրէ «Քոբայրեցի» (Կիր. Գանձակ. 84) կամ «Քոբարեցի» (Ն. Լամբր. 218) եւ կամ «Քոբերեցի» (Գիրք պատճ.) յորջորջանքն, որ անշուշտ կ'ուզէ նշանակել, թէ Դաւիթ իր միանձնական կենաց սկիզբն բռած է Ձորոգետոյ ափանց վրայ՝ Այգեհատ գիւղի կից Քոբայր (Քոբար) կամ վրացերէն Քոբեր ԺԲ դարու անուանի գեղեցկագիր մենաստանն, ուր երբեմն ճգնած էին կուսութեամբ նաեւ «Կանայք թագաւորազունք Խորասու եւ Մարիամ» (Վարդան, 122), եւ որոնց յիշատակարանք (յամէ 1153) դեռ այսօր կը խօսին այցելուներու[1]։ Եղա՞ծ է Հայրենիքն ալ այս կողմերն, կը լռեն այս մասին աղբերք, ինչպէս նաեւ թէ որչափ ժամանակ կրօնաւորած է հոս Դաւիթ. բայց ապահովապէս նշանակալից դեր կատարած պիտի ըլլայ կամ ինքն Մենաստանին կամ Մենաստանն

[1] Ջալալեանց՝ Ճանապարհորդութիւն ի Հայս. Ա. 102։ ԱԶԳ. ՀԱՆԴ. Զ. (1901) 419-422։

իրեն համար, որով տեղւոյն անունն ալ այնուհետեւ անբաժին եղած է իրմէ։ ԺԲ դարու վերջերն անցած կ'երեւայ Քօբայրէն ոչ շատ հեռու, բայց աւելի մեծ եւ հռչակաւոր, նոյնպէս Ձորոգետոյ ափանց վրայ տարածուող «մայրավանքն» Հաղբատ։ Շարժառիթն, որով հեռացաւ նա Քօբայրէն ծանօթ չէ, բայց անտեղի չէ կարծել թէ հրապուրուած Հաղբատայ «մայրաքաղաք»ի անունէն, որ կեդրոնն էր ԺԲ դարու հիւսիսային Հայաստանի հոգեւոր եւ մտաւոր բարգաւաճման, եւ հանգստարանն Յովհաննէս Սարկաւագ Վարդապետի ոսկերաց։ Վանքն ծաղկեալ վիճակի մէջ կը գտնուէր արդէն, երբ կը կոխէր հոն Դաւիթ, եւ ունէր «իմաստուն եւ սրբասնեալ» համբաւով ականաւոր Վարդապետներ — Վարդան, Պետրոս, Իգնատիոս անուն, եւ Գէորգ, Յովհաննէս եւն գովեալ առաջնորդներ. առաջինն ծանօթ Շնորհալւոյ հետ իր թղթակցութիւններով[1]։

Դաւիթ կ'աշակերտի հոս առ ոտս Վարդանայ եւ Պետրոսի (մերձաւորապէս 1160—1170)։ Վերջնոյս խնդրանօք գրած է Եսայեայ մեկնութիւն մը եւ առաջնոյն օգնականութեամբ Ս. Հարց գրուածոց լուծմունք, զորոնք կը տեսնենք ի կարգին։ Բախտ ունեցաւ Դաւիթ հոս տեսնուելու եւ խօսակցելու նաեւ Յովսէփ Նորաշէնցի պատանւոյն հետ, որուն նահատակու-

---

1 Ընդհանրական Թուղթք Ն. Շնորհալւոյ. Երուսաղէմ 1871, էջ 216–18. Ալիշան՝ Շնորհալի եւ պարագայ իւր. Վենետ. 1873, էջ 270, 476.

թեան ներբողն պիտի հիւսէր ապա։ Վարդապետութեան աստիճանն ընդունելէ յետոյ կը պարապէր ուսուցչութեամբ, քարոզութեամբ եւ մատենագրութեամբ. աշակերտացը թուին մէջ կը յիշուի յականէ Խաչատուր երէց մը։ Ունինք իրմէ Մատթէի մեկնութիւն մը յօրինուած “ի պէտս ատենաբանութեան իւրոյ„։ Յիշեալ Խաչատուր երէցն բաղձալով ունենալ Ս. Եփրեմի Մեկնութիւնքն, կը գտնէ զայն “առ մեծարգի եւ իմաստուն վարդապետի իմոյ Դաւթի„, եւ կ՚օրինակէ զայն յամի 1195 յեպիսկոպոսութեան Տեառն Յովհաննիսի, եւ ի մահուան Տեառն Գրիգորի Հայոց կաթողիկոսի եւ ի վարդապետութեանն Դաւթի[1], Պետրոսի եւ Իգնատիոսի„։

Իբրեւ անուանի վարդապետ ի հարկէ չէր կրնար միջամուխ չըլլալ ժամանակակից եկեղ. խնդրոց մէջ։ Հիւսիսային Վարդապետաց առ Գրիգոր Տղայ (1173—93) անզգոյշ թղթին (յամի 1180՞) կը ստորագրէին “Գրիգոր (Տուտէորդի) Սանահնին եւ Հայր Յովհաննէս. վարդապետք մայրաքաղաքիս Հաղբատայ՝ Իգնատիոս, Պետրոս, Վարդան եւ Դաւիթ[2]„։ Հիւսիսային Վարդապետաց այս ընթացքն բնականաբար հաճելի պիտի չնկատուէր, եւ Ներսէս

1 Հայապատում, Բ, 2, էջ 335-36, ուր ամբողջութեամբ հրատարակուած է Յիշատակարանը։ Վայրապար է Հ. Ալիշանի փորձերն յանձին Դաւթի Քոբայրեցին նկատելու համար։

2 Ընդհանրական Թուղթք Ն. Շնորհալւոյ. էջ 308. եւ Տաշեան՝ Ցուցակ, 950։

Լամբրոնացի իւր առ Լեւոն արքայ թղթին մէջ կը գրէր հեգնաբար յամի 1195. «ԶԱնեցւոյն պատուղն դուք էք լսեր եւ զՁորոյ գետոյն, եւ որ անդ Տուտէորդին (Գրիգոր) եւ Քորքորեցին (Դաւիթ) եւ այլքն իւրեանց տեսողքն[1]»։ Նոյնպէս ժամանակից էր այն յուզմանց, որոնք ծագեցան ապա, երբ Զաքարէ սպասալար հաւանութեամբ Կիլիկեցւոց առաջարկեց Լոռւոյ (1204) եւ Անւոյ (1205) ժողովներու մէջ ինչ ինչ ծիսական խնդիրներ՝ համաձայն Վրաց կատարել (Կիր. 84, Վարդան 138—9)։ Կիրակոս Գանձակեցի յանուանէ կը յիշէ ժողովոյն ներկայ «երեւելի» վարդապետաց թուին մէջ՝ կից Մխիթարայ Գոշի նաեւ «զԴաւիթ Քոբայրեցին ի Հաղբատայ»։ Զաքարէի առաջարկութեանց «ոմանք հաւանեցան եւ կէսք ոչ» (Կիր. անդ). Դաւթի որ կողմն հակուիլը յայտնի չէ յիշատակուիր։

Թէ երբ կնքեց իւր մահկանացուն, ոչինչ կ'աւանդեն հինները, այժմ իւր շիրիմն կը ցուցուի Հաղբատու զանգակատան դրան քով՝ մենաստանին նշանաւոր վարդապետաց գերեզմանոցն՝ կից Յովհ. Երզնկացւոյ դամբանին, այսպիսի տապանագրով՝ ըստ Յովհ. Ղրիմեցւոյ ընթերցման[2].

---

[1] Ն. Լամբրոնացւոյ Ատենաբանութիւն եւ թուղթք եւ ճառք. Վենետ. 1838, էջ 218։

[2] Brosset, Description des monastéres arméniens d'Haghbat et de Sanahin, p. 40. Հմմտ. եւ ԱՐՏ. 1888, էջ 74. Տաշեան՝ Ցուցակ, էջ 985 ԸԶԳ. ՀԱՆԴ. 409։

## ՀԱՒՐ ՄԵՐՈՅ ՀՈԳԵՒՈՐԻ ԴԱՒԹԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՔՈԲԱՅՐԵՑՈՅ Է ՏԱՊԱՆՍ ՅԻՇԵԱ Ի ՏԷՐ ՍՈՒՐԲ

*Գէշ սղագրութեամբ մը, ինչպէս միւս վարդապետաց, նոյնպէս ասոր շիրմին վրայ չէ գրուած մահուան տարին. բայց ապահովապէս ԺԳ. դարու առաջին քառորդն հազիւ թէ բոլորեց: Այսչափ իր կենսագրութենէն. աչք մ'ալ իր գրուածոց:*

*Նախնեաց գրութիւններով զբաղողք միշտ մտատանջութեան մէջ գտնուած են, երբ նկատած են ինք զինքնին մատենագրի մը հանդէպ, որուն համանուն այլ եւ այլ անձինք ապրած են մի եւ նոյն կամ մօտաւոր դարուն. երկրորդական յորջորջանքներն, որոնք քիչ մը կռուան պիտի ընձեռէին այսպիսի անորոշութեանց մէջ, շատ դէպքերու մէջ դժբախտաբար կ'անտեսուին հիներէն. նման դրից մէջ ենք մենք ալ այժմ. «Դաւիթ» սովորական անուն մ'է հայ եկեղեցականաց, որոնք ապրած են ԺԲ եւ յաջորդ դարուց մէջ. որո՞ւն պէտք է ընծայել ձեռագրաց մէջ պարզապէս Դաւիթ «վարդապետի» կամ «քահանայի» անունն կրող գրութիւնները: Հրաժարելով այս մասին մանր պատասխանելէ, ի նկատի կ'առնունք հոս միայն հետեւեալները, զորոնք Քոբայրեցւոյ կը կարծենք:*

1\. *Մեկնութիւն Յոբայ Գրոց. այս գրուածքն կ'ընծայէ Քոբայրեցւոյ Սամուէլեան*

գերապայծառ[1] դիտել տալով միանգամայն՝ թէ բնագիրն ցայժմ յերեւան ելած չէ, այլ ծանօթ է իրեն միայն Յ. Վանական վարդապետի Յոբայ Մեկնութենէն, ուր կոչումներ ալ կ'ըլլան յանուն Քորայրեցւոյ: Վանական վարդապետի այդ մեկնութիւնն ըստ մեր Թ. 289 (եւ 302) Ձեռագրին ունի խորագիր. "Գիրք որ կոչի Մեկնութիւն Յոբայ, արարեալ ծաղկաքաղօրէն Վանական վարդապետի՝ հաւաքեալ ի Դաւթայ եւ ի Յիւսիքոսէ Նրբիմաց վարդապետաց ի փառս Աստուծոյ եւ յօգուտ մանկանց եկեղեցւոյ„ (Հմմտ. Ցուցակ, 727—28): Թէ ինչ հիմամբ զՔորայրեցին կը նշմարէ հոս Սոմալեան, չգիտեմ, մեր օրինակներուն մէջ չգտայ որեւիցէ հետք, ուր չկան նաեւ յանուանէ կոչումներ Դաւթի եւ այլոց գրուածքներէն. թերեւս Ս. Ղազարու Մատենադարանին Ձեռագիրք յայժմ չեղին մերինէն[2]:

---

1 Quadro della storia letteraria di Armenia, Venezia 1829, p. 102, 108. տե՛ս Զարբ. Պատմ. Հայկ. Հին Դպրութեան, 702:

2 Զարբհանալեան (734) այսպէս կը գրէ Վանականի Մեկնութեանս վրայ. "Յոբայ Մեկնութիւն մը, որ ծաղկաքաղ հաւաքմունք մըն է Իւսիքոսի եւ Դաւթի Քորայրեցւոյն համառօտ երկասիրութիւններէն. լուսանցքը մէջ կը յիշատակուին Սեւերիանոսի, Եփրեմի, Եւսեբի եւ այլոց անանց հեղինակաց անուանք...„: Կ'երեւայ ասկէ թէ Ս. Ղազարու օրինակն որոշ նշանակած է Քորայրեցւոյ անունը: Ըստ նոյն հեղինակին (անդ. էջ [illegible]) Վանական իր մեկնութեան ԻԴ գլխէն ետքը ծանօթագրած է "Աստուածեղէն Իւսիքոսին, եւ այժմ Դաւթի վարդապետին, որ Քորայրեցի կոչի„, որ մեր օրինակներու մէջ կը պակսի:

2. Հ. Զարբհանալեան «Մանր մատենագրաց» թուին մէջ (էջ 782) կը յիշատակէ «Դաւիթ քաՀանայ՝ Հեղինակ Եսայեայ մեկնութեան[1]», որ ըստ իս նոյն ըլլալու է Քոբայրեցւոյ Հետ. աւելի կը Հաստատուիմ կարծեացս մէջ, երբ կը կարդամ այս նկատմամբ Ոսկեբերանի Եսայեայ Մեկնութեան յառաջաբանին մէջ «Դաւիթ ոմն վարդապետ յերկոտասաներորդ դարու, որ ի յորդորանաց Պետրոսի վարդապետի իւրոյ գրեաց զծաղկաքաղ մեկնութիւն իւր Եսայեայ, յորում ուրեք ի կարգի բանից Ս. Եփրեմի եւ Ս. Կիւրղի Աղեքսանդրացւոյ եւ այլոց սրբոց Հարց ի մէջ բերէ ըստ բառից անգամ եւ զբանս Ոսկեբերանի ի մեկնութենէ սորի Եսայեայ[2]»: Յիշուած Պետրոս վարդապետն առանց տարակուսի Հաղբատացին է, որուն աշակերտեցաւ ԺԲ դարուն Դաւիթ:

3. Ս. Ղազարու Հայց Մատենադարանի ցուցակի մը Համաձայն կայ Հոն ԻԱ ճառընտրի մէջ (էջ 105) գրութիւն մը. «Դաւթի քաՀանայի Ի բանն Մաղաքեայ՝ «Արդ փառաւոր անունէ զՀայր...»: Չունենալով աւելի ծանօթութիւն գրուածքիս մասին՝ չեմ կրնար

1 Նոյնն յիշելով նաեւ յէջն 703 կը յաւելու. «որ թերեւս ըլլայ առանց անուան յիշատակեալն ի Գէորգայ Սկեւռացւոյ՝ իւր Եսայեայ մեկնութեան մէջ»: Էջ ԻԵ ի մէջ բերուած է գրութիւնս «Համառօտ մեկնութիւն Եսայեայ, ի Հոգեկիր մեկնողաց բանից... ի խնդրոյ ուսումնասէր մանկանց եկեղեցւոյ»:

2 Հրտ. Վենետ. 1880, Յառաջբ. էջ ԺԷ: Մեկնութենէս երկու Հատուած կարելի է տեսնել անդ. էջ 462, եւ 482:

ապացուցանել թէ յիրաւի Քոբայրեցի՞ է, որ հաւանական կը թուի։ — Զարբ. էջ խը-յանուն Քոբայրեցւոյ կը յիշատակէ գրուածք մը. «Ի բանն, Զի որպէս փայլակն... Մարգարէք եւ առաքեալք»։ Այս ալ անծանօթ է ինձ այլուստ։

4. Նոյն Մատենագրանի Զ Տօնապատճառի մէջ (էջ 796) կը գտնուի «Համառօտ երկասիրութիւն մը» (Զարբ. 702) այս վերնագրով. «Թղթադրութիւն յաւետարանն Մատթէի՝ ի պէտս ատենաբանութեան Գաւթի վարդապետի»։ Անշուշտ հիմ՝ մ'ունի Հ. Զարբ. երբ կ'ընծայէ զայս Քոբայրեցւոյ. մեզ անծանօթ է մանրամասնութիւն։

5. Հ. Գ. Ալիշան իւր գրուածոց մէջ կը ծանօթացընէ ընդարձակ քաղուածներով գրութիւն մը. «Գաւիթ քահանայի ի սքանչելի վկայն Քրիստոսի Յովսէփ պատմէն, որ յԱյրարատայ նահանգէն, Ներքողեան գովեստի»[1]։ Գաւիթ քահանայ այս Ներբողեանն յօրինած է, ինչպէս կը գրէ ինքը, ի խնդրոյ Մխիթարայ (ըստ Գ. Տէր Մկրտչեանի՝ Գօշ վարդապետի, ԱՐՐՏ, 1897, էջ 41. Նոր վկայք,

1 Շնորհալի եւ պարագայ իւր, էջ 389—96, սկիզբը եւ կատարածը ի մէջ բերուած Այրարատ, էջ 358—359. ամբէ արտատպուած՝ Հայոց Նոր Վկայք, Վաղարշապատ 1903 (գիտական հրատ.) էջ 61—64։ Գրեթէ ամբողջութեամբ հրատ. Հայապատում, Բ. 2. էջ 324—332։ Հ. Զարբ. երկիցս նշանակած է գրուածքս իւր գործոյն մէջ (էջ 662 եւ 782) երկու դէպքի մէջ ալ նկատած անծանօթ անձի մը։ Հ. Ալիշան (Հայապատում. 324) կը յիշեցընէ իբրեւ հեղինակ Առաքել որդի Գաւիթ վարդապետը, որ դժուարին է։

66)․ մատագրութեամբ ընթեռնլով առաջին տողերը կը տեսնուի թէ Դաւիթ յառաջագոյն գրած ըլլալով արդէն Ս․ վկային վկայաբանութիւն «Ճշգրտութեամբ»[1] պատմագրաբար՝ առանց ներբողելու, այժմ խնդրուած է նաեւ «գրուագս գովեստից ընդ պատմութեան նորին գովելի կենացն եւ նահատակութեանն յարահիւսել»․ առ այս կ'ուղղէ հեղինակն իւր Մեկենասին. «Այլ զի հրաւացի վարկար ըստ պատմութեանն ճշգրտաբանութեան՝ եւ զգովեստիցն մեզ լինել պարտս հաւանութիւն յանձին ունիմ՝ անստերիւր սիրոյ ախորժիւք» եւ քիչ յետոյ կ'աւելցնէ. «Պարտապանեմ պատուասիրել առ քեզ եւ պարկեշտագեղ պատուոյ գերագունիդ իմաստնոյ, եւ ինձ յոյժ աստուածուսոյց սիրով մերձաւորիդ, զզօրութիւն աստուածային եւ զանուն ՄԽԻԹԱՐական յանձին կրողի, վկայասէր մօք զվաղնջուցն ի ձէնջ խնդիրս լինել, զառոգանութիւնս գովեստից»: — Հ. Ալիշան եւ Հ. Զարբհանալեան ԺԲ դարու անյայտ անձնաւորութիւն մը կը նկատեն զԴաւիթ քահանայն․ բայց ինձ սիրելի է զՔօբայրեցին նշմարել, որուն

1 Հրտ․ ԱՐՐՏ․ 1897, էջ 41—48․ Նոր Վկայք․ 46–60։ Տէր Մկրտչեան եւս կը միտի «Հնարաւոր» տեսնել, թէ «այս վկայաբանութեան հեղինակն էլ նոյն Դաւիթն» ըլլայ, որ յօրինած է ներբողեանն ԱՐՐՏ․ 41։ Մտադիր կ'ընեմ որ ԺԲ դարու երկրորդ կիսուն կրկին Մխիթար վարդապետ կը յիշատակուի, այսպէս Հիւսիս․ վարդապետաց առ Գր․ Տղայ թղթին մէջ միւս վարդապետաց հետ կը յիշուին նաեւ «Մխիթար վրդ․ Խորանեցւոյ եւ միւս Մխիթար վրդ․ Գետկոյ» (Ընդհանրական Թուղթք․ 308։ Հետեւաբար հարկ չկայ անպատճառ Գոշ վարդապետը նկատել։

Հակառակ չեմ տեսներ որեւիցէ արգելք: Նորաշէնցի վկայն Յովսէփ (նահատակուած ի Դուին 24 Հոկտ. 1170) գտնուած է ժամանակ մը նաեւ ի Հաղբատ եւ ի Սանահին (ԱՐՐՏ, 44, Նոր վկայք, 50), կրնար հետեւաբար ծանօթացած ըլլալ Դաւթի հետ, ինչպէս որ արդեամբք ալ եղած է. "Իրաւացի վարկայ, կը գրէ Դաւիթ, ի դպրատանս գովեստից Մեծապանծ եւ Նորազարդ վկային Աստուծոյ եւ ինձ ի տեսիլ աչաց ժամանեցելոյ" (Նոր վկայք, 62). Շատ գեղեցիկ կը համապատասխանէ այս ամէնուն Քոբայրեցւոյ ժամանակակցութիւնն ալ, որ 1160—70 ի Հաղբատ կը ծաղկէր արդէն. Թէ Մխիթար Գոշ եւ թէ Ս. Վկայն այս շրջանին մէջ գտնուած են ի Հաղբատ. Մխիթարայ բարեկամութիւնն Դաւթի յետ հաստատուած պիտի ըլլայ յատկապէս անոր Հաղբատայ դպրացի Կայենոյ գաւառն բնակած միջոցին: Ներբողիս գրութեան տարին 1170էն բաւական վերջն դնելու է, քանի որ հեղինակն իրեն եղած առաջարկութիւնն կրնայ "վաղնջուց խնդիր" կոչել: Գեղեցիկ հիւսուածք մ'է Ներբողս միջնադարեան մատենագրութեան մէջ, խօսուած վայելչօրէն, ճարտարախօսութեամբ եւ եռանդնալից, որուն յաջողած է ազդեցիկ գոյն մ'ալ տալ բարձր եւ սեթեւեթեալ հայերէնով մը. ընդհանրապէս շատ գալարուն, պաճուճազարդ է իր հայերէնն, որ նկարագրական է իրեն եւ իր միւս գրուածոց մէջ ալ զգալի. Դրուատս, կը գրէ Հ. Ալիշան (Այրարատ, 358) "Ի յընտիր Ներբողենից է ի դպրու-

թեանս մերում, որով եւ հեղինակն ճանաչի մի ի ճարտար գրչաց ԺԲ դարու, որ արծաթեայն կոչի դար առ մեզ, դար Ներսիսեանց եւ Գրիգորեանց»:

6. Լուծմունք եւ պատճառք Գրիգոր Աստուածաբանի ճառից: Այս գործն ունիմ առջեւս Մատենադարանիս Թ. 317 Ձեռագրին մէջ[1]: Թէեւ մեր Օրինակին ճակատը չի տեսնուիր ոչ Դաւիթ եւ ոչ Քոբայրեցի անունն, սակայն հեղինակն «Դաւիթ» յայտնի է գրոց վերջաբանէն, ուր կը հաղորդուի ինչ ինչ տեղեկութիւն նաեւ իւր աշխատասիրութեան հանգամանաց մասին: Կը գտնուի անշուշտ «Քոբայրեցի» յորջորջանքն Վենետիկի (ուր կայ երկու օրինակ) եւ Էջմիածնի Ձեռագիրներու մէջ: Ներկայ գրուածովս ուսումնասիրութեան կ՚առնու Դաւիթ Գրիգոր Աստուածաբանի Քրիստոս ծնեալ եւ Առ որս ճառախմբերն եւ կը ջանայ պարզել մէն մի ճառի պատճառն այն ծրագրով, որով յօրինուած էր Պատճառաց գիրքը, եւ լուծել համառօտիւ Աստուածաբանի դժուարիմաց նախադասութեանց միտքը: Ամէն ճառ չունի իւր լուծումն, թէեւ տրուած է «պատճառը»: Լուծմունք ընդհանրապէս համառօտախօս են. յայսմ իւր հետեւած ոճն է, նախ դնել մեկնելի բնաբանն ամբողջութեամբ կամ համառօտագրութեամբ, եւ ապա տալ կարեւոր լուծումը. բնաբանն մեկնութենէն զատելու համար ի սկզբան կը գործածէ բն. (բ.) եւ

[1] Նկարագրութիւնն Տաշեան՝ Ցուցակ, 754—57:

մկ. համառօտութիւնն, զոր շուտով թողլով ձեռք կ'առնու [1] նշանաձեւն: Լուծմանց նպատակն պարզապէս դիւրութիւն ընծայել է նորուս աշակերտաց. զայս կ'ակնարկէ ապահովապէս Ա ճառին լուծմանց սկիզբն կարմրագիր տողս. «Սակս պիտոյից համառօտ հաւաքումն ի Դաւթայ» (թ. 317, թղ. 4ա):

Քննութեան նիւթ եղած ճառերն հետեւեալներն են ըստ կարգի մեր Ձեռագրին.

1. ՔՐԻՍՏՈՍ ԾՆԵԱԼ՝ լինի.
2. Դարձեալ իմ Յիսուս.
3. Ի Մկրտութիւն համարակաց.
4. Յարութեան օր.
5. Ի պահու իմում.
6. Ի Ս. Պատքս Աստուծոյ մերոյ.
7. Խօսք ի նոր Կիւրակէն.
8. Ի պենտակոստն եւ ի Հոգին.
9. Ի ժողովողն.
10. Առ հայրն իւր լռեալ.. վասն կարկտի
11. Յղ. աղքատսիրութեան.

(12. ի Կիպրիանոս եպ. եւ վկայ.)
(13. ի Մակաբայեցիս.)

1. ԱՌ ՈՐՍ[2] բանիւն պաճուճեալք.
2. Յաղագս Հաւատոյ.
3. Յաղագս Որդւոյ բան առաջին.
4. Առ այնոսիկ, որ ասեն եթէ մեծ է Հայր քան զՈրդի.
5. Յաղագս Որդւոյ բան երկրորդ.
6. Յաղագս սրբոյ Հոգւոյն.
7. Յաղագս աստուածաբանութեան ի Հոգին.

---

[1] Հմմտ. Մատենադարան հայկ. հին թարգմ. 352–54։

[2] Անդ. 341–350։

8. Առ Արիանոսն.
9. Առ Կղեմենտիոս Ա.
10. Առ նոյն երկրորդ.
11. Ի մարգարէական բանն՝ Որովայն իմ ցաւէ։
12. Յաղագս բարեկարգութեան ի խաւսս.
13. Խաղաղական առաջին.
14. Խաղաղական երկրորդ։
15. Խաղաղական երրորդ։

Ի Կիպրիանոս եւ ի Մակարայեցիս ճառերու պատճառք եւ լուծմունք չկան մեր օրինակին մէջ, թէեւ ընդօրինակողն կը ծանօթագրէր (թղ. 118ա). «Յայսմ կարգի է պատճառ ճառին Կիպրիանոսի եւ Մակարայեցւոցն եւս. ի վերջ գրոցս գիտ եւ ընթերցիր»։ Անցընելով ընթերցողն այս ամէն Պատճառներու եւ լուծմանց վրայէն պիտի նշմարէ յանձին Դաւթի հմուտ միտք մը, քաջ մեկնիչ, լաւ ծանօթ Ս. Գրոց եւ Ս. Հարց գրուածոց. շատ որոշ են իւր մեկնութիւններն, համառօտաբան բայց իմաստնալից։

Ի՛նչ աղբիւրներէ օգտուած է հեղինակն իւր այս եւ նման աշխատասիրութեանց մէջ. հետաքրքրական հարց մ'է այս, վասն զի բովանդակ ձեռնարկութիւնն ինքնին նորանշան բան մ'է, մեծամեծ ճիգերու կարօտ հայ մտքի մը համար. առանց տեղեակ ըլլալու յոյն մատենագրութեան կամ առ այն ձեռնտու ասորի գրականութեան, գրել յոյն հօր մը գրուածոց պատճառներն, անըմբռնելի է, այնու մանաւանդ, որ շատ տեղեր կը յիշատակուի նաեւ կարծեաց պէսպիսութիւն խնդրոյ մը շուրջը, թէեւ առանց անուան։

Քարայրեցւոյ անհմտութիւնն յունարէնի եւ ասորերէնի անվիճելի է. ինչպէս սակայն ծանօթացած է անոնց գրականութեան[1]: Այս գաղտնեաց յայտնութիւնն կ'ընէ ինքնին իր վերջաբանին մէջ, զոր ի մէջ կը բերենք հոս ամբողջութեամբ.

Զաւրացուցանաւղին ակարաց Քրիստոսի Աստուծոյ յուսոյն մերոյ փառս վերառաքեսցի գոհացողական ձայնիւ յաւարտման գծիս, ի Դաւթա աղերսողէ, որ աշխատեցայս ի յարմարումն ստորագրութեանս, որ երկիւղիւ մերձեալ ի սկսումն, գուցէ ոչ բաւեցից տոկալ հասանել յայս գիծ. սակայն ժամանեցոյց, որ տայն իմաստս եւ զաւրութիւն, որ զմեռեալս կենագործէ, եւ զայլսն հրաշակերտս ի պատիւ եւ փառս մեծագործութեան իւրոյ, որում ընդ մերումս գոհացողական ձայնիւ համանգամայն յամենեցունց, յերկնաւորաց եւ յերկրաւորաց փառս ի վեր առաքեսցի, Հաւր ամենակալի, եւ Որդւոյ նորա ամենակալի եւ փառակցի, եւ ամենասուրբ Հոգւոյն արարչակցի եւ իշխանակցի, յանսպառ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Յոքնախոնջ ջանիւ ի յոլովից քննեալ իմաստնոց. գրիրս զայսոսիկ գեղձմամբ սրտի ի գիւտս ճշմարտին մտաց, ի վերջէ հանդիպեալ իմ միւսոյ իմաստնոյ ի նոյն կրթութիւն, որ ի մէնջ իսկ սորին ըղձիւ ընթացեալ էր մերձ ի սահմանս Ասորոց եւ Կիւղիկեցւոց, Վարդան մականունեցելոյ, որոյ յոլով ժամանակս ի սակս քննութեան դեգերեալ առ դրան մեծի իմաստնոյ Տեառն Ներսեսի Հայոց վերադիտողի, յորմէ մինչ եհասն առ մեզ, վերստին տեղեկացեալ իմ առ ի հաստատութիւն եւ ի լրումն առաջնոյն կրթութեանց, վստահ եղեալ

1 Հմմտ. Թղ. Կր. «Երգեցէք Տեառն երգ նոր երգեցէք ամենայն...», Գ. «չկայ ի յոյն լեզուն եւ յասորին, թարգմանիչքն եղին զնոր»:

հաւանութեամբ նորին եւ այլոց իմաստնոց, ձեռն ի գործ արկի ի մասնաւորս տարացոյց, մեկնութիւն գրոցս երկոցունց մեծին սոփեստոսի Գրիգորի Աստուածաբանի, այնմիկ, որոյ սկիզբն է Ծնունդն Քրիստոսէ, խորին իմաստիւք ասացեալ, ոչ ք յայլ մնաւորինականան Տեառն. եւ միւսոյն եւս Յոյս Ընդէմ զաձանձեալ, իրաւաբանութեամբ ընդդիմութիւն Եւնոմիանոսացն, այլոցն չար աղանդիցն, զորս ըմբերանելով հաստատէ զհաւատոյն բանս մեծաւ աշխատութեամբ յաստուածաբանականս տարրութիւնս, ընդ որ ամենայն զկարգաւորութիւն արարածոցս ցուցանէ ի սահմանս իւրաքանչիւր. իսկ զմարդ միայն յարատահման ընթացս, ընդ որում եւ զկատարութեան բարիս աւարտ ամենայնի ցուցանէ:

Արդ որ ի մէնջս աշխատութիւն, տարացոյց միայն է իմաստնոց, քանզի եւ ոչ մարթ եւ վայելուչ իսկ էր աւելի քան զայս լինել, զի մի առանց աշխատութեան ոք վաստահայի, անուամբ միայն իմաստունս ցուցանիլ սովոր, այլ առընդդէմ դիցէ զբնագրեալսն յիմաստնանալն, եւ ծանիցէ հանդէպ նորին զմեկնութիւնն: Զի թէպէտ եւ տարրորոշեալ է մեր զմեկնութիւնն ի բնաբանէ անդի, սակայն ի բազում տեղիս վերաշրջութիւն ոլորակ բանիցն ի մեկնութեան համարի եդեալ է. եւ է զի սկիզբն ճառից պատճառաց բովանդակ զաւրութիւն ճառեցելոցն ի սուղ բանս ներփակեալ է եւ երկու կէտաւքն որ ի մէջոցի առնցն, իմա զտարորոշումն բնաբանին եւ մեկնութեան. եւ յայսպէս աւգտութեան անմեզադրութիւն մերայս յանդգնութեամբ հայցեմ. եւ ապաւթս ձիգս ինձ աշխատոյս եւ յորոց վարժեցայն: Զի թերեւս ողորմութիւն գտցուք յառատաձիրն պարգեւողէ զթողութիւն սխալանաց եւ զհանդիպումն մեծին իմաստութեան սեղանոյ, զոր այժմ հայելեաւ եւ աւրինակաւ տեսանեմք, իսկ յայնժամ զբովանդակն՝ ըստ Առա-

քելոյ: Որում հաղորդեսցիք եւ դուք, որք դեգերիք յայսմիկ երկս եւ ի միասին վայելեսցուք յոր կայն եւ պահի ամենայն յուսով` ակն ունողաց յանճառելիան բարիս, ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր ի ճշմարիտ ապրեցելոյն կենաց եւ խնդութիւն, որ է աւրհնեալ ընդ Հաւր եւ ամենասուրբ Հոգւոյն, յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Շատ բան կը պարզեն այս տողերը մեզի. բացի մատնանշելէ Դաւթի աղբիւրն, կը նկարագրեն նաեւ ԺԲ դարուն ի Կիլիկեան Հայաստան գրական շարժում մը, որուն պարագլուխներն կը հանդիսանան Վարդան Հաղբատացի եւ իւր աշակերտն Դաւիթ Քօբայրեցի: Մ'ուսումնասիրութիւն Ա. Հայոց գրութիւնք. կը զգացուի դժուարութիւն անոնց նրբիմաստ մաքերն հասկնալու, այս նպատակաւ առաքելութիւն կ'ըլլայ ի Կիլիկիա, ուր աւելի լայն էր ասպարէզն Յունաց անձուկ գրացիութեան մէջ: Վարդանայ գիմումն եղած է ուղղակի "իմաստուն" Շնորհալւոյ, շատ կէտերու մէջ կը լուսաւորուի իրմէ Վարդան. այցելած պիտի ըլլայ ապահովապէս նաեւ Սեւ լեռան մենաստաններն, (ուր նոյն նպատակաւ նոյն դարուն գեղերեցաւ նաեւ Մխիթար Գօշ), եւ այսպէս ակաղձուն հմտութեամբ կը դառնայ ի Հաղբատ (1173էն առաջ): Հաւանականաբար իւր սորվածներն գրաւոր ալ բերաւ ի Հայս, եւ Քօբայրեցին իւր ուսուցչին թէ բերանացի եւ թէ գրաւոր աւանդութեններէն օգտուեցաւ: Վարդանայ ծանօթութիւնն յունարէնի եւ ասորերէնի կրնայ ենթադրուիլ, ի Կիլիկիա առիթ չէր պակսէր առ այս, եւ. ինչպէս

պիտի տեսնենք իր կենսագրութեան մէջ, շատ հաւանական է իր յունարէնի տեղեկութիւնը։ Իրեն միջնորդութեամբ մեկնուելու են Քոբայրեցւոյ գրուածոց մէջ տեսնուած յունարէնի ակնարկութիւնք։ Այս կէտին լուծումն կարեւոր է նաեւ Պատճառաց գրոց քննութեան համար։ Գրիգոր որդի Աբասայ իր երկասիրութեան մէջ բառական ներս առած է Քոբայրեցւոյ գրած բոլոր Պատճառները, բայց զարմանալի կերպով առանց մատնանշելու աղբիւրն, զոր այլուր չի մոռնար նշանակել։ Գրիգորի քով կան նաեւ ի Կիպրիանոս եւ ի Մակաբայեցիս ճառերու պատճառք, որոնք կը պակսէին Թ. 317ի մէջ։ Հոս անպէտ կը համարիմ մանր հետազօտել Քոբայրեցւոյ եւ Պատճառաց գրոց աղերսն. պարագայ մը ուշագրաւ է. Թ. 317ի մէջ Աստուածաբանի ի Պենտակոստէն եւ ի Հոգին սուրբ ճառին պատճառն կրկին քննութեան կ'առնուի. առաջինն կայ ամբողջապէս Պատճառաց գրքին մէջ ալ, բայց ոչ երկրորդը, որ ուղղութիւն մ'է առաջնոյն՝ այսպիսի սկզբնաւորութեամբ. "Տեսութիւն մեկնութեան Գրիգորի Աստուածաբանի ասացեալ ի պենտակոստէն եւ ի Հոգին սուրբ։ Զբովանդակ պատճառսն յաղագս տաւնիս յայլոց պատճառաց ունիս տեղեկանալ յայլմէ գրելոցն. իսկ զոր մեքս նորոգապէս լուաք այս ինչ է...[1]" (Թղ. 94բ—95ա)։ Հատուածիս հե-

---

[1] Քոբայրեցին յառաջագոյն կը գրէր. "Անուանի օրս այս պենտակոստ ըստ յունական ձայնին, եւ ի մերս թարգմանեալ հինգ-տասն, զի պէնդէ (πέντε) հինգ ասի եւ կոստ

ղինակն Քոբայրեցի՞ն է. եւ ե՞րբ մուծուած է այս գրոցս մէջ։ Քոբայրեցւոյ ենթադրել կը դժուարցընէ «յայլմէ գրելոցն» բացատրութիւնն, որ առաջին պատճառին հեղինակն չէր կրնար ըլլալ։ Քանի որ Պատճառաց գրոց հեղինակին անծանօթ է այն, պէտք է ըսել թէ 1217—20էն ետքը մուծուած է։

Քոբայրեցւոյ գործն իւր վերջնական ձեւն առած է 1173էն ետքը, երբ վերադարձաւ Վարդան ի Հաղբատ. առ այս ունինք կռուան մը նաեւ հեղինակէն. որ խօսելով երկրորդ ճառի պատճառի վրայ կը գրէ. «Թաւրեայ իմաստասէր ասաց առ Տէր Ներսէս, թէ առ մեծութեան քաղաքին ով կարէր շրջել...» (թ. 317, թղ. 19բ. եւ թ. 47. թղ. 226բ)։ Թաւրեայ իմաստասէրը առանց տարակուսի Թէորիանէն է, եւ կ'ակնարկուի Շնորհալւոյ հետ բանակցութիւնն յամի 1170, ուր ներկայ էր նաեւ Վարդան[1]։

---

(-κοστος) տասն. այլ եւ յոքթեկոն ասիս անուանի, որ թարգմանի ի մերս ազատաբար,, (թղ. 93 բ)։ Այժմ կը գրուի «Զի թէպէտ ընդդէմ հոգեմարտիցն է, բայց եւ ի տաւնիս խարհուրդ. զի ասաց ի Պենտակոստէն վասն յիսներեակ աւուր տաւնի. եւ ոչ որպէս ոմանք հինգ տասն ասացին զպենտակոստ (πεντηκοστός) զի բառ յունական բարբառոյն պենտայն (πεντη-) յիսուն է եւ կոստ (-κοστος) երեակ, որ է յիսներեակ. առաջին տասնեակն դեկայ (δέκα-) անուանի ի Յունացն. եւ զի՞րդ զնա պենտակոստ ասեն. այլ որպէս էկոստ (εἴκοσι) քսան է եւ տրակոստ (տրիակոս? τριακοστός) երեսներեակ եւ տետրակոստ (? = τετταρακοστός) քառասներեակ. այսպէս պենտակոստ (πεντικοστός) յիսներեակ է,, (թղ. 95ա)։

1 Պալճեան՝ Պատմ. վարդապետութեան ի Հայս. 223։

Պատճառաց գրոց մէջ կան նաեւ Աստուածաբանի միւս — "Յաղթեցայ" եւ "Դաւարկութիւն". կոչուած ճառախմբերու պատճառները, նոյն ոճով, որով յօրինուած էին առաջին երկու խմբերը, նոյնպէս անանուն։ Կը կարծենք թէ ասոնց հեղինակն ալ ինքն Քոբայրեցին է, գրած առանձին հատորով, նման թ. 317ի։

Այսչափ մեր Ձեռագրին նկատմամբ։ Էջմիածնի Մատենադարանին թ. 1695 (կար. 1653) Ձեռագիրն աւելի ընդարձակ պարունակութեամբ է, զոր Տէր Միքէլեան[1] այսպէս կը ցուցակագրէ. "Պատճառ Սահմանացն, պատճառաց գիրք Գր. Աստուածաբանի, պատճառքն Նիւսացւոյ գրենոցն, Դաւթի վարդապետի պատճառ Պահոցն գրոց Բարսղի, պատճառ Եւագրին, դարձեալ պատճառ յԵւագրէն ի բանից վարդապետին Սարկաւագ կոչեցելոյ, պատճառ գրոցն սքանչելոյն Փիլոնի, պատճառք Առ որս բանիւն են պաճուճեալք Գր. Աստուածաբանի, Նորին յղ. հաւատոյ, յղ. Ս. Հոգւոյն"։ Դժբախտաբար շատ վարկպարազի ցուցակագրութիւն մը կը հանուի մեր առջեւ, եւ կարելի չէ հետեւցնել, թէ ճշգիւ ա՞յս կարգաւ կը յաջորդեն Ձեռագրին մէջ, եւ Դաւի՞թն է բոլոր պատճառներու հեղինակը։ Վասն զի Աստուածաբանի ճառից պատճառներն ամբողջապէս կային

---

1 Ամս. Արարատ, Վաղարշապ. 1893, Յուլիս. էջ ֆէ. հմմտ. եւ Կար. Ցուցակ, էջ 184 շատ համառօտ. անդ էջ 40 կը նշանակուին նման հաւաքածոներ թ. 643, 651, 652 ուսկից սակայն կարելի չէ ճշգրիտ գաղափար մը կազմել։

թ. 317ի մէջ, բայց ոչ նոյն կարգաւ. առանց հեղինակի մասին հարկ չկայ խնդիր ընել, կը կարօտին խնդրոյ Նիւսացւոյ, Բարսղի եւն գրոց պատճառները: Մատենադարանիս թ. 47 պատճառաց գիրքը այս անորոշութենէն ալ ելլելու կոչուած կ'ընծայէ. այս մատենին համաձայն քօբայրեցւոյ են.

7. Գրիգոր Նիւսացւոյ ճառից պատճառները: Ցանուանէ կը նշանակուին.

ա. Պատճառ ճառից Ժողովողին, զոր բացայայտեալ է Գրիգոր Նիւսացի... ի Դաւիթ վարդապետէ ասացեալ:

բ. Ցղ. Երգոց երգոց տեսութիւն փաստաբանութեան՝ ի նոյն Դաւթէ ասացեալ:

գ. Պատճառ ըստ կարգի ասացելոցդ Ինն երանութեանն՝ ի նոյն Վարդապետէն Դաւթէ տեսաւորեալ խնդիր:

դ. Սկիզբն հայր մեր որ յերկինս... (անանուն):

ե. Պատճառ վերջին ճառին նոյն Դաւթայ հոգացեալ, որ ասէ. Եկն եւ ի մեզ հոգեւոր խրախճանութիւն:

զ. Սկիզբն եւ պատճառ սակս Կուսութեան զրոց... ի Դաւթէ վարդապետէ հոգացեալ:

է. Սկիզբն եւ պատճառ ըստ կարգի այլոցդ՝ Ցաղագս կազմութեան մարդոյն՝ ասացեալ լիապատար բանիւք (անանուն):

ը. Սկիզբն եւ պատճառ Բնութեան զրոցն (անանուն):

Դաւիթ վարդապետ անշուշտ նման Աստուածաբանի ճառերու՝ Նիւսացւոյ գրութեանց ալ կցած է լուծմունք, իրմէ ըլլալու են ըստ այսմ Էջմիածնի Ձեռագրաց մէջ տեսնուած Լուծմունք, լուսաւորուած նոյնպէս իր Ուսուցչէն՝ Վարդանէն, որուն կ'ընծայուին նմանապէս Նիւսացւոյ գրուածոց Լուծմունք:[1]

8. *Բարսղի Կեսարացւոյ գրութեանց պատճառք:* Մեծին Բարսղի գրութիւնք երեք գիրքի կը բաժնուին ըստ Հնոց, այսպէս ալ են Պատճառաց գրոց մէջ:

*ա. Պահոց գիրք*, որ 32 ճառէ կը բաղկանայ, խօսուած քառասնորդաց պահոց մէջ. գրոցս մէն մի ճառ իր պատճառն ունի Պատճառաց գրոց մէջ, ուր իբրեւ խորագիր կը նշանակուի "Նոյն Դաւթի վարդապետի պատճառ Պահոցն գրոցն ի Բարսղէ կարգեցելոցն՝ ասացեալ ի Հնութիւն վարժողացն". եւ կը պատմուին Համառօտ յառաջաբանէ մ'ետքը առաջին եւ ապա յաջորդաբար միւս ճառերու պատճառները: Քոբայրեցին է ամէնուն ալ հեղինակը. ըստ մեզ հաւանականաբար, ինչպէս եօթներորդ ճառը կը խորագրուի. "Պատճառ Է. ճառին վասն օրինականին հարցմանն առ Տէր՝ նոյն Դաւթայ հոգացեալ". Ինչ ինչ փոփոխութիւններ կրճատումներ եւ յաւելուածներ Արա-

---

1 Ձեռք. թւ. "[illegible]" [illegible] մը կ'ընծայէ "Պատճառ [illegible] Նիւսացւոյ [illegible]" [illegible] հանապէս Դաւթի վերագրելով [illegible] է եւ ոչ թէ հեղինակ Պատճառաց, այլ օրինակող մը պարզապէս:

սու որդւոյ կոչմանէ կրնան ենթադրուիլ. մատ-դրութեան արժանի է վերջին Լր. ճառին տողերն՝ որ Հաւաքչէն կ'երեւան (Թ. 47, Թղ. 316 բ.) "Արար (Բարսեղ) եւ առանձնակի ճառս գլխաւորս վեցերորդ ի Դաւթէ ի սոյն մատենիս, զի մեք այնոքիւք յիմաստութեան վարժեսցուք յամենայն կենսս մեր„, ուր մութ է դժբախտաբար իմաստը։ Այս ճառերուն կը յաջորդէ.

բ. Հարցողաց գիրք. Պատճառաց գրոց մէջ անանուն է "Սկիզբն եւ պատճառ Հարցողաց գրոցն սրբոյն Բարսղի„. բայց թէ Քոբայրեցւոյ ձեռքէն է, վայրկեան մ'իսկ չեմ տարակուսիր. Էջմիածնի Ձեռագիրն կը կրէ յայտնապէս Դաւթի անունն ըստ Շահխաթունեանցի (տես վերը էջ 10)։ Իմէ կ'ենթադրեմ նաեւ

գ. Վեցօրէից մեկնութեան պատճառը, որ նոյնպէս անանուն է Պատճառաց գրոց մէջ, թէեւ չցնեմ որ եւ իցէ կռուան։

Դ. Փիլոնի գրութեանց պատճառը: Նոյն մատենին համաձայն իրեն է.

ա. Փիլոնի այնոցիկ որ ի լինելութեան խնդրոց լուծմանց ասացեալ սկիզբն բան մահամուռ եօթանց գրոցն՝ Դաւթի վարդապետի Քոբերեցւոյ„[1]։ Այս հիման կարելի է իմէ

1 Այս հատուածը, որ բաւական ընդարձակ է, Հ. Աւգերեանի հրատարակած "բան թարգմանչի կամ մեկնչի„, մասն է, զոր դրած է "եղեալ ի սկիզբն գրոց Փիլոնի յղ. "Նախախնամութեան„ (տես Փիլոնի Եբրայեցւոյ ճառք երեք չեւ ի լոյս ընծայեալք, Վենետ. 1822, էջ ե—ժա)։ Ամբողջ կ'երեւայ թէ

համարիլ նաեւ Փիլոնի միւս գրուածոց պատճառներն, որոնք անանուն են Պատճառաց գրոց մէջ, որ շատ հնարաւոր է, վասն զի ըստ Շահխաթունեանցի որոշ կը տեսնուի Դաւթի անունն հետեւեալին վրայ.

բ. Տեսութիւն գրոցն Փիլոնի, որ Տեսական անուանի, այս ինքն "միակեցաց", որ Պատճառաց գրոց մէջ անանուն է[1]։

10. *Պատճառ Սահմանաց գրոց*: Ծանօթ է միայն Պատճառաց գրքէն, ուր կը նշանակուի. "Սկիզբն եւ պատճառ Սահմանաց գրոցն՝ Դաւթի վարդապետի զուգեալ ի տեսութիւն դիւրաւոր գիտ"։

11. *Պատճառք աւագ բարեկենդանին՝ ի Դաւթայ վարդապետէ ի խնդրոյ աշակերտաց իւրոց.* "Յաւուրս նշանաւորի փող հարկանել օրինագրէ", սկզբնաւորութեամբ, ընդ ամէնն "վեց ճառք աղուհացից վեց շաբաթուց կիւրակէից համար, ամփոփեալ ի 62 էջս", կը գրէ Հ. Զարբ. (էջ 781)։ Այս գրուածքը յաջորդին հետ ի միասին թէեւ չէ համարձակած "Հայկական հին դպրութեան պատմութեան"

---

Դաւիթ զայն իբրեւ ներածութիւն մը յօրինած է Փիլոնի գրուածոց սկիզբը, եթէ սակայն ընդօրինակողէն՝ Յովհ. Արզնկացիէն չէ մուծուած հոն. Աւգերեանի հրատարակութեան մէջ ինչ ինչ եւեւտառութիւն եւ յապաւումներ կը տեսնուին։

1 Զարբ. Խբ. Քարայրեցւոյ ընծայեալ է "Պատճառ նախախնամութեան ճրոյն Փիլոնի. Ընդէ՞ր է Աստուած ի ձիրս" սկզբնաւորութեամբ, որ Թ. 47ի մէջ "Փոքր" կ'ընծայուի-թ.դ. 317 բ)։

հեղինակն ընծայել Քօբայրեցւոյ[1], եւ յատուկ տեղ շնորհած է "Գաւրիթ վարդապետի,,, բայց մենք առանց վարանելու կ'ընծայենք Քօբայրեցւոյ, որուն մասնաճիւղն էր պատճառներ յօրինելը։ Ձեռագիրը կը գտնուի անշուշտ ի Ս. Ղազար։

12. Պատճառ նաւակատեաց եկեղեցւոյ, որ զկնի Պենտեկոստէին, ի քսանն օրեայ ամսոյ, զոր Հայաստանեայցս տաւնեն եկեղեցիք՝ ի Դաւթայ շարագրեալ կաւանդս իմաստից. "ի բազմաց զանազանաց եւ զանխուլ միացելոց իրաց խնդրոց,, սկզբնաւորութեամբ (Զայրը. անդ)։

Հիմ չունինք որոշելու թէ իրմէ՞ են Նաեւ Իւագրեայ գրուածոց պատճառք, որոնք անուանուն են Պատճառաց գրոց մէջ եւ Էջմիածնի Թ. 1695 Ձեռագրին մէջ Դաւթի գրուածոց կից են։ Հետաքրքրական կը մնայ միշտ Էջմիածնի Ձեռագիրն, մանաւանդ երբ լսենք Շահխաթունեանցէ, թէ "Դաւթի վարդապետն մատեան ընդ այլ արդեանց ոմանց երեւելի վարդապետաց Հայոց՝ վերակոչի Պատճառաց գիրք,, (վերը էջ 10). ԺԲ — ԺԳ դարուն յիրաւի գտնուեցան ՝երեւելի վարդապետներ՝ Մխիթար Գոշ, Գաւրիթ Քօբայրեցի, Վարդան Հաղբատացի, Պետրոս, Իգնատիոս... բայց ի՞նչ Նշանաւոր երկասիրութիւն թողուց իւրաքանչիւրը։ Մխիթարայ անունն իւր արդիւնքներովը ծանօթ է,

[1] Իսկ էջ ԷԷ-ԻԲ երկուքն ալ Քօբայրեցւոյ անուան տակ յիշուած են։

ծանօթացաւ նաեւ Դաւիթ. ծանօթանանք այժմ Վարդան Վ. Հաղբատացւոյ, բայց անյայտ պիտի մնան Պետրոս եւ Իգնատիոս:

## ՎԱՐԴԱՆ ՎՐԴ. ՀԱՂԲԱՏԱՑԻ

Վարդան, որուն յարակից անունն անծանօթ է, մին էր Հաղբատացի այն անուանի վարդապետներէն, որոնք ծաղկեցան ԺԲ. դարու երկրորդ կիսուն: Թէպէտ թաքուն մնացած է մեզմէ իր գործունէութիւնն, սակայն հանած հռչակն եւ անուանի աշակերտաց սիրուն թիւն գեղեցիկ վկաներ են իր մեծ անուան: Դաւիթ Քօբայրեցին իր աշակերտն էր, եւ անընդարաղութեամբ չէր մեր ընթացքը, երբ Վարդապետին կենսագրութիւնն յերեւան հանելէ յառաջ, փութացինք աշակերտն ծանօթացընել: Արդիւնքը պատճառն պիտի լուսաւորէ:

Վարդան վարդապետի կեանքը սկսած կը համարիմ Հիւսիսային Հայաստան, Հաղբատայ շրջակաները, եւ ի Հաղբատ անցած ԺԲ. դարու երկրորդ քառորդին: Իր ծնողաց անուններն անյայտ են մեզի. ժամանակակից յիշատակագիր մը (յամէ 1195) պահած է միայն իր եղբօր “Գրիգոր վարդապետի„ (Հայապ. Բ. 337) անունն, որ իր եղբօր վիճակակցած է նոյն Հաղբատայ վանքին մէջ:

Կ'երեւայ ի Հաղբատ գեղեցիկ համբաւ հանած է իր իմաստութեամբն, որով իր շուրջն աշակերտած են Դաւիթ Քօբայրեցի եւ Խաչատուր Երէց: Դաւիթ Քօբայրեցի Աս Սրսի

լուծման յիշատակարանին մէջ կը գրէր իր ուսուցչի մասին. «...ի վերջէ հանդիպեալ իմ միւսոյ իմաստնոյ ի նոյն կրթութիւն, որ ի մէնջ իսկ սորին ըղձիւ ընթացեալ էր մերձ ի սահմանս Ասորոց եւ Կիւլիկեցւոց, Վարդան մականուանեցելոյ, որոյ յոլով ժամանակս ի սակս քննութեան դեգերեալ առ դրան մեծի իմաստնոյ Տեառն Ներսեսի Հայոց վերադիտողի, յորմէ մինչ եհաս առ մեզ, վերստին տեղեկացեալ իմ առ ի հաստատութիւն եւ ի լրումն առաջնոցն կրթութեանց, վստահ եղեալ հաւանութեամբ նորին...» (տես վերը էջ 57)։ Այս ճանապարհորդութիւնը կատարուած պիտի ըլլայ 1167—1173 միջոցներն, երբ կաթողիկոսութեան աթոռն կը բազմէր Շնորհալին Ներսէս։ Այս առթիւ հանդիպատես եղաւ Վարդան նաեւ այն միութեան խնդրոց, որոնք Հռոմկլայի եւ Բիւզանդիոնի մէջ այնպէս ջերմապէս կը յուզուէին։ Գեղեցիկ դէպք մ'էր այս իր նպատակին յաջողութեան համար. ի Հռոմկլայ բացի իմաստուն Հայրապետէն ունէր նաեւ Թէորեանէ մը եւ Ասորւոց Յովհաննէս եպիսկոպոսն, որոնք շատ բանի մէջ կրնային լուսաւորել զինքը։ Հաւանականաբար Վարդան իր ճամբորդութեան միջոցին հմտացաւ նաեւ ասորի եւ յոյն լեզուներու. ինքն էր առանց տարակուսի Թէորեանէի հետ բանակցող Վարդան վարդապետը[1], եւ իր միջնորդութեամբ գիտէր Պաւլիթ

---

1 Պալճեան՝ Պատմ. վարդապետութեան ի Հայս.

«Թաւրեայ» իմաստասիրի առ Ներսէս ըսածներն եւ յունարէն ինչ ինչ բացատրութիւնք (տե՛ս վերը էջ 61)։

Այս առթիւ խնդրեց Ներսէս Շնորհալիէն «Բարձրացուցէք» ձայնին պատճառը եւ Մեկնութիւնը, զոր կատարեց Ներսէս[1]։ Բաց աստի, ըստ Հ. Ալիշանի, հարցուց եւ խնդրեց ի Ներսիսէ՝ Գրիգոր Նիւսացւոյ այլ եւ այլ գրոց վրայ տեղեկութիւն, թէ ի՞նչ պատճառի համար գրած էր, եւ թէ ի՞նչ կը նշանակէին քանի մը մութ նախադասութիւնք. Շնորհալին առոր պատասխանն եւ պատճառը գրաւոր տուած է, թէեւ այսօր մեզի հասած չէ. վասն զի «Վարդան իր քովէն ալ բան աւելցնելով՝ տեղեկութիւններ գրեց Նիւսացւոյ գրոց վրայօք, ինչպէս որ Լուծմունք ըսուած հաւաքմանց մէջ կը յիշուի»։ Վարդան խնդրած է Շնորհալիէն նաեւ Գրիգոր Աստուածաբանի «Քրիստոս ծնաւ» ձայնին մեկնութիւնը զոր եւ կատարեց Ներսէս. Վարդան զայն ալ, աւելի ընդարձակելով՝ վերոյիշեալ Նիւսացւոյն բանից մեկնութեան

էջ 223։ Պէտք է գիտել թէ կար համանուն ուրիշ վարդապետ մ՚ալ՝ Վարդան Արքեպ. Լամբրոնի, տե՛ս անդ։

[1] Գրուածքս ամբողջութեամբ ծանօթ չէ ինձ. Մ. Մսերեանց «Ճռաքաղ»ի Գ. տարւոյն (1861/2) յաւելուածին մէջ (էջ 35–40) սկսած էր հրատարակել զայն, որ սակայն, թերթին դադրելովը թերի մնաց։ Մսերեանց էջ 36 կու տար ծանօթութիւնս. «Այս ինչ եւ եթ ի հնոց մատենադարանաց յայտնի է մեզ զառաջիկայ Մեկնութենէս, զի գրեալ է զայն Շնորհալի Հայրապետն ըստ խնդրոյ Վարդանայ ուրումն վարդապետի ծերունւոյ՝ որ ի վանսն Հաղբատայ»։ Հմմտ. եւ Շնորհ. եւ պարագայ իւր. 263։

*նման՝ գրեց Լուծմունք, որ գտնուի հիմայ, թէ եւ հեղինակաց անունն նշանակուած չըլլայ[1] „։ Հ. Ալիշանի այս տողերն մեծարժէք ծանօթութիւն կը բովանդակեն այլուստ սակաւ գծերով յայտնի Վարդանի եւ ընդհանրապէս ԺԲ. դարու երկրորդ կիսուն մեկնողական մատենագրութեան վրայ։ Բայց դժբախտաբար Հ. Ալիշան կը լռէ հոս ալ աղբեր նկատմամբ։ Այս լռութիւնն քիչ մը կը խախտէ մեր հաւատքն եւ կը տարակուսինք, մի՛ գուցէ Հ. Ալիշան հիմնուած ըլլայ հոս Քօբայրեցւոյ վերոյիշեալ խօսքերու վրայ եւ շփոթած Վարդանայ եւ Դաւիթ Քօբայրեցւոյ գրութիւնքը. մանաւանդ որ այս մեկնութիւնքն Ձեռագրաց մէջ անանուն կ՚իյնէ։*

*Թէ նաեւ Սեաւ Լեռան մենաստաններն այցելած է, չունինք մասնաւոր տեղեկութիւն։*

*Շնորհալւոյ մահուընէ վերջն* († 1173) *վերադարձած կ՚երեւայ Հաղբատ, ինչպէս կը յիշէ Դաւիթ Քօբայրեցի, եւ բացայայտ կ՚ըսէ Գրիգոր Տղայ կաթողիկոսն իւր Հիւսիսային վարդապետաց ուղղած թղթին մէջ (տպ. Երուսաղէմ, էջ* 57)՝ *յիշելով Յունաց հետ միութիւն հաստատելու խնդիրը “զոր թէ այլ ումեք առ ի ձէնջ ոչ է գիտելի այդ, ի Վարդանայ չէ անտեղեակ, թէ որքան ի վաղուց հետէ էր սկսեալ, եւ որչափ եւ քանի էր ի նոցանէ առ այս խնդիրք յայտարարութեանց յայտնեալ եւ կատարեալ „։ Վարդան սակայն միութեան հակա-*

[1] *Ալիշան. Շնորհալի եւ պարագայ իւր.* 263—65։

*ուսկողներէն էր, եւ ինքն ալ ստորագրած էր Հաղբատացիներու առ Գր. Տղայ Թղթին. ուսկից առնելով Կիր. Գանձակեցի, ԺԲ. դարու երեւելի վարդապետաց թուին մէջ կը յիշէ*[1] *զինքն ալ* (*էջ* 84)։ *Վարդանայ մասին ուրիշ մանրամասնութիւն յայտնի չէ մեզի։*

*"Այսքան ընտանութիւն ունեցող անձն* (*Վարդան*) *ընդ Շնորհալւոյ, կը գրէ Հ. Ալիշան* (*անդ,* 263—64)*, պէտք է նշանաւոր անձ մ'ըլլայ, պատմչաց ու յիշատակագրաց քանի մը կարճ խօսքերն ալ զայս ցուցընեն, մանաւանդ երբ Հաղբատայ նշանաւոր եւ ուխտի տեղեաց մէկն ալ՝ այս վարդապետիս գերեզմանը կը նշանակեն. որոյ արդարեւ ցանկալի էր ստոյգ վարքը եւ գործքերը գիտնալ, միայն մահուան թուականն ալ հարեւանցի կը նշանակուի իբր* 20 *կամ* 22 *տարի յետ Շնորհալւոյն„։ Այս յիշատակողն Վարդանայ աշակերտն՝ Խաչատուրն է, որ յամի* 1195 *ի Հաղբատ իւր յիշատակարանին մէջ այսպէս կը յայտնէ անոր մեծ արժանիքը՝ աղաչելով յիշել "Զարդիւնակատար սուրբ եւ ամենրջանիկ վարդապետն Վարդան, զաստուածասէր հոգին, ի մանկութենէ մինչեւ յաւագոյթ ի Քրիստոս միացեալ, զհոգւոյն սրբոյ բնակարանն, զլցեալն ամենայն տեսակօք բարութեանց, զզարդարեալն ամենայն առաքինու-*

---

1 *Գանձակեցւոյ խօսքերն հոս անձուկ իմաստով հասկնալու է, վասն զի, ինչպէս պատմագրին խօսքերն կ'ուզեն հասկցնել, Վարդան Լոռւոյ ժողովին ներկայ չէ գտնուած՝ արդէն վախճանած ըլլալով։*

թեամբ, զապաւէնն տնանկաց, զմխրակացուն օտարաց, զսիրողն աղքատաց, զբժիշկն հոգւոց, զհայրն որբոց, զպարծանսն քրիստոնէից, զլուսաւորիչ եկեղեցւոյ, զհովիւն բանաւոր ոչխարաց, զհոգին օրհնեալ, զարժանին Աստուծոյ, զգերազանցեալն քան զգովութիւն, զփոխեալն ի կենաց եւ զհանգուցեալն ի Քրիստոս, եւ զԳրիգոր վարդապետ՝ Նորին Հարազատ»[1]: «Արժանաւո՛ր գովութիւն Շնորհալւոյ բարեկամին», կը բացագանչէ Հ. Ալիշան:

Ըստ այսմ Վարդան վախճանած կ՚ըլլայ 1191—4ի մէջերը, ինչպէս կարելի է հետեւցնել Խաչատրոյ այն տողերէն ալ, ուր կ՚ըսէ թէ ինքը օրինակած է իր գիրքը 1195ին, «զկնի մահուան Վարդանայ վարդապետի» (Հայապ. 336): Իւր գերեզմանն ի Հաղբատ կը նշանակէ ուրիշ ժամանակաւ մերձաւոր գրիչ մ՚ալ (յամի 1207) յընդօրինակելն զմեկնութիւն Բարձրացուցեաց «զոր արարեալ է երից երջանիկ սուրբ կաթողիկոսն Հայոց Ներսէս ի խնդրոյ Վարդանայ վարդապետի, որ ի Հաղբատ կայ եդեալ ի գամբանի. որոց յիշատակն օրհնութեամբ»[2]: Փնտռելով զայս Հաղբատայ արձանագրութեանց մէջ[3] գտայ անուանի վարդապետաց գերեզմանոցին մէջ տապանագիր մը.

---

1 Հայապատում Բ. 337: Շնորհալի եւ պարագայ իւր. 263–64:

2 Շնորհալի եւ պարագայ իւր. 264:

3 Brosset, Description եւն. p. 40:

## ԹՈՒԻՆ ՈՒ ՎԱՐԴԱՆ։

*Հայոց ՈՒ թուականն կը համապատասխանէ Փրկչական 1171ի, որ աչքի զարնող անջրպետով հեռու է ճառելի անձնաւորութեանս մահուան հաւանական թուականէն։ Կարելի չէ՞ արդեօք վրիպակ մ'ենթադրել Բրոսէի հրատարակութեան մէջ։ Դժբախտաբար արձանագրութիւնս Յովհ. Ղրիմեցին միայն տեսած ըլլալով*[1], *դժուար է ճշդել թէ թուականին այս ՈՒ փոխ. ՈԽ ընթերցուածն հաւատարի՞մ է. վասն զի շատ դիւրաւ կրնային շփոթուիլ ՈՒ եւ ՈԽ գրութիւնք։ Եթէ ներելի ըլլայ ՈԽ (1191) ընթեռնուլ, առանց տարակուսի Վարդան վարդապետ Հաղբատացւոյ յարգելի նշխարքն պէտք է ամփոփուած համարիլ հոն*[2]։

[1] Հաղբատայ արձանագրութիւններն շատերը ընդօրինակած են, այսպէս Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, Ա. 58 եւն. Երիցեան Աստուածատուր-Բէկ, Համառօտական տեղագրութիւն Հաղբատայ. ԱՐՐՏ. 1878, էջ 74. Լալայեան Ե., Բորչալուի գաւառ. ԱԶԳ. ՀԱՆԴ. 1901, էջ 409, սակայն ոչ ոք վերստուգած է այս տապանագիրը։

[2] Զինքը կ'ակնարկէ անշուշտ Թովմ. Վանանդեցի իր "Ի ողբացեալ թեղես ողբերգին Հայոց տառապանաց" մէջ (Ճառընտ. Բ. 121—21), երբ կ'երգէ.

Ի սուրբ յուխտն Հաղբատ համեալ,  
Ուր են շիրիմքն հաշակեալ  
Սքանչելի սրանցըն լեալ  
. . . . . . . . . . . . .  
Վարդան մեկնիչն քաջարան,  
Ընդ նոսա եղեալ կայ ի տապան։

Հ. Ալիշան հոս Արեւելցին ակնարկուած կ'ուզէ իմանալ (Յուշք. Վարդանայ. Գ), բայց առանց հիման։

*Հիներէն այսչափ գովուած անձս առանց տարակուսի թողուցած պիտի ըլլայ վերագոյն յիշուածներէն զատ ուրիշ նման երկեր ալ։ Բայց գործ է որոշել Վարդանի անուն կրող անթիւ երկասիրութեանց մէջէն իրենն գրածները։ Դժուարութիւնն կը ծագի յատկապէս այն հանգամանքէն, որ իրմէ ոչ շատ վերջն, մանաւանդ թէ նոյն իսկ իրեն ժամանակ ծաղկեցան համանուն ուրիշ վարդապետներ ալ. Վարդան Այգեկցի, Վարդան Արեւելցի, որ եւ Մեծն[1], Վարդան Բարձրբերդցի։ Ինչպէս Հ. Ալիշան Արեւելցւոյ պատմութեան Յառաջաբանին մէջ (էջ Գ.) կ'ըսէ, իրեն համարուած «Ճառից եւ խրատական բանից ... ընդ երկբայութեամբ է հարազատութիւն»։ Ըստ այսմ թէ նաեւ Արեւելցւոյ մեկնողական գրուածքներէն ինչ ինչ ասոր ընծայելու է, ըստ իս աներկբայ է։*

*Հայկազնեան բառագրոց հեղինակք յառաջաբանին մէջ կը յիշատակեն, թէ «կան խրատք ռամկական ոճով Վարդանայ ուրումն ծերագունի յաւուրս Շնորհալւոյ, ի թուին Հայոց ՈԳ» (1154)։ Այս անձս եթէ չէ Այգեկցին, շատ հաւանականաբար Հաղբատացին է։*

---

1 Շատ նման եղած են երկու Վարդաններուս, Արեւելցւոյ եւ Հաղբատացւոյ, մանաւանդ նաեւ Այգեկցւոյ կենաց պարագայք եւ գրեթէ նոյն շրջանին մէջ։ Երկուքն ալ ապրած են Հաղբատ եւ Կիլիկիա, համանուն առաջնորդներու օրով։ Հմմտ. Այգեկցւոյ մասին Հ. Յ. Տաշեան, Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ հայագէտ Ն. Մառէ. Վիեննա 1900։

Երեւելցւոյ կ'ընծայուի Դանիէլի գրոց Մեկնութիւնն (Հրտ. Վ. Գ. 1825—26), որ հետեւեալ պարզ խորագիրս կը կրէ. “Արգիւնաւոր եւ սուրբ վարդապետին Վարդանայ սակաւ ինչ վաստակ ի սուրբն Դանիէլ„։ Հ. Ալիշան եւ այլք հոս Արեւելցին կը նկատեն մեկնիչ։ Ընթեռնլով ուշադիր Նախաբանն, կը տեսնուի թէ Վարդան յորդորուած է մեկնութեանս ի խնդրոյ “Հոգեւոր սուրբ եւ մաքուր եղբարց, ... որոց մի էր եւ եղբայրն մեր Գրիգոր վարդապետն եւ այլք„։ Արեւելցին Գրիգոր անուն եղբայր ունէ՞ր։ Այս չլուծուած հարց է տակաւին։ Բայց գիտենք որ համանուն հարազատ մ'ունէր Վարդան Հաղբատացին։ Այս պարագան կը յօժարեցնէ զմեզ հեղինակ նկատել հոս զՀաղբատացին։ Վարդան գրած է զայս հաւանականաբար Կիլիկիա, ինչպէս կարելի է հետեւցնել տողերէս. “Հոգեւոր սուրբ եւ մաքուր եղբարք եւ որդեակք յօժարեցին զհեռաւորութիւնս մեր՝ մերձ տանել մերձաւորաց հոգւոյն„։ Պէտք է ըսել սակայն, թէ հոս “եղբայր„ ընդհանուր իմաստով ալ կրնայ առնուիլ, իբրեւ “միաբանակից„։

Վարդան Արեւելցի Ծննդոց Մեկնութեան մէջ կը գործածէ ի միջի այլոց նաեւ “Դաւիթ„, “Վարդան„ վարդապետաց գրութիւնքը եւ յանուանէ կոչումներ կ'ընէ (Հմմտ. Ցուց. 593), ուր Հաղբատացին ակնարկուի թերեւս։

Դժբախտաբար այլ եւս չ'երկարիր մեր ծանօթութեանց շարքը Վարդանայ մասին, եւ ստիպուած ենք իր մեծահռչակ գործունէու-

*թիւնն այլոց վաստակներուն մէջ նկատել։ Ժամանակէն պէտք է յուսալ նորագոյն մանրամասնութիւնքը։ Սակայն մատենագրութեան պատմութեան եւ յատկապէս Հայ մեկնողական գրականութեան մէջ, որ այնպէս փթթեցաւ ԺԲ—ԺԳ. դարուց մէջ ի Կիլիկիա եւ ի Մեծ Հայս, հարկ է շնորհել Վարդանայ այսուհետեւ բարձր դիրք մը եւ ճոխութիւն, հակառակ ցայժմ կրած մոռացութեան։ Կարեւոր համարեցանք երկու անձնաւորութեանցս՝ Դաւթի եւ Վարդանայ յայտնութիւնն Պատճառաց գրոց քննութեան ներածութեանս մէջ՝ այնու մանաւանդ, որ կարելի չէր առանց անոնց մօտենալ* Նուրբ *գրեանց պատճառներու ինքնակաց գոյութիւնը։ Նշանակալից եղած է ըստ այսմ Վարդանայ եւ յատկապէս Դաւթի հեղինակութիւնը Գրիգորի վրայ։ Բայց միշտ բարձր է եւ գլուատեաց արժանի Գրիգորի մասնակցութիւնն, ըստ որում յղացած է ցիր եւ ցան վայրավատին հատուածներէն մէկ ամբողջութիւն կազմելու ազնիւ գաղափարը։*

---

[*Այս տողերը կը գրէինք* 1907—1908 *տարիներուն. այնուհետեւ մինչեւ այսօր ինչ ինչ կէտերու մասին հասան մեր ծանօթութեան նոր տեղեկութիւններ, որոնք կը լրացնեն մեր տեսութիւններն եւ կը ճշդեն։ Աւելորդ չենք համարիր հոս ամփոփել այս տեղեկութիւնները Յաւելուածի մը մէջ, ի լուսաւորութիւն նախորդ էջերու։*

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ *Հեղինակին*, 1922 *փետրուար*]։

---

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Էջ 8. Գրիգորի ուրիշ մէկ արձանագրութիւնը կը գտնուի Աշաջուր գիւղի Մակարայ վանքին մէջ, ուր կ՚ըսուի[1].

"Ես Գրիգոր Վարդապետ որդի Արասա իշխանի մեծ յուսով միաբանեցա Աստուածածնիս եւ ետու պատարագ ||| գրեանք եւ խաչ մասամբ, յառաջնորդութեան Հայր Դաւթի եւ միաբանաց. եւ սոքա ետուն զտաւնի Ոսկեանց զամէն եկեղեցիս ինձ պատարագեալ զՔրիստոս. ով խափանէ կամ զխաչս կամ զգրեանս հանել ջանա, պատժեսցի յԱստուծոյ. ՈՁԶ (1236):"

Թուականը՝ ՈՁԶ Ջալալեանց[2] կը կարդայ ՈԿԶ (1217) որ ինձի աւելի ճիշդ կ՚երեւայ եւ համաձայն Գրիգորի միւս արձանագրութիւններու թուականներուն:

Էջ 13. Պատճառաց գրքի ուրիշ մէկ օրինակի կը հանդիպինք Սեբաստիոյ Ս. Նշանի վանուց Թ. 187 ձեռագրին մէջ, ուր էջ 41—393 կը գրաւեն "Գիրք պատճառաց Նուրբ եւ լայն գրոց" (ըստ ցուցակագրութեան Թ. եպ.

---

1 (Քաջբերունի)՝ Ճանապարհորդական յիշատակարան. Արձագանք 1888, էջ 132:

2 Հմմտ. Ջալալեանց՝ Ճանապարհորդութիւն:

գաշակեանի)։ Ձեռագիրն՝ նոտրագիր, թուական չունի։

Էջ 13. Հ. Գ. Զարբանալեան, Պատմութիւն Հայկ. հին դպրութեան. Բ. տպ., էջ 779 խօսելով Գրիգոր Անաւարզեցւոյ գրութեանց վրայ՝ անոնց շարքին մէջ կը թուէ նաեւ “Պատճառ լայն եւ նուրբ գրեանց, առեալ ի հարցն սրբոց եւ ի վարդապետաց, եւ ի մի հաւաքեալ եւ հոգացեալ մեծ րաբանապետին Գրիգորի որդւոյ Աբասայ։ Քրիստոս Աստուած Մեսիայ եւ Անունէն շնորհաւոր արասցէ զսայ վարդապետին խաչատրոյ„։

Այսպէս ըստ Էջմիածնի թ. 1608 ձեռագրին։ Գրիգոր Անաւարզեցի հոս ի հարկէ նկատի չի կրնար առնուիլ։

Էջ 46[1]. Խաչատուր երիցու յիշատակարանն հմմտ. նաեւ Մատենադարան, էջ 448։

Էջ 46. Հաւանօրէն խնքն է նաեւ հետեւեալ յիշատակարանին[1] մէջ յիշուած Դաւիթը։

“Ի յոլովից եղեալ զանխուլ այս տառ Մեկնութեանս Յովհաննու աւետարանչին։ Սակս որոյ մերոյին սրբազան վարդապետին Դաւթայ խնդրեալ զսա յորժամ գնաց

---

1 Մատենադարան, էջ 303, կը գտնուի Անդրէաս Կրետացւոյ Յովհաննու յայտնութեան Մեկնութեան մէջ, կից Ն. Լամբրոնացւոյ Յիշատակարանին, որ թարգմանած է զայն 1179ին։ Ձեռագիրն հին ընտիր “բոլորգրով„ է, հաւանօրէն “իբր ԺԲ դարէն„, իմա՛ ճշդագոյնս ԺԳ դար։

*առ տէր Գրիգոր կաթուղիկոսն Հայոց*[1]*։ Եւ զառեալն աւրինակ ի նմանէ տայ պարգեւ Տեառն Գրիգորիսի Հաղբատայ առաջնորդն*[2]*։ Իսկ ես նուաստ ոմն աշակերտ նորին, գրեցի իմովս անարհեստ գծիւ զվատթարահիւթս աւրինակ. սակս մնալոյ առ տեառն իմում նիւթ բանին ի պէտս այլոց աւգտի կամ գաղափարի։»*

*Այս յիշատակարանը հետաքրքրական է այնու, որ կը յիշատակէ Դաւթի մէկ ուղեւորութիւնն ի Կիլիկիա, որ ուրիշ կողմանէ անծանօթ է։ Այն պատահած ըլլալու է հաւանօրէն* 1194—1203 *շրջանին։*

*Էջ* 48*. Արիստակէս Տէվկանց, Հայերգ, էջ ժ. թուելով հայ տաղասաց-գանձասացները, անոնց շարքին մէջ կը յիշէ նաեւ «Դաւիթ Վ. Քոբայրեցի»։ Ինծի անծանօթ է յականէ յանուանէ Քոբայրեցի տաղասաց-գանձասաց մը։ Հանդիպած եմ ԺԴ դարու Գանձարանաց մէջ Դաւիթ վարդապետի մը, որ գրած է գանձ ամենայն սրբոց. «Դաւանեցէք որդիք օրինաց զՈրդին միածին» սկզբնաւորութեամբ. բայց թէ Քոբայրեցի՞ն է անիկա, չեմ կրնար հաստատել։*

*Էջ* 49*, ծան.* 2*. Քոբայրեցւոյ Յոբայ մեկնութեան մասին կը գրէ Հ. Ք. Չրաքեան*[3]*. «Մանր քննելով Քոբայրեցւոյ անուամբ մեր*

---

1 *Հաւանօրէն Գրիգոր Ապիրատ* (1194–1203)։

2 *Կը յիշուի* 1204*ին։*

3 *Իսիքիոսի Երիցու Երուսաղէմացւոյ Մեկնութիւն Յոբայ, Վենետիկ* 1913*, էջ ԼԸ–Խ։*

առջեւ գտնուած կրճատուած մեկնութիւնը, կը համարինք գտած ըլլալ անոր մէջ Իսիքիոսի մեկնութեան շարունակութիւնը, հետեւաբար ոչ թէ Դաւթի, այլ Երուսաղէմացի երիցու գրչէն ելած. եւ այս մեր կարծիքը կը յուսանք ստուգուի, երբ օր մը փոխանակ համառօտ մեկնութեան եւ հատուածներու՝ ամբողջական մեկնութիւնը երեւան գայ»։ «Արդ... Վանական իր առջեւ ունեցած եւ համառօտած է (Իսիքիոսի) ամբողջ մեկնութիւնը. սակայն Իերորդ գլխէն վերջը փոխանակ Իսիքիոսի՝ Դաւթի անունով։ Դաւիթ Քոբայրեցին առանձին մեկնութիւն գրած չէ»։ Հմմտ. եւ անդ, էջ 284—290 ուր ամփոփուած են Վանականի քով պահուած Քոբայրեցւոյ հատուածները։

Էջ 50. «Վասն մեկնչաց աստուածային գրոց» կոչուած հին մեկնիչներու ցուցակին մէջ ալ կը յիշուի Դաւթի Եսայեայ մեկնութիւնը. «Զեսային՝ Դաւիթ քահանայն» մեկնեաց. Հմմտ. Թօփճեան՝ Ցուցակ հայերէն Ձեռագրաց Դադեան Խաչիկ վարդապետի, էջ 91։

Էջ 52, ծան. 1. Մխիթար վարդապետ մ՚ալ կը յիշուի 1214ին ի Հաւուց թառ. «Եղիայ վրդ., Մխիթար վրդ.» (Յիշատակարան Իգնատիոս գրչի՝ Նկարազարդ Աւետարանի մը վերջը. Արարատ, էջ 356)։ Զինքը կը համարի թէութեամբ Հ. Ալիշան խնդրողն ի Դաւթայ (անդ)։

Էջ 67. Գիւտ քհ. Աղանեան Հաղբատի

այրին մէջ գտած ձեռագիր հատակոտորները նկարագրելով[1] կը գրէ.

"Այրից ստացուած գրչագիրներից մէկը գրքի մի տետր է, 16 երես, խոշոր բոլորգիր, բամբակէ հնագոյն թղթի վերայ եւ վարի ու աջ կողմի մասերը փթած ու մաշուած խոնաւութիւնից, գրուածն էլ հազիւ ընթեռնլի։ Ընշուշտ ԺԳ. կամ ԺԴ. դարու գործ. գլխա վերնագիրն է.

*Դաւթի Փիլիսոփայի Ներբողեան ի սուրբ խաչն Քրիստոսի ասացեալ եւ զպատճառն առընթեր եղեալ Դաւթի քահանայի։*
"Ցոլովս եւ զանազանս գտաք գրեալ պատճառ ներբողինիս անհաւաստիս, եթէ ուր եւ էր ազգաւ եւ յորմէ հարկաւորեալ գրեաց մեծիմաստն Դաւիթ փիլիսոփայ զ'ի սմա... յԱթենս... (անընթեռնլի)։

Աղանեան ի մէջ կը բերէ այսպէս Ա—Դ երեսներու ընթերցումը, էջ Դ կ'ըսուի ի մէջ այլոց.

"*Բայց վարդապետն Վարդան այսպէս զրէ թէ.* Զի՞ պիտոյ է մեզ ի բազում ծուփս եւ ի խնդիրս անկանել, գտի, ասէ, ի հին աւրինակս թարգմանչացն, թէ էր սա (Դաւիթ) աշակերտ մեծին Մովսիսի...„

Այս յիշատակուած Վարդան անտարակոյս Վարդան Հաղբատացին է, ուստի եւ հոս

---

1 Լումայ, 1900, Ա. էջ 252–253։

*աղբիւրն Քօբայրեցւոյ, որուն կը համարինք նաեւ այս հատուածը։*

*Դաւիթ Քօբայրեցւոյ գրութեանց վրայ կու գայ կ՚աւելնայ նաեւ՝*

*Որքանութիւն թուոցն նահապետացն եւ առաջնորդացն Իսրայելի յԱբրահամէ մինչեւ ի վերջին գերութիւնն Երուսաղէմի. ժամանակ ունողութեան նոցա. համառօտիւք ի Դաւթայ վարդապետէ Քօբայրեցի կոչեցելոյ:* «Աբրահամ լեալ հարիւրամենից ծնանի զԻսահակ ի Սառայէ կնոջէ իւրմէ յիննըսունամենէ... (վերջ) որում ընդ Հաւր իւրում բարերարի եւ սուրբ Հոգւոյն ճշմարտի վայելէ փառք իշխանութիւն եւ պատիւ...»:

Այս գրուածքը պահպանուած է Սեբաստիոյ Ս. Նշանի վանուց հայերէն ձեռագիրներու մէջ, թ. 221, էջ 510—525, որ ընտիր գրչագիր մ՚է, գրուած հաւանօրէն ԺԴ դարու սկիզբը ի Հաւուց թառ, բովանդակութեամբ տեսակ մը խմբագիր մեկնութիւն մ՚է հին եւ նոր կտակարաններու ինչ ինչ տեղեաց ծաղկաքաղ հաւաքուած հին եւ նոր, հայ եւ օտար հեղինակներու գրուածքներէն (հմմտ. թ. եպ. Գուշակեանի Ցուցակը):

Էջ 70. Ներսէս Շնորհալւոյ Բարձրացուցէքի մեկնութիւնն ունիմ այժմ մեր Մատենադարանի մէջ, թ. 969, թղ. 157ա—244ա. ի կատարածին կ՚ըսուի. «Գրեցաւ պատճառ եւ Մեկնութիւն Բարձրացուցէքիս զոր արարեալ է երից երանեալ կաթողիկոսն Հայոց

*տեառն Ներսէսի ի խնդրոյ Վարդան վարդապետի որ կայ ի Հաղբատ ի գամբանի. ի թուիս Հայկազեանս տումարի* ՉԿ (1311) *ձեռամբ Կարապետ աբեղայի„։ Թուականը հոս ընդօրինակողէն փոխուած է, որ Վենետիկի օրինակին մէջ* 1207 *է (Հմմտ., էջ* 73)։

*Էջ* 76. *Դանիէլի Մեկնութեան հեղինակը ստուգիւ Վարդան Արեւելցին է. Համեմատէ այս մասին Հ. Հ. Ոսկեան՝* Հանդէս Ամսօրեայ 1921, *էջ* 465. *ուստի աւելորդ է այս մասին կասկած։ Վարդան Հաղբատացւոյ ուրիշ մէկ գրութեան մասին ակնարկութիւն կ'ընէր Դաւիթ Քահանայ. տես վերը, էջ* 82, *որ ըլլալու է Դաւիթ Անյաղթի վերագրուած “Բարձրացուցէք„ Ներբողին պատճառը, զատ Շնորհալւոյ գրութենէն։*

---

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Ս. ԿԻՊՐԻԱՆՈՍԻ ԿԱՐՔԵԴՈՆԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Կարքեդոնի համբաւաւոր եպիսկոպոսի՝ Կիպրիանոսի վկայաբանութեան ուսումնասիրութեան համար շատ յարգի խմբագրութիւն մը պահպանուած է հայ մատենագրութեան մէջ, որուն սկզբնագիրն, ծանօթ Գրիգոր Աստուածաբանի 379ին, կորսուած է այժմ։ Խմբագրութեանս մասին թէեւ, դեռ 1813ին, ակնարկութիւն ըրած էր Հ. Աւգերեան[1], բայց առանց մասնաւոր վերլուծման. եւ բնագիրն մինչեւ այսօր մնացած է ձեռագիրներու մէջ՝ անմատչելի սրբագիր բանասէրներու։ Իր մեծ հնութեամբը սակայն, կը կարծենք թէ շատ հետաքրքրական աղբիւր մը պիտի նկատուի այն Եւրոպայի գիտնոց՝ մանաւանդ ներկայիս, երբ առանձին կերպով հետաքրքրուած են անոնք Կարքեդոնի մեծ վկային վկայաբանութեան հարցով։

[1] Հմմտ. Հ. Մ. Աւգերեան, Լիակատար վարք եւ վկայաբանութիւն սրբոց. Հատոր Դ. Վենետիկ 1813, էջ 68–105։

Մասնաւորապէս կը վիճուի այն մասին, թէ ի՞նչ աղերս ունին իրարու հետ Կարքեդոնի եւ Անտիոքի համանուն եպիսկոպոսներու վկայաբանութիւնք եւ թէ Գրիգոր Նազիանզացի, որ իւր 379ին ի պատիւ Կարքեդոնացւոյն արտասանած ներբողին մէջ երկու համանուն եպիսկոպոսներու վկայաբանութիւնները ի մի ձուլած կը ներկայացնէ, ի՞նչ գրաւոր աղբիւրներու վրայ յեցած է։

Պիտի չուզեմ այս տեղ միջամուխ ըլլալ այս շատ ծեծուած խնդիրներու մէջ[1], որոնք կրնան չհետաքրքրել մեր ընթերցողները. պիտի բաւականանամ միայն ամփոփել ընդհանուր գծերու մէջ Անտիոքացւոյն զրուցախառն վկայաբանութիւնը, որուն հետքերն կը նկատուին նաեւ հայ գրականութեան մէջ, եւ առընթեր տալ Գրիգոր Նազիանզացւոյ ծանօթ Կիպրիանոսի կենաց ուրուագիծը, որ առաւել չափով կապ ունի մեր ներկայացուցած վկայաբանութեան հետ։

Բայց ծանօթանանք նախ Կարքեդոնի մեծ վկայ եւ հոյակապ մատենագիր պատմական Կիպրիանոսի հետ։

---

[1] Առանց հիները յիշելու՝ կը նշանակենք հոս նորագոյն քննութիւններէն՝ Th. Zahn, Cyprian von Antiochien und die deutsche Faustsage, Erlangen, 1882. – Th. Sinko, De Cypriano martyre a Gregorio Nazianzeno laudato. Cracoviae, 1916. – R. Reitzenstein, Cyprian der Magier, ի թերթին Nachrichten von der Königl. Gesellschaft zu Göttingen, 1917, p. 38–79. – Hippolyte Delehaye, Cyprian d'Antioche et Cyprian de Carthage, ի թերթին Analecta Bollandiana, 39 (1921), p. 314–332.

## 1.

Կեկիլիոս Կիպրիանոս, որ նաեւ Թասկիոս կ՚անուանուի, ծնած է Ափրիկէ (ըստ Ցերոնիմեայ)։ Իր ծնողքը, որոնց մասին հաւաստի բան մը չենք գիտեր, հաւանօրէն լաւ կրթութիւն մը տուին իրեն, որովհետեւ կրցաւ ապա հռետորութիւնն իր գործունէութեան ասպարէզ ընտրել։ Կիպրիանոս ծնաւ հեթանոսութեան մէջ. եւ իր կեանքն ալ չմնաց անվթար հեթանոսութեան ախտերէն (հմմտ. իր Թուղթն առ Դոնատոս, գլ. Դ)։ Վերջէն դարձաւ քրիստոնեայ, յատկապէս Կեկիլիանոս անուն Կարքեդոնացի քահանայի մը յորդորանքով (հմմտ. Պոնտիոս՝ Վարք, գլ. Դ)։ Իբրեւ քրիստոնեայ ամենայն լրջութեամբ հետեւեցաւ նոր կենաց, շուտով քահանայացաւ, եւ անկէ ոչ շատ վերջը (248/9ին) ընտրուեցաւ Կարքեդոնի եպիսկոպոս։ Իր ընտրութիւնն ոչ առանց կռուոյ ի գլուխ ելաւ. կղերին մէկ մասը կ՚ընդդիմանար. բայց ժողովուրդն բուռն կերպով պահանջեց իր ընտրութիւնը։

Կիպրիանոս լաւ գործունէութեան մը սկիզբ ըրաւ. բայց խափանուեցաւ քրիստոնէութեան դէմ յարուցուած հալածանքին պատճառաւ, որ Դեկոսի գահ բարձրանալէն քանի մ՚ամիս յետոյ ծագեցաւ։ Կիպրիանոս խոհեմութիւն համարեցաւ փախչիլ եւ 250ի սկիզբէն մինչեւ 251 Ապրիլ թագստեան մէջ ապրեցաւ։ Ասկէ անդադար յարաբերութեան մէջ էր իր

ժողովրդեան հետ, զորոնք կը յորդորէր հաստատուն մնալ հաւատքի մէջ։ Այս հալածանքներու միջոցին շատ քրիստոնեաներ ինկած էին իրենց հաւատքէն. այժմ խնդիր ծագեցաւ, թէ ինչպէս պէտք է կրկին եկեղեցւոյ գիրկն ընդունիլ այս անկեալները (lapsi)։ Մեծ յուզում յառաջ եկաւ Կարքեդոնի եկեղեցւոյն մէջ. ոչ միայն Կարքեդոն ալէկոծ էր, այլ եւ Նովատեան հերձուածով բովանդակ եկեղեցին ծփեցաւ։ 254—257 Հռոմայ աթոռին վրայ կը նստէր Ստեփանոս քահանայապետ. ասոր հետ Կիպրիանոս սաստիկ պայքար մ'ունեցաւ հերձուածողներու մկրտութեան մասին. երբ Կիպրիանոս կը մերժէր անոնց մկրտութիւնն իբր անվաւեր, Ստեփանոս վաւերական կը հռչակէր զայն։

257ին քրիստոնէից դէմ նոր հալածանք սկսաւ Վաղերիանոս կայսեր կողմանէ։ Կիպրիանոս Օգոստոս 30ին Պատերնոս փոխհիւպատի առջեւ պատասխանատուութեան կանչուեցաւ. եւ որովհետեւ ազատադէմ իւր քրիստոնէութիւնն խոստովանեցաւ, Կուրուբիս քաղաքն աքսորուեցաւ։ Նոյն տարին Պատերնոսի յաջորդեց Գաղերիոս Մաքսիմոս, որ կասկածելով թէ Կիպրիանոս պիտի փախչի, ետ կանչեց. իբր բնակավայր նշանակուեցաւ իրեն իւր անդաստանը։ 258 Սեպտեմբեր 13ին բանտ դրուեցաւ Կիպրիանոս. եւ յաջորդ օրը հանուեցաւ պատասխանատուութեան, ուր մահուան դատավճիռն ընդունեցաւ եւ անմիջապէս գլխատուեցաւ։

*Այս կենսագրական գծերը ծանօթ են մեզի Կիպրիանոսի ինքնագիր թղթերէն, Գործք փոխհիւպատոսականք* (acta proconsularia) *կոչուած գրութենէն եւ այն Վարք եւ վկայաբանութիւն* (vita et passio) *ըսուած գրուածքէն. որ կը վերագրուի Պոնտիոս սարկաւագի։ Որչափ ալ մանրապատում կ'աւանդուի ասոնց մէջ Կիպրիանոսի կեանքն իբրեւ եպիսկոպոս եւ մատենագիր եւ վկայ, բայց աղօտ կը մնայ մեզի համար անոր առաջին կեանքը, ուր տակաւին իբրեւ հեթանոս կ'ապրէր. եւ այս առիթ տուած է յետնոց՝ յերիւրելու կերպ կերպ կցկցանքներ, ուր Կիպրիանոս մերթ կախարդասար մը եւ մերթ սիրահար մը յերեւան կու գայ։*

## 2.

*Այս կցկցանքները շատ հին են սակայն, թերեւս յօրինուած նոյն իսկ Կալքեդոնի արուարձաններու մէջ։ Մեր վկայագիրը կը ճանչնայ զանոնք արդէն Դ. դարու կէսերը, եթէ ոչ աւելի յառաջ, երբ կը յիշատակէ թէ «բազումք եւ այլ բանս բաղումս վասն յառաջկենացն նորա» գրեցին, որոնցմով կ'ակնարկէ առանց տարակուսի այն Դարձն եւ Խոստովանութիւնն իրենց նախնական ձեւի մէջ, որոնք հաւանօրէն ծանօթ եղած են նաեւ Գրիգոր Աստուածաբանի*[1]*։ Ցամենայն դէպս բոլորովին*

---

1 *Հմմտ. իր տողերը.* ὁ δὲ καὶ μακρῷ λόγῳ στη-

*տարբեր կերպարանք ունեցած ըլլալու են այն “բանք բազումք„ Կարքեդոնի եպիսկոպոսի մասին, ուր խնդիրք առաւելապէս Կիպրիանոսի եւ Յուստինեայ շուրջն կը յածէին անշուշտ, յէականս այն ձեւի մէջ, ինչպէս ամփոփուած է վկայագիրն իւր վկայաբանութեան մէջ, քան այն զրուցախառն երեքմասնեայ գրութիւնն, պահուած լատին, յոյն, նաեւ հայ վկայաբանութեանց մէջ, ուր Կիպրիանոսի Դարձն* (conversio), *Խոստովանութիւնն* (confessio) *եւ Վկայութիւնն* (passio) *կը նկարագրուի այնպիսի անյարիր գծերով, որ Կարքեդոնի եպիսկոպոսի անձնաւորութիւնն կ'անհետանայ աչքէ, եւ Անտիոքի համանուն եպիսկոպոս մը կը փոխանակէ զինքը։ Ահա թէ ինչպէս։*

*Դարձի մէջ պատմութեան թելն այսպէս սկիզբ կ'առնու. Անտիոք քաղաքը Յուստա հեթանոս կոյս մը, որուն հայրն կը կոչուէր Եդեսիոս եւ մայրն՝ Կղեդոնիա, լսելով Պրայիլէոս սարկաւագի քարոզութիւնն, կը գրաւուի քրիստոնէական ճշմարտութենէն. ինքն եւ ծնողքը կը մկրտուին։ Յուստա կը յաճախէ եկեղեցի.*

---

*λιτεύων τὴν προτέραν ἑαυτοῦ κακίαν, ἵνα καὶ τοῦτο θεῷ καρποφορήσῃ ἐξαμόρευσιν* = “Իսկ սա եւ երկայնագոյն բանիւք արձանագրուցանէ զառաջին իւր զչարութիւնն, զի եւ զայս Աստուծոյ պտղաբերեսցէ խոստովանութեամբ„ ըստ հին թարգմանութեան։ Delehaye հոս ակնարկուած կը տեսնէ խոստովանութիւնը. բայց Աստուածաբան կրնայ նաեւ մատնանիշ ըրած ըլլալ վկայաբանութեանս մէջ ամփոփուած կարճ խոստովանութիւնը, ինչպէս ինձի աւելի հաւանական կ'երեւայ։

հեթանոս մեծատուն մը՝ Ագլայիդաս կը տեսնէ զինքը եւ կը սիրահարուի։ Իր բոլոր հրապոյրներն կը մերժէ կոյսը. Ագլայիդաս կը դիմէ Կիպրիանոս համբաւաւոր կախարդին, որ կը խոստանայ յանձնել իրեն կոյսը։ Կիպրիանոս կը սկսի իւր կախարդութիւնները. երիցս կ'արձակէ կոյսին վրայ դեւեր, որոնք սակայն կը մերժուին կոյսին ջերմ աղօթքներով եւ խաչի նշանով։ Կիպրիանոս այս անգամ կ'առաքէ դեւերու գլխաւորն, որ կը խոստանայ իրեն 6 օրէն ձեռք բերել զՅուստա։ Բայց կոյսն նաեւ այս անգամ ամօթահար կ'ընէ դեւը տեառնագրութեամբ։ Կը լուսաւորուի Կիպրիանոս. կ'իմանայ դեւերու անզօրութիւնը. կը հրաժարի անոնցմէ, կը դիմէ Անթիմոս եպիսկոպոսին, կ'այրէ իւր կախարդութեան գրքերը, կը մկրտուի, քահանայ կը ձեռնադրուի։ Անթիմոս մահուընէն քիչ յառաջ աթոռին յաջորդ կը կարգէ զինքը։ Կիպրիանոս այնուհետեւ զՅուստա սարկաւագուհի կը ձեռնադրէ Յուստինէ անուամբ եւ կուսաստանի մը աբբասուհի կը նշանակէ։

Խոստովանութեան մէջ Կիպրիանոս ինքն է որ կը պատմէ իւր կեանքը. ինքը ի մանկութենէ նուիրուած էր Ապողոնի. եօթը տարեկան հասակին կը ծանօթանայ Միհրի եւ Դեմետրի խորհուրդներուն եւ Աթէնքի մէջ քուրմ կը կարգուի. կ'այցելէ Ողիմպոս, Արգոս, Էլիս, Լակեդեմոնիա եւ Մեմփիս. կ'երթայ Քաղդէաստան, ուր Յուստինէ կոյսն կը պատահի իրեն եւ

կը յայտնէ թէ իր բոլոր կախարդութիւններն դիւական խաբէութիւններ են։ Քաղդէաստանէն կու գայ Անտիոք. Հոս մեծ հռչակ կը հանէ իբրեւ կախարդասար։ Օր մը կու գայ իրեն Ագլայիդաս եւ կը յայտնէ իր սէրն նկատմամբ Յուստինէի։ Կիպրիանոս բոլոր դեւերուն լէգէոնն շարժման մէջ կը դնէ. բայց ի զուր. Կոյսն անզօր կ'ընէ անոնց ոյժը։ Ոչ միայն Ագլայիդաս, այլ եւ ես զարնուած էի Յուստինէին, կ'ըսէ Կիպրիանոս։ Հազար ու մէկ փորձերէ ետքը դեւերն կը խոստովանին իրենց տկարութիւնը։ Կիպրիանոս դարձի կու գայ. Եւսեբիոս, իր երբեմնի բարեկամն, կ'առաջնորդէ անոր քայլերն եկեղեցի. Հոն հրապարակաւ կ'այրէ իր գրքերը եւ կը դիմէ եպիսկոպոսին։ Յուստինէ կը խուզէ իր մազերն եւ ինչքերն կը բաշխէ աղքատներուն։ Ագլայիդաս կը դառնայ քրիստոնեայ, Եւսեբիոս քահանայ կը ձեռնադրուի. իսկ Կիպրիանոս մկրտութիւնն առնլէ ետքը կը սկսի քարոզել զՔրիստոս։

Վկայաբանութիւնը. Կիպրիանոս օր աւուր կը հաստատուէր քրիստոնէութեան մէջ. դեւն կը յայտնէ Արեւելքի Եւտողմիոս կոմսին թէ Կիպրիանոս քրիստոնէից ուսուցիչ եւ Կոյս մը ոխերիմ թշնամի են աստուածներուն։ Եւտողմիոս երկուքն ալ ձերբակալել կու տայ եւ կ'աքսորէ Դամասկոս, ուր պատասխանատուութեան կ'ենթարկուին։ Կիպրիանոս բանտ կը դրուի, իսկ Յուստինէ կը պահուի Տերենտիոսի տունը։ Դատաւորը ապա Նիկոմեդեա Դիոկղետիանոս

կայսեր կ'առաքէ զանոնք, ուր գլխատման կը դատապարտուին։ Կիպրիանոսի մարմինն 6 օրէն ետքը կ'ամփոփուի եւ Հռոմ կը տարուի, ուր կը թաղէ Ռուփինէ կին մը։

Երեքմասնեայ խմբագրութիւնս այս կերպարանքի մէջ կը պտտէր հրապարակի վրայ Ե. դարու առաջին քառորդին, երբ Եւդոքսիա թագուհին երեք մասերն միացնելով ի մի՛ կը յօրինէր բանաստեղծական նկարագրով Կիպրիանոսի վարք մը, որ այնուհետեւ կը տարածուի "ի մէջ Յունաց եւ Հայոց" (Աւգերեան, անդ 103)։ Այսպէս կը միացնէ նաեւ լատիներէն ոչ շատ հին օրինակ մ'ալ։ Իսկ յունարէն ձեռագիրներու մէջ Դարձն յաճախ կը հետեւի Վկայաբանութեան, այնպէս որ Խոստովանութիւնն կը մնայ կղզիացած։ Նոյնպէս Մեթափրաստ կը բաւականանայ առաջինն եւ վերջինը միացնելով. այսպէս նաեւ ասորի խմբագրութիւնն եւ հայ Յայսմաւուրք։ Հաւանօրէն Մեթափրաստէսի խմբագրութեան համեմատ է նաեւ հայերէն այն բնագիրը, որ կը յիշատակուի Վենետիկի Մխիթարեան Մատենադարանի Ճառընտիր Բ, էջ ջկը, սկզբնաւորութեամբս. "Երանելի սուրբ եպիսկոպոսն Անթիմոս տեսեալ...." (ըստ Ցուցակին Զօհրապի, հմմտ. եւ Աւգերեան, անդ, էջ 91, առանց մասնաւոր տեղեկութեան)։ Իսկ Դարձն եւ Խոստովանութիւնք հայ մատենագրութեան մէջ պահուած է համառօտուած այն հին երդմնեցուցչական աղօթաձեւերու հաւաքմանց սկիզբը, որ սովորաբար

"Կիպրիանոս գիրք„[1] կը կոչուի. բայց նաեւ "Յուրբաթագիրս կամ ի ժողովածու քարոզգիրս, եւ յաղօթամձեւ գրապանակս„ (Աւգերեան, 102)։ Հայ խմբագրութեան վրայ ուրիշ առթիւ թերեւս աւելի մանրամասնօրէն։

Եթէ ի մերձուստ նկատենք այս երեքմանեայ վկայաբանութիւնը, ոչինչ պատմական պիտի գտնենք հոն ի հաստատութիւն վաւերականութեան. Անտիոքի աթոռն Գ. դարու կէսին, ոչ Անթիմոս եւ ոչ Կիպրիանոս անուն եպիսկոպոս կը ճանչնայ։

Delehaye, որ մանր վերլուծութեան վերածած է երեքմասնեայ վկայաբանութիւնս, այն եզրակացութեան կը յանգի, թէ վկայաբանութեանս հեղինակն ունեցած է ձեռքի տակ Դարձի եւ Վկայաբանութեան հնագոյն մէկ խմբագրութիւնը, զոր ընդարձակած է աւելորդ մանրամասնութիւններով. իսկ Խոստովանութիւնն երկրորդ ձեռքէ է, յօրինուած առաջին եւ երրորդ մասերու վրայ յեցած. բայց երեքն ալ յէականս Ե. դարէն յառաջ գոյութիւն ունէին, գրեթէ ծանօթ ձեւի մէջ։

3.

Բոլորովին ուրիշ գծերու մէջ կը ներկայացնէ զԿիպրիանոս Գրիգոր Նազիանզացի այն

1 Մխիթար Արիվանեցի, էջ 33 "Եթէ ո՞ր գիրք ընդունելի է„ բաժնոյն մէջ կը թուէ նաեւ "Գիրքն Կրիապոսի„ որ ըլլայ թերեւս այն Կիպրիանոս գիրքը։

ներբողին[1] մէջ, զոր խօսած է ափ յափոյ 379ին ի պատիւ Ս. Կիպրիանոսի, անոր տօնէն օր մը յետոյ։ Նազիանզացի գիտէ հօս զԿիպրիանոս Կարքեդոնի եպիսկոպոս, որ առաջին կենաց մէջ պարապած է կախարդութեամբ, սիրահարուած Յուստինէ կուսին՝ ուզած է տիրանալ անոր, բայց իր դիւթական հնարագիտութիւններն ի դերեւ ելլելով՝ դարձի եկած է, ապա մկրտուած՝ քահանայացած է եւ Կարքեդոնի եպիսկոպոս կարգուած։ Դեկոսի հալածանքներու ժամանակ Կայսեր առջեւ պատասխանատուութեան հանուած է եւ աքսորուած իւր գործունէութեան միջավայրէն. բայց չէ մնացած իւր հօտն աքսորավայրին մէջ, այլ քաջալերած է թղթերով։ Ընձամբ օրինակ եղած է իւր ժողովրդեան հաւատքին ճշմարտութեան համար. ենթարկուած է տանջանքներու եւ ի վերջոյ ընդունած մարտիրոսական պսակ։

Նոյն նկարագրով կը ճանչնայ զԿիպրիանոս նաեւ Պրուդենտիոս իւր վասն Պսակի բանաստեղծութեան մէջ։

Ի՞նչ աղբիւրէ գիտեն Կիպրիանոսի վկայաբանութիւնն այս ձեւի մէջ Գրիգոր եւ Պրուդենտիոս։ Delehaye կը միտի այն կարծեաց թէ Աստուածաբան իւր ներբողին մէջ յայտնած մտքերն ոչ թէ չփոթելով երկու համանուն նահատակներու վկայաբանութիւնը ձուլած է ի մի, ինչպէս գիտուններէն ոմանք կը յօժարին

---

1 Պահուած նաեւ հայերէն հին թարգմանութեամբ. Ընդարձակ մեկնութիւնք ակս Աւգերեան՝ անդ, էջ 92–95։

ենթադրել, այլ թէ իր ծանօթութիւններն եւ թէ Պրուդենտիոսի տեղեկութիւնները քաղուած են հասարակաց աղբիւրէ մը, թերեւս գետեղուած Կիպրիանոսի գրուածոց հաւաքման սկիզբը, ուր արդէն Կիպրիանոս այնպիսի գծերով ներկայացուած էր։

Delehayeի այս կարծիքին հաւանականութիւն եւ նոյն իսկ ստուգութիւն կու գայ բաշխել Կիպրիանոսի վկայաբանութեան հայերէն հին խմբագրութիւնը, որ կը հրատարակուի ստորեւ։

## 4.

Այս վկայաբանութիւնը, պահուած Ե. դարու հայերէն ընտիր թարգմանութեամբ, իրեն սկզբնագիր օրինակ ունեցած է յունական խմբագրութիւն մը, հաւանօրէն Դ. դարէն, ուստի եւ մերձաժամանակ Գրիգոր Նազիանզացւոյ եւ Պրուդենտիոսի։ Այն պարագան որ գիծ առ գիծ ունի իր մէջ վկայաբանութիւնս այն բոլոր մանրամասնութիւնները, որոնցմով կ'ուրուագծէ Գրիգոր իր Կիպրիանոսին կեանքը, ինծի տարակոյս չի թողուր ենթադրելու թէ Նազիանզացւոյ ծանօթ միակ խմբագրութիւնն այս էր եւ յէականս այս ձեւի մէջ։

Այս գրութիւնը Դ. դարուն, յամենայն դէպս 379էն յառաջ, գոյութիւն ունէր հրապարակի վրայ իբրեւ վկայաբանութիւն Կարքեդոնի եպիսկոպոսին, հաւանօրէն ի շարս հին վկայաբանութեանց։

*Դժուարին է անուանել հեղինակը. բայց անիկա կ'ապրէր իբր Գ. դարու առաջին կէսին, եթէ ոչ աւելի կանուխ, իրեն ծանօթ եղած են Կարքեդոնի եպիսկոպոսի յառաջկենաց մասին “բազում բանք„ գրուած “ի բազմաց„, բայց հովուական գործունէութեան եւ յատկապէս “կատարման„ վրայ ամփոփ գրուածք մը չէ գտած, զոր ուզած է տալ։ Առ այս իւր աղբիւրներն եղած են.*

*ա. Այն “բանք բազումք„, որոնք կը ճառէին վկային յառաջկենաց մասին, հաւանօրէն երբեմնեայ վկայաբանութիւնն իւր նախնական ձեւի մէջ։*

*բ. Հին կենսագրութիւն մը, ուր Կիպրիանոսի հալածանքն Դեկոսի օրով կը պատմուէր, զոր վկայագիրն անճիշդ հասկնալով՝ Սուրբն ուղղակի Դեկոսի առջեւ հանած է պատասխանատուութեան, որ պատմական չէ։*

*գ. Իրեն լաւ ծանօթ եղած է “Գործք փոխհիւպատոսականք„ կոչուած գրութիւնը, ուսկից երբեմն բառական, բայց յաճախ ընդլայնմամբ փոխառութիւններ ըրած է։*

*Այս ձեւի մէջ անծանօթ մնացած է վկայաբանութիւնս գիտնական աշխարհի։ Կը կարծենք թէ հետաքրքրական պիտի ըլլայ այն գիտնոց, թէ՛ իբրեւ նշխար մը հայ գրականութեան Ե. դարու առաջին կէսէն, դասական ընտիր լեզուաւ, եւ թէ՛ իբրեւ անխառն վկայաբանութիւն, առ նուազն Գ. դարու նկարագրով։*

## 5.

Վկայաբանութեանս ծանօթ է Գրիգոր Նարեկացի. բայց իրեն միաժամանակ յայտնի եղած կ'երեւայ նաեւ կեղծ վկայաբանութիւնը, երբ Յուստինէի վկայութեան վրայ ալ ակնարկութիւն կ'ընէ։ Նարեկացին խօսելով 983ին Ապարանից վանքի մէջ պահուած սուրբերու նշխարքներու վրայ, կը յիշէ անոնց թուին մէջ նաեւ "ըստ կայից հարալոյ ի սեան խորանին՝ զսուրբ պատանեկին Աբգլմեհի, զԿիպրիանոսի զԿարքեդոնացւոյն որ յԱփրիկեայ սուրբ եւ երանեալ եպիսկոպոսի եւ վկայի եւ զՅուստիանեայ կուսի իմաստնոյ՝ անարատի եւ մարտիրոսի„ (Մատենագրութիւնք. Վենետիկ, 1840, էջ 386)։

Մեր վկայաբանութիւնը չի ճանչնար Յուստինէ կոյսի մարտիրոսութիւնը։ Նարեկացին կամ տեսած է Կիպրիանոսի վկայաբանութեանս կից Յուստինեայ վկայաբանութիւնն ալ, որ այժմ կը պակսի, (բայց համեմատէ Էջմիածնի ձեռագիրներու խորագիրները), եւ կամ իրեն ծանօթ եղած է կեղծ-վկայաբանութիւնը։ Ինձի աւելի հաւանական կ'երեւայ առաջին ենթադրութիւնը։ Վկայաբանութիւնս ներկայ ձեւին մէջ, ի կատարածին թերոյթ մը ցոյց կու տայ, հոն ուր վկային կատարումն կը յիշատակուի՝ հնագոյն օրինակներուն մէջ նշանակուած ըլլալու էր նաեւ կատարման ժամանակը եւ նշխարաց փոխադրութիւնը, որուն ծանօթ է Գրիգոր Նազիանզացի։

## 6.

Մեր հրատարակութեան համար աչքի առջեւ ունեցած ենք Պարիսի Ազգային Մատենադարանի Թ. 118, թղ. 20ա (հմմտ. Macler, Catalogue des Manuscrits arméniens et géorgiens de la Bibliothèque nationale, Paris, 1908, p. 60 = Ancien fonds, 46 C) եւ 178, թղ. 44ա (հմմտ. Macler, անդ, էջ 98 = Ancien fonds 88) ընդօրինակութեամբ եւ համեմատութեամբ Հ. Յ. Գաթըրճեանի։ Օրինակներ կը յիշուին նաեւ Վենետիկի Մխիթարեան Մատենադարանի Ճառընտիր Բ. էջ 769 եւ Ճառընտիր Գ. էջ 361 ըստ Ցուցակին Զօհրապի. բայց տես նաեւ Ճառընտիր Գ. էջ 373 ըստ Աւգերեանի (անդ, էջ 68։) Դարձեալ յԷջմիածին, կար. Ցուցակ, Թ. 916, թգ. 919, հգ։ Դժբախտաբար սոյնք անմատչելի մնացին մեզ (ինչ ինչ հատածներ Վենետիկի Մխիթարեանց օրինակներէն տես՝ Նոր Հայկ. Բառագրքի մէջ = ՀԲ եւ Աւգերեան, անդ.)։

Համեմատութեանց ժամանակ A կ'անուանենք Պարիսի Ազգ. Մատ. Թ. 178. եւ B = նոյն Մատենադարանի Թ. 118։ Av = Աւգերեանի գործածած օրինակը, եւ V = Վենետիկի օրինակ։

# ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ԿԻՊՐԻԱՆՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

1. Այսօր պատմի քաջութիւն մեծի վկային Կիպրիանոսի ի Կարքեդոն քաղաքի, քանզի էր այնպիսի այրն յառաջ ի կենդանութեանն, եւ յետ մահուանն ընդ ամենայն աշխարհ քարոզին չարչարանք նորա որ վասն Քրիստոսի: Բազումք եւ այլ բանս բազումս վասն յառաջկենացն նորա եւ մեք վասն կատարման նորա հարկեցաք ասել՝ ի նախանձ մտեալ զոր ունէրն ի Քրիստոս:

2. Էր նա յառաջագոյն փիղիսոփայ եւ քուրմ կռոցն, քանզի ի մանկութենէ ի սպաս կռոցն նուիրեցին զնա ծնողքն իւր. եւ այնպէս էր հռչակաւոր ի չարիս, որպէս թէ զամենայն կախարդաւք զանց առնէր, զՅաննեսիւ եւ զՅամբրեսիւ. եւ էր մեծատուն յոյժ, որպէս թէ բնաւ

---

Խորագիր. Պատմութիւն սրբոյն Կիպրիանոսի եպիսկոպոսի եւ Յուստինեայ կուսին եւ վկայութեան նոցա, Իջմ. Կարինեան ցուցակ, Թ. 916, ից: Ապաշխարութիւն սրբոյն Կիպրիանոսի եպիսկոպոսի եւ Յուստինեայ կուսին ի Կարքեդոնի քաղաքի. անդ, Թ. 919, հդ:

Ա. 1 Այսուհետեւ V: — 7 մեք չունի A:

Բ. 1 նա չունի A, յ. նա փիւղիսոփայ A: — 2 ի (սպաս) չունի B: — 3 ծնօղքն A: — 5 զԱնէսիւ եւ զԱմբրեսիւ A:

չիշխել ումեք չարախաւսութիւն ընմանէ մատուցանել. եւ այնպէս հոյակապ էր ի կախարդութեանն, որպէս թէ առանց աշխատութեան ի գիշերի զազատ կանայս յանկողնոց իջուցանէր զի առակեսցին ի ցանկութիւնս ամաւթածուս:

3. Եւ ցանկացաւ ինքն աղջկան միում գեղեցկի՝ որոյ էր զկուսութիւնն իւր նուիրեալ Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի: Զնա յանցանելն իւրում տեսեալ՝ խոցեցաւ, եւ առաքեաց զարբանեակս իւր զդեւս զի զարհուրեցուցեալ զաղջիկն՝ ջեռուսցեն ի ցանկութիւնս առ նա. եւ աղջիկն զինքն տեառնագրութեամբն Քրիստոսի կնքէր: Եւ էր յազատաց եւ մեծատուն ի ծնողաց՝ որք վասն Քրիստոսի զմեծութիւնն իւրանց բաշխէին կարաւտելոց: Եւ աղջկանն՝ զգաստ մտաց զինքն տուեալ՝ թէ լաւ է հաստատել զիս Քրիստոսի, քան առ ժամանակ մի վայելել ի մեղս, եւ եթէ մարդոյ ոք զինքն հաստատէ եւ ոչ պահէ առ նա զսէր իւր, ի տանջանաց ոչ կարէ ապրել, ո՞րչափ եւս առաւել որ զՔրիստոսի աւանդն ոչ պահէ, տացէ վրէժս: Եւ զբանն Պաւղոսի խորհէր՝ թէ ՙՙնեղութիւն մարմնոյ ունիցին, եւ Որ մերձենայ ի Տէր մի հոգի է: Յայնժամ ապաւինէր ի նաւահանգիստն Քրիստոս՝ ծփեալ խորհրդովք, հալէր պահովք զմարմինն իւր, որպէս թէ մեռուցանել յառաջ քան զմահն, եւ թառամեցուցանէր

Գ. 1—2 գեղեցիկ ինքն B, — 17 Ա. Կոր. Է, 28: — 18 Անդ, Զ, 17:

զգեղն գետնատարած անկողնովք, աղաթիւք եւ սաղմոսիւք զդեւս հալածէր. եւ ժտեալ ի նա ժամանակ մի եւ ոչինչ հնարս գտեալ՝ գնացին ամաչեցեալ ի նմանէ դեւքն։

4. Եւ հարցեալ Կիպրիանոս(ի) զդեւսն վասն յամելոյն նոցա, եւ նոքա ասացին յայտնապէս եթէ անհնար է հաւանեցուցանել զաղջիկն։ Իսկ երանելւոյն Կիպրիանոսի խորհեալ բնաւ բարի ասէ ցնոսա. Ընդէ՞ր զմեզ մինչեւ ցայժմ խաբէիք ասելով թէ լաւագոյն եմք քան զՔրիստոս։ Զի եթէ ցանկութիւն նորա յաղթէ ձեզ, ապա յայտ է թէ տկարն ի հզաւրէն յաղթահարի, որպէս եւ ճրագ յարեգակնէ եւ լոյս ի փայլատականց։ Առանց երկուանալոյ նա զաւրագոյն է, որպէս եւ է՛ իսկ բնութեանն Աստուծոյ։

5. Զայս ասացեալ եւ ընկեցեալ զչարն որ ի ձեռինն՝ այնուհետեւ ապա առ Փրկիչն ապաւինեցաւ։ Եւ ընթացեալ հասանէր ի ժողովարանն, մինչեւ զարհուրեալ բազմութեանն. եւ ընկեցեալ զինքն ի դրանն՝ թողութիւն խնդրէր ի մոլորութենէն՝ զանգիտութիւնն պարսաւորելով։ Կերպարանութիւն եւ նենգութիւն եւ խաբէութիւն՝ որք եկեղեցւոյն առաջնորդք

24 ի նմա A: — 25 մի ուրեք AB:

Դ. 3 անատակ է B: — 6 զաւրագոյն Av: — 7 զի եթէ լոկ անուն նորա եւ նշան խաչի նորին յաղթէ Av: — 9 յարեգականէ B:

Ե. 6 մոլորութենէ B: — 7 պարսաւորելով] պակասէր AB, պատճառելով. հմմտ. եւ կամաւք պատճառեցայ զանգիտութիւն. Սեբեր., ԵՁ 14: — 7 նենկութիւն AB:

*էին զիւրն համարէին, եւ մեծ խռովութիւն էր ի քահանայսն՝ ասելով թէ հնար էր քարի փոխել քան Կիպրիանոսի գալ ի հաւանութիւն, այլ խաբել կամի զքարեպաշտութիւնն:*

*Իսկ նա բանս աղերսականս մատուցանէր նոցա. թէ ոչ է խաբէութիւն յայտ վկայ կացուցանէր զապաշխարութիւնն: Եւ խնդրէր ի նմանէ եպիսկոպոսն գրաւ հաւատոյն՝ զգիրս կախարդութեան նորա առաջի ժողովրդեանն այրել. եւ նա առանց վեհերելոյ զայն տեսիլ նոցա ցուցանէր: Եւ հանդերձ գրովքն եւ զինչս եւս զոր ստացեալ էր ի չարէն, հրով մաշէր, եւ զոր յարդար վաստակոց ունէր՝ զայն կարօտելոց բաշխէր. եւ ընդ աղքատս ի հրապարակի ընկեցեալ կայր եւ յեկեղեցւոյն արգելոյր զինքն՝ անարժան համարելով կենացն այնոցիկ: Շատ է ինձ, ասէ, կեանք ժամանակիս որ խայտառակիմս ի հրապարակիս եւ զամենայն մոլորութիւնն իմ յայտ կացուցանեմ: Եւ ո՞ր սուգ մեծ է, ասէ, քան զայս որ մեռեալս ամենեւին՝ ընդ կենդանիս ի թիւ անկանիմ. դատաստան պարտիմ տալ վասն ունայն գործոց իմոց՝ զոր թէ չէ՛ր արարեալ. զբազում կորուսի կախարդութեամբ իմով եւ չարութեամբ: Եւ զայս ասացեալ՝ խորգ զգենոյր եւ մոխիր տարածանէր զանկողին իւր մերձ ի ժողովարանն եւ յաւժարութեամբ համբերէր՝ կատարեալ յինքն զայն թէ Ընտրեցի մանաւանդ անկանել ի տուն Աստուծոյ իմոյ:*

---

14 կացուցանելով B: — 18 առանց վհատելոյ A: — 35 կատարէր յինքեան A: — 35 Սղմ. ՁԳ., 11 ?:

Եւ երեմեան ժամանակ այնպէս վաստակեալ եւ երկայնամիտ համբերութեամբ վարեալ՝ արտասուաւք եւ պահովք զառաջին կեանսն ապաշխարէր։ Եւ զարմացան ամենեքին ի վերայ յանկարծաւրէն դարձին նորա. եւ արդարեւ էր ասել զայն՝ թէ Այս է նորոգումն աջոյ բարձրելոյ։

6. Եւ յորժամ եմուտ ի նա աստուածական կարգացմանն ցանկութիւն, յայնժամ լսող լինէր այլ եւս երեքամեան ժամանակ. առաւել եւս վարուք զինքն պնդէր։ Եւ դարձեալ ցանկացեալ եւ առեալ մկրտութիւն՝ կայր յուսով յաղաչանսն։ Զոր յառաւել առաքինութեան տեսեալ եպիսկոպոսին ընդ դռնապանս եկեղեցւոյն կացուցանէր։ Եւ յետ սակաւ ժամանակի անցանելոյ՝ ընդ արքանեակս արժանի լինէր։ Վասն զի մեծապէս առաքինութեան զինքն մատուցանէր եւ ի կարգացմունս զինքն առաւել վարժէր, այնուհետեւ ապա ի կարգ սարկաւագութեան մատչէր եւ ուսուցանէր զբազմութիւնն որպէս եւ մեծաձայն քարոզ Քրիստոսի։

7. Եւ վախճանեալ առ նովաւ եպիսկոպոսին յաշխարհէ, զնա փութով ժողովուրդն աստուածական վիճակաւ ընտրեաց վկայութեամբ Հոգւոյն սրբոյ եւ ժողովրդեանն. եւ ուրախ եղեւ ժողովուրդն ընդ ընդունել նորա զվիճակն ի սեղանոյն։ Քանզի ունէր սէր եւ

40 ի վերայ չ—ն․ B։ — 42 Սղմ. ՀԶ, 11։

Զ. 1 ի նա] ի նմա A։ — 2 կարգացման B։ — 14 եւ չ—ն․ Av։

խաղաղութիւն առ ամենեսին, բանիւք՝ յուսուցանել եւ գործովք յառնել, եւ ոչ էր պակաս քան զառաջին առաքելոյն։

8. Եւ չժուժեալ այսմ բարեատեացն եւ հակառակորդն, երեւեցաւ դարձեալ միւսանգամ, այն որ զառաջին կեանսն նորա մաշեաց ի մոլորութեան վարս։ Նախանձու այնուհետեւ մաշեալ՝ ոչ համբերէր, այլ յարուցանէր ի վերայ եկեղեցւոյն հալածումն բազում անգամ եւ այլ յառաջ՝ չփոթեալ զտիեզերական եկեղեցին. առ Դեկեաւ կայսերբ յարուցանէր կրկին պատերազմ եւ այն էր ծանրագոյն. զի ոչ միայն զքրիստոնեայս, այլ եւ որ սիրելիք նոցա էին, եթէ ոչ զնոյն ընդ նոսա հաւատարեսցեն. քանզի հրամայէր զոհել, եւ ամենեւին փոյթ նորա այն էր՝ զի զԿիպրիանոս դարձուսցէ։ Քանզի այնպէս փութայր արագ զամենայն բազմութիւնն դարձուցանել՝ միայն եթէ զնա հաւանեցուսցէ։ Զնմանէ այնուհետեւ առաքէր. փաղաքշանաւք եւ կաշառաւք կամէր դարձուցանել զնա։

9. Իսկ առաքինին պինդ խորհրդովք եւ աներկեւան մտաւք պատասխանի տայր թագաւորին. Եթէ այլ ոք էր, ասէ, որ փորձէրն եւ աներեւոյթ ինչ մոլորութիւնն երեւէր, ունէր տալ քեզ ինչ յոյս հաւանական մոլորութեան, էին արդեւք մեզ բանք ի պատերազմ

Ը. 6 եկեղեցւոյ B։ — 8 Դեկաւ B։

Թ. 4 ինձ A։ — Երեւէր] էր եւ էր A։ — 5 ինձ A։ — Հաւա]նական մոլորութեան [illegible] B։

պատրաստել. այլ վասն զի նա է՛ որ չարին պարտաւոր է, զորոյ եւ զամաւթ կռապաշտութեանն խորտակեաց, աւելիս համարիմ փորձելով զիս. եւ ոչ են իրաւունք զդարձեալն ի մոլորութենէ ի նոյն խորխորատ ընկենուլ. եւ քեզ իսկ չէր պարտ խորհել զանհնարինս, ո՛վ բռնաւոր։ Արդ մի յուսար զօք ի ծառայից Աստուծոյ շահել քեզ ի կռապաշտութեան սատակումն եւ հեռացուցանել յԱստուծոյ՝ որ զամենայն արար։ Թագաւորն ասէ. Զարեաց պարտաւոր եւ արարիչ դու ես։ Կիպրիանոս ասէ. Զարեաց պարտաւոր՝ սատանայ է՝ զոր դուքն պաշտէք, որ նախանձեցաւ ընդ մարդոյն, վասն զի յամենայն արարածս միայն մարդ ի պատկեր Աստուծոյ եղեւ։ Թագաւորն ասէ. Եւ ո՞վ արար զնա չար։ Կիպրիանոս ասէ. Զնա Աստուած բարի արար տուեալ նմա քան զամենայն արարածոց լաւութիւն, այլ քանզի լուաւ յԱստուծոյ՝ որ ասէր. Արասցուք մարդ ըստ պատկերի մերում, խոցեցաւ նախանձու սիրտ նորա, անկաւ ի փառացն, եւ որ էրն առաջին՝ ամենեցուն յետին եղեւ, բարին՝ չար, փառաւորն՝ անարգեալ, քանզի փոխական է ամենայն բնութիւն բայց յաստուածութենէ անտի։ Վասն որոյ եւ ի պատերազմ զնա առ մարդիկ կացոյց Աստուած, եւ զաշխարհս ասպարէզ մեծ տարածեաց, զի ընդ նմա պատերազմեալք յաղ-

18 ասաց A։ — 21 ի պատկերի AB։ — 25 Ծն. Ա, 26։ — 27 էրն նա A։ — 29 անարգեալն A։ — 29 փոխական է] փոխանակի A։

թողք չարին երեւեցին, զոր միայն փրկիչն մեր արար յամենայն առաքինիս յաղթութիւն եւ նշան յերկինս: Դատաւորն ասէ. Եւ զի՞արդ զմարդն Քրիստոս իբրեւ զԱստուած պաշտէք: Կիպրիանոս ասէ. Վասն զի բան էր նա Աստուծոյ, մարդացեալ վասն մեր՝ ընկալաւ չարչարանս վասն մերոյ փրկութեան եւ այնպէս յաղթող երեւեցաւ Աստուած մարդացեալ որ անփոփոխն էր բնութեամբ եւ անտես: Այլազգ ոչ էր հնար երեւել Աստուծոյ արարածոց, թէ ոչ էր խուրացուցեալ զարարածս: Արդ զնոյն ցանկութիւն ունին արարածք:

Եւ զայս ասացեալ նորա՝ երկեաւ թագաւորն՝ զի մի հաւանեցուսցէ զլսողսն ամենայն, եւ բարկացեալ սրտմտութեամբ՝ սպառնայր դարձեալ դատաստանաւ. Ոչ յանձն առնուս՛ քեզ, ասէ, դարդաչանացդ, այլ առանց յապաղելոյ պարտիս զոհել աստուածոցն՝ որոց տեսանեմք հնազանդեալ զարարածս առանց պատճառանաց: Այսուհետեւ զոհեա՛ արեգական՝ որ վասն իմ եղեւ, որ առանց հանգստեան միով ընթացիւ զովկիանոսիւ պատի: Կիպրիանոս ասէ. Մի ասեր զկուռս աստուածս՝ կռապաշտութեամբ դիւացն մոլորեալ:

Եւ զայս լուեալ թագաւորին եւ չեղեալ նմա հաճոյ, հարկանէր զնա գան առաւել եւ

---

38 բանն A նա չ—նէ A: — 42 անտեսն A: — 43 մարթ B: աստուծոյ չ—նէ A, եթէ A: — 46 նորա չ—նէ B: — 48 սպառնացեալ A: — 50 կարկաչանացդ Av:

*տայր տանել զնա ի վերայն, կարծելով եթէ երկայնութեամբ ժամանակի եւ ի խաւարարգել կեանսն հնազանդեսցի վասն տանջանացն: Եւ նա ամենեւին ոչ հոգայր վասն տանջանացն, այլ թղթովք եւ զայլս բազումս ածէր ի մարտիրոսութիւն: Այլ եւ ոչ դատաւորն Աստուծոյ անփոյթ ինչ առնէր վասն եղելոցն, այլ հատուցանէր ոչ ընդ երկար ժամանակ թշուառականին՝ ի ձեռն այլոց զնա սատակեալ հատուցանողին, եւ դադարէր առ ժամ մի հալածումն:*

10. *Եւ միւս եւս բռնանէր զաղտնի պատերազմ, քանզի յաւժարութիւն էր սատանայի զբարեպաշտութիւնն պղտորել: Եւ պատահեալք արտաքոյ սակաւ մի հանգստեանն, արձակք ընդ քաղաքն Հռոմայեցւոց շրջէին. եւ արարեալ ժողով՝ թէ Պարտ է թողուլ որ ոչ կամաւքն զոհիցեն: Եւ սատանայի երկիցս զգեցեալ զամբարհաւաճութիւն ընդունայնութեանն՝ ասէր. Ոչ առնու յանձն Աստուած այնպիսեացն, եւ որ փոփոխին ի պաշտամանէն՝ ոչ առնէ թողութիւն: Բազում եւ այլ ինչ ասելով զբարերարութիւնն Աստուծոյ հայհոյէր եւ ջանայր արգելուլ ի մարդասիրութենէն Աստուծոյ զաշխարհ:*

*Յայնժամ եւ զայն եւս պատերազմ լուծանէր երանելին սուրբ Հոգւովն. եւ զՊետրոս*

---

63 *հոգացըր* A· — 69 *առ ժամանակ մի* B. — 70 *հատուցումն* A:

Ժ. 6 *որք* A *զոհեսցին* B· — 7 *զամբարհաւաճութիւնն* A:

յառաջ մատուցանէր հիմն եւ կանոն եկեղեցւոյ եւ զփականս երկնից ի Քրիստոսէ ընկալեալ։ Եւ որք կամաւքն ուրացան զհաւատսն՝ զի մեծացին ի փառս եւ ի մեծութիւն աշխարհի, անարժանք շնորհացն Աստուծոյ։ Իսկ որ ոչն համբերին տանջանացն բանութեան եւ ոչ կամաւք երկիր պագին, զնոսա կշիռ ապաշխարութեան արժանի արարին, ասացեալ զՓրկչին եթէ Հոգիս յաւժար է, բայց մարմինս տկար է, եւ զՊետրոսին յետ երիցս ուրացութեանն զերիս խոստովանութեամբն սիրել զՔրիստոս, զմտաւ ածեալ զդաւանութիւնն։ Զայս իմացեալ՝ զամբարհաւաճն անիծին իբրեւ զհպարտ եւ զամբարտաւան՝ զի զմարդասիրութիւնն Աստուծոյ ուրանայր։

11. Եւ երկրորդ խոստովանութիւնս յարուցանէր ի ժամանակս Վաղերիանոսի եւ Վաղիոնի, որք հրովարտակաւք անսրբովք զաշխարհս խռովեցուցին, մեծ վայրենութիւն ի Կիպրիանոս ցուցեալ. Կամ զոհեսցէ, ասէ, եւ մեծապէս պարգեւս առցէ, կամ թէ ոչ զոհեսցէ, տանջեսցի յոյժ։ Որոց Կիպրիանոս հեզաբար ետ պատասխանի. Գաղարեցէք, ասէ, ի մոլորութենէ կռապաշտութեանդ ձերոյ։ Արարէք առ իս զինչ եւ կամ է ձեզ. զի թէ զաշխարհս ամե-

---

21 համբերէին A։ — 24 Մատթ. ԻԶ, 41։ — 25 երից AB։

ԺԱ. 2 Հմմտ. [illegible] imperatore Valeriano quartum et Gallieno tertium consulibus. — 9 կռապաշտութեան A։

*նայն շնորհեն ինձ թագաւորք, ոչ կարեն հեռացուցանել զիս ի յաւժարութենէս յայսմանէ և ի ճշմարիտ բարեպաշտութենէս՝ որ զամենայնի մատակարարէ: Քանզի ինձ այսպէս համոյ եղեւ ոչ խոստմամբքն կակղանալ եւ ոչ գովութեամբ մարդկան հնազանդել եւ ոչ ի տանջանացն տեղի տալ, Աստուած խոստովանելով զՀայր եւ զՄիածին Որդի նորա եւ զսուրբ Հոգին՝ զոհել յանձն առնում զանձն իմ:*

*Պատասխանի տուեալ նմա երկրորդին կայսերն ասէ. Ի բազում ժամանակաց, Կիպրիանէ, կապտելով զսեղանս յամենայն ժամ թշնամի աստուածոցն հռոմայեցւոց եւ պարտական զքեզ արարեր: Եւ արդ ոչ պարգեւաւք եւ ոչ պատուով թագաւորքն զքեզ կարացին հաւանեցուցանել եւ ոչ բազմապատիկ տանջանք յաստուածոցն բարեպաշտութիւն զքեզ խոնարհեցուցանել իբրեւ զերանելի զառաջնորդ կարգի քրիստոնէից. վասն որոյ եւ համոյ եղեւ թագաւորացս զԿիպրիանոս սրով սպանանել:*

*Եւ կատարեալ սրով երանելին ի նպատակ վերին կոչմանն հասանէր ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր. որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:*

---

18 *զհոգին* B: — 21 *Կիպրիանոս* A: — 26 *տանջանս* AB: — 31 *նպատակ*, հոս կտրուած է B, [illegible]: — 35 *ԶՊաւղոս առացող եւ գծող յիշեսջիք ի Տէր* A:

## ԹԷՈԴՈՐՈՍ ԱՊԻԿՈՒՌԱ ԵՒ ՆԱՆԱ ԱՍՈՐԻ

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

### ԵՒ ՆԱՆԱՅԻ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ՀԱՅԵՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆԸ

Եկեղեցական-պատմական եւ մատենագրական կէտին հարցեր ունինք հոս մեր առջեւ։ — Հայոց պատմութիւնը կարճ խօսքերով կը յիշատակէ թէ Թ. դարու սկիզբը Թէոդորոս Ապիկուռա Աշոտ Մսակերի արքունիքը եկած է եւ հոն քաղկեդոնի վարդապետութիւնը քարոզած. այս առիթ տուած է Նանայի՝ Միջագետքէն Հայաստան անցնիլ պայքարելու Թէոդորոսի հետ, ուր ապա յանձնարարութիւնն ընդունած է Բագարատ Բագրատունիէն՝ յօրինելու Յովհաննու աւետարանին մեկնութիւնը։

Հ. Ք. Չրաքեան՝ Նանայի Մեկնութեան հրատարակութեան[1] ներածութեան մէջ եւ

---

1 Նանայի Ասորւոց վարդապետի մեկնութիւն Յովհաննու Աւետարանին, Վենետիկ 1920, 8°, էջ ԼԹ + 448 (Թանգարան հայկական հին եւ նոր դպրութեանց. Է.) Ներածութիւնն եւ Նանայի Մեկնութեան սկիզբը հրատարակուած են նախ ԲԶՄ. 1915, էջ 279–93, 1916, էջ 2–5, 6–15 (Հ. Ք. Չրաքեան՝ Նանա մեկնիչ եւ իր մեկնութիւնը

L. Mariès[1] այս Հրատարակութեան քննադատութեան առթիւ մանրամասնօրէն ծանրացած են այս կէտին խնդիրներուն շուրջը, ջանալով լուսաբանել ընդարձակ գծերով: Բայց ոչ ամենայն յաջողութեամբ: Անոնք չեն անդրադարձած մեկնութեան յառաջաբանին մէջ տեղի ունեցած խանգարման մը, եւ չեն օգտուած այս նիւթի վերաբերեալ բոլոր մատչելի աղբիւրներէն, որոնք կը լուսաւորեն կարգ մը մթութիւններ:

## 1.

Թէոդորոս Ապիկուռա (մերիններէն Եպիկուռայ կոչուած եւ Յոյներէն Ἀβουκαρᾶ, արաբերէն Abû Qurra յորջորջանքն է, որ կը նշանակէ «Հայր զուարճման»[2]) ծնած է Ը. դարու կէ-

---

Յովհաննու Աւետարանին): Յառաջաբանը քաղուածաբար հրատարակած է նաեւ Զարբհանալեան՝ Մատենագրութեան թարգմանութեանց նախնեաց, Վենետիկ, էջ 620: Ալիշան Հայապատում, § 215, էջ 241–246 մեծագիր Հրատարակութեան: Н. Марръ, Аркаунъ, монгольское названіе Христіанъ ի թերթին Византійскій Временникъ, XII, 1906, էջ 11 եւ յլ. Հանդերձ ռուսերէն թարգմանութեամբ: Հմմտ. եւ Յ. Մարկուարթ՝ Հայ Բագրատունեաց ծիւղագրութիւնը ծանօթութիւններով. թրգմ. Հ. Մ. Հապոզեան. Վիեննա 1913, էջ ԺԲ–ԺԴ:

1 L. Mariès, Un commentaire sur l'évangile de St. Jean, rédigé en arabe (c. 840) par Nonnos (Nana) de Nisibe, conservé dans une traduction arménienne (c. 856). Revue des Études arméniennes, t. 1 (1921), p. 273–296.

2 Տես Grafի, էջ 5 (Vater der Erquickung). Հմմտ. այս մասին եւ L. Mariès, Epikoura = Aboukara, ի թերթին Revue des Études arméniennes I (1921), էջ 439–41 ըստ տեղեկատուութեան P. Peetersի:

սին, հաւանօրէն Եդեսիա։ Իւր գրուածներու խորագիրներու մէջ կ՚անուանուի ինքը եպիսկոպոս Խառանի (ἐπίσκοπος τῶν Καρῶν կամ Χαῤῥᾶν)։ Թէոդորոս եռանդուն ջատագով էր Քաղկեդոնի վարդապետութեան, եւ կը համարուէր Մաքսիմոսի հետեւող։ Վարժած հռետորութեան մէջ եւ հմուտ արաբերէն լեզուի՝ կը սիրէր վիճաբանիլ արաբացիներու եւ մանիքեցիներու հետ. Նաեւ քրիստոնեայ հերձուածներու՝ Նեստորականներու եւ միաբնէից հետ յաճախ կը մաքառէր բանիւ եւ գրով։ Թողուցած է աստուածաբանական-վիճական բովանդակութեամբ բազմաթիւ գրութիւններ արաբերէն լեզուաւ[1], որոնցմէ ոմանք թարգմանուած են նաեւ յունարէնի[2]։ Ինքը կը համարուի արաբերէն լեզուաւ գրող առաջին քրիստոնեայ մատենագիրը։

Թէոդորոս ժամանակ մը ապրած է Երուսաղէմ Ս. Սաբայի վանքը Հարուն ալ Ռաշիտի եւ ալ-Մամունի (813—833) օրով։ Հոս պատուէր կ՚ընդունի Երուսաղէմի Թովմաս պատրիար-

---

1 Հմմտ. Dr. Georg Graf, Die arabischen Schriften des Theodor Abû Qurra, Bischofs von Harrân (ca. 740–820). Paterborn 1910. Դարձեալ նոյն հեղինակին՝ Des Theodor Abû Kurra Traktat über den Schöpfer und die wahre Religion. Münster i. W. 1913. (Beiträge zur Geschichte der Philosophie des Mittelalters. Bd. XIV, Heft 1.)

2 Հմմտ. Theodor Abucarae Episcopi Cariae varia contra haereticos, Judaeos et Saracenos opuscula nunc primum graece et latine... in lucem... lata. Interpretibus Fr. Turriano et Jacobo Grestero S. J. Ingolstadii 1606. Հմմտ. Նախադրն եւ ս Migne P. gr. 97, 1455–1610

*քէն (իբր 807—821) միաբնեայ Հայոց վարդապետական թուղթ մը գրել եւ յորդորել, որ ընդունին Քաղկեդոնի ժողովոյն վարդապետութիւնը: Այս թուղթը գրած է Թէոդորոս արաբերէն լեզուաւ, զոր Միքայէլ Սիւնկեղղոս թարգմանած է յունարէն եւ որ ապա Պատրիարքէն առաքուած է Հայաստան (հաւանօրէն հայերէն թարգմանութեամբ): Թուղթս հասած է մեզի յունարէն թարգմանութեամբ*[1] *միայն, որ այսպիսի խորագիր կը կրէ.*

*"Թուղթ որ բովանդակէ զուղղափառ հաւատս, առաքեալ յերանելի Թովմաս պատրիարքէ Երուսաղեմացւոյ առ հերետիկոսս ի Հայս, յարաբերէն լեզու ասացեալ ի Թէոդորոսէ յորջորջելոյ Աբուկառա, յեպիսկոպոսէ Խառանի* (Καρῶν), *եւ ի Միքայէլ երիցուէ եւ սիւնկեղղոսէ եկեղեցւոյն Երուսաղէմացւոց ի յոյն բարբառ թարգմանեալ, յորոյ ձեռն եւ առաքեցաւ. բովանդակէ զմիայն եւ զճշմարիտ հաւատս աւանդեալս ի ժողովին Քաղկեդոնի զՔրիստոսէ Տեառնէ եւ զԱստուծոյ մերմէ"* (Migne, P. gr. 97, *էջ* 1503—522):

*Թովմաս Երուսաղէմի աթոռին վրայ էր իբր* 807—821 *տարիներուն: Միքայէլ Սիւնկեղղոս յայտնի անձնաւորութիւն մըն է եկեղե-*

---

[1] *Կը յիշուի նաեւ վրացերէն թարգմանութիւն մը խորագրով՝ Թուղթ երանելոյն Թովմայի Երուսաղէմացւոց հայրապետի ընդդէմ Հայոց. հմմտ.* Церетели, Полное собраніе надписей Гелатскаго монастыря *ի գիրս* Древности восточныя. Труды восточной коммиссіи . . . *հատոր Ա. Մոսկուա* 1893, *էջ* 281. *հմմտ. եւ* Н. Марръ, Аркаунъ, *էջ* 8 *եւն:*

ցական եւ մատենագրութեան պատմութեան մէջ[1]. 798էն ի վեր կը գործէր անիկա իբրեւ երէց Երուսաղէմի Ս. Գերեզմանին, 811ին անուանեց զինքը Թովմաս պատրիարք սինկեղոս (քարտուղար-տեղապահ). բայց հազիւ երկու տարի մնաց այս պաշտօնի մէջ. 812 Սեպտ. 1—813 Յունիս 10 շրջանին ստիպուեցաւ թողուլ Երուսաղէմն եւ փախչիլ Կ. Պոլիս, ուր եւ վախճանեցաւ 846, Յունուար 4ին։

Ուստի Աբիկուռայի թղթին գրութեան եւ թարգմանութեան ժամանակը պէտք է զետեղել 811—813 Յունիս 10 տարիներու մէջ (Հմմտ. Graf, անդ, էջ 9)։

Այս միջոցին Հայաստանի իշխանութեան գլուխն էր Աշոտ պատրիկ, "Մսակեր,, կոչուած, Սմբատ սպարապետի որդին (806/7—825/6) Դաւիթ կաթողիկոսի (806—833) օրով։

Աբիկուռայի թուղթը, անշուշտ հայերէն թարգմանութեամբ, հասաւ Աշոտ պատրիկի ձեռքը։ Թէ ի՞նչ եղաւ առաջին ազդեցութիւնը, յայտնի չէ. բայց կ'երեւայ թէ Աշոտ Հայաստան հրաւիրեց զԱբիկուռա, աւելի մերձուստ ճանչնալու զինքը եւ լսելու անոր վարդապետութիւնը։ Թէոդորոս հետեւած է հրաւէրին։

Աշոտ միւս կողմանէ ուզած է լսել նաեւ յակոբիկեան Անորւոց Աբու-Ռայթայ վարդա-

1 Հմմտ. S. Vailhé, St. Michel le Syncelle et les deux frères Grapti St. Théodore et St. Théophone ի թերթին Revue de l'Orient chrétien, VI (1910), p. 313–332, 610–642։

պետի կարծիքը Թէոդորոսի վարդապետութեան մասին եւ թղթով հարցուցած է անոր մտածմունքը Թէոդորի թղթին մասին։

Պարիսի Արաբերէն ձեռագրաց Թ. 169 (յամէ 1654) կը պարունակէ Թղ. 51բ—98բ հինգ ճառ գրուած նամակի ձեւով Abû Rûiṭa Chabib ibn Chadma Տակրիտեցիէն, որոնք՝ բաց ի առաջինէն, զանազան խորագիրներով միաբնեայ վարդապետութեամբ կը զբաղին[1]։ Երրորդ եւ չորրորդ նամակները կը բովանդակեն Ապիկուռայի մասին խնդիրներ, եւ ուղղուած են Աշոտ պատրիկի, ինչպէս չորրորդ թղթին մէջ յանուանէ յիշուած է։ Կարեւոր տողերն են.

(Թղ. 81ա). Երրորդ թուղթ Աբու-Ռայթայի Տակրիտեցւոյ. Հերքումն մելքիտաց նկատմամբ Միութեան։ Աստուած պահպանէ զքեզ, ով Պատրիկ, հաւատացեալ, հետեւող Աստուծոյ կրօնքին, պատուական... Քու նամակէդ իմացայ, ով Տէր, քու ուզածդ, որ ես այցելեմ քեզի, եւ որ դուն նմանապէս այն դէպքին, որ ես զայս զանց ընեմ եւ քու հրամանդ, քու քովդ գալ, անտես ընեմ, ինձի պիտի գաս, եթէ առ այս հնարաւորութիւն ըլլայ, որպէս զի տեղի ունենայ հանդիպում մը ի մէջ Ապու Կուռայի, իմաստնոյն, եւ իմ ի տնանկութեանս եւ ի տկարութեանս... Աստուած թող երկարէ քու

1 Առաջին անգամ ուշադիր եղած է այս կէտին K. Bàsà, Un traité des oeuvres arabes de Théodore Abou-Kurra, p. 67.

կեանքիդ ընթացքը եւ բարի ընէ քու մասնակցութիւնդ եւ օրհնէ քու միտքդ եւ խորհուրդդ։ Անիկա շրջապատէ զքեզ (եւ) զիս գիտութեան եւ խորհուրդի մարդիկներով, շնորհքով եւ ձրիւք։ Քու Նամակդ, ով պատուական, գտաւ զիս կապուած եւ կաշկանդուած եւ անհնարաւորութեան մէջ, փութով քու հրամանիդ հետեւելու եւ քեզի գալու։ Ասիկա առանց տարակուսի ինծի համար ճակատագիր մըն էր Աստուծմէ եւ զիս շրջապատող մեղքերու պատիժ մը, եւ առ Աստուած կ'աղաղակեմ ի նեղութեան։ Որովհետեւ բոլոր ուժովս գուն կը գործեմ, զիս փորձանքէս ազատելու, եւ առ այս չեմ գտներ օգնական մը, (Թղ. 81բ) անոր համար կը տեսնեմ, որ ես մէկը պէտք եմ ղըրկել, որմէ կը յուսամ թէ անիկա խօսի իմ մասիս ճարտասան ոճով, եւ քու առջեւդ իմ տեղս բռնէ, եւ որ անիկա զքեզ համոզէ այն նկատմամբ, ինչ որ դուն Ապու Կուռայի այս բանակցութենէ կը տեսնես, Քրիստոս եւ իր մասնակցութիւնն ըլլայ անոր հետ գիտութեան ընթացքին, իբրեւ մէկու մը հետ, որ արժանի է անոր վստահութեան, որ կ'ըսէ. Թող պատասխանը ձեզի հոգ չպատճառէ, եւ եթէ հարկաւոր ըլլայ, պիտի տրուի ձեզի, ինչ որ պէտք էք ըսել։

Եղիան սարկաւագն է անիկա, իմ մերձաւոր ազգականս... իրեն յանձնարարած եմ, որ անիկա իմ թուղթս քու եւ ազատներու եւ միւս քու քովդ գտնուող հաւատացելոց առջեւ կար-

դայ երեք անգամ, յառաջ քան[1] զվիճաբանութիւնը Աբու Կուռայի, իմաստնոյն, վարդապետին:

(Թղ. 84բ). "Երրորդ (կարդա՝ չորրորդ) թուղթ Աբու-Ռայթայի Տակրիտեցւոյ, ապացոյց, երեքս "Սուրբ անոր, որ վասն մեր խաչեցաւ" ին համար, առ Աբուլ-Խաբբաս (Abû'l-Chabbâs) պատրիկն, Աշուշա իբն Սինբատ (Asûchâ ibn Sinbâṭ), խարիբ իբն Խադմա Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի ծառայէն... Լսեցի, ով տէր, Աբու Կուռա գիտունին հայհոյութիւնը եւ ամբաստանութիւնը, մեզի դէմ նկատմամբ անոր, որ մենք Աստուծոյ — փառք իրեն, հզօրին, յաւիտենականին — "Սուրբ" կը վերառաքենք եւ որ մենք զայս (իբր կնիք) իւր փրկաւէտ, կենարար խաչելութեան յիշատակութեան կը կցենք, այնու որ մենք երեքս կ'ըսենք. Սուրբ, Աստուած, Հզօր, Անմահ, Խաչեալ, Օրհնեալ, ողորմեաց մեզ": Ես կը ճանչնամ զԱպիկուռա փիլիսոփան, իբրեւ այնպիսի մը, որ նրբատես չէ խօսքիս մեկնութեան եւ նշանակութեան, թէ խաչեալն եւ ի Մարեմայ Կուսէ ծնեալն մարդացած Աստուած եւ սուրբ, անարատ, հզօր, անմահ Աստուած է: Եթէ այս այսպէս է, այն ատեն իւր կողմանէ նենգութիւն եւ պատրանք եւ կեղծիք կայ հանդէպ միամիտ եւ պատուաւոր մարդկան ի թիւս հաւատացելոց, որպէս զի անոնք զինքը յայտնի նեստորական չհամարին, որ Նեստորի հետքերուն

1 Այսինքն՝ վիճաբանութիւնը տեղի ունենալէն յառաջ, որպէս զի ներկաները յառաջուընէ զինուած պատրաստուած ըլլան:

կը հետեւի եւ անոր հաւատքն ըստ իւր ոճին կը յերիւրէ, այնու որ ինքը խաչեալն, ի Մարոյն ծնեալն կը նկարագրէ հզօր յաւիտենական Աստուած, եւ ինչ որ դեռ ստախօսն եւ մոլորեցուցիչն Նեստոր եւ իւր հետեւողներ կը խոստովանին„:

Աբու-Ռայթայի խօսքերէն յայտնի կը տեսնուի թէ այս թուին Թէոդորոս Ապիկուռա Աշոտի արքունիքը կը գտնուի: Դժբախտաբար նամակը գրութեան թուական չունի: Յիշատակուած սարկաւագն Եղիան հայ մատենագիրներու նման է: Իր Հայաստան գալու մասին ակնարկութիւններ պահուած են հայ մատենագրութեան մէջ. Վարդան (էջ 78) կը գրէ.

“Յաւուրսն յայնոսիկ գայր եպիսկոպոս մի Ապիկուռա անուն առ Աշոտ, եւ ջանայր դարձուցանել զնա [յաղանդն] Քաղկեդոնի. զոր լուեալ Բուրեա ոմն վարդապետ ի Միջագետս, առաքէ զսարկաւագն Նանա, որոյ եկեալ մարտնչի ընդ Ապիկուռայ, եւ յաղթէ նմա զօրութեամբ... եւ հալածէ զնա իշխանն, եւ հաստատի եւս առաւել ի հաւատս Ս. Գրիգորի„:

Այսպէս ունի նաեւ Մխիթար Այրիվանեցի (էջ 68), իւր ժամանակագրութեան մէջ, ընդ մէջ ամացն 801/821.

“Եպիկուռայ ջանայր զԱշոտ իշխանն քաղկեդոնիկ առնել. իսկ Բուրէա վարդապետն առաքեաց զՆանան սարկաւագն իւր, որ յաղթեաց Եպիկուռայ եւ մեկնեաց զԱւետարանն Յովհաննու„:

Աբու-Ռայթա առանց տարակուսի նոյն է Բուրէտ վարդապետին հետ[1], այսպէս սեղմեալ ձեւի մէջ։ Թէ Վարդան ինչ աղբիւրէ գիտէ, յայտնի չէ. բայց Մխիթար իւր տեղեկութիւնները կը քաղէ Վարդանէն։ Յամենայն դէպս պահուած էր հայ գրականութեան մէջ այս թղթակցութեանց մասին գրաւոր աւանդութիւն։

Այս դէպքը մանրապատում կ՚աւանդէ նաեւ Դիոնեսիոս Թէլ Մահրէ առ Միքայէլի Ասորւոյ, այսպէս.

Յունաց 1125 թուականին (812/813) Խառանի մէջ Թէոդորիկոս անուամբ եւ Պուգգալա[2] մականուամբ Եդեսացի քաղկեդոնական աղանդաւոր մը եղաւ, որ կարճ միջոց մը Խառանի եպիսկոպոս եղած էր, բայց իրեն դէմ յարուցուած ամբաստանութեան մը համար Անտիոքի (ուղղափառ) պատրիարքէն՝ Թէոդորետոսէ (785—812) վար առնուած էր։

---

1 Այսպէս նոյնացուցած էր արդէն 1906ին Goussen ի թերթին Theologische Revue, էջ 150. Հմմտ. Graf, անդ էջ 18, ծն. 1.

2 Այսպէս Puggālā ըստ H. Goussenի Theologische Revue, 1906, էջ 149. Chabot կը կարդայ Pyglā. Մարկուարտ Պուգղա. ժամանակագրութեան արաբերէն թարգմանութիւնն al-faġal (F. Nauի Revue de l'Orient Chrétien. 2me Série, tome 1, p. 103). Ապու կուռա յորջորջումը այս կերպարանափոխութիւնն կրած է Միքայէլի քով հաւանօրէն ծաղրական իմաստով. Յակոբիկեան պատրիարքն այսպէս ծռած է անունն՝ Ապիկուռայի անձին բիծ գնելու համար. եւ արդէն ամբողջ պատմութեան ընթացքին կը նկատուի անոր մոլեռանդութիւնը։ Puggālā կը նշանակէ բողկավաճառ. Հմմտ. Graf, անդ, էջ 19.

Ասիկա նորոգեց Մաքսիմոսի վարդապետութիւնը եւ կ'աշխատէր քաղկեդոնականներու եւ Ուղղափառներու մէջ հետեւորդներ գտնել։ Որովհետեւ քաղկեդոնականներու մէջ յաջողութիւն չունեցաւ, անոր համար Աղեքսանդրիա անցաւ. եւ որովհետեւ իմաստակ մըն էր եւ հեթանոսներու հետ կը վիճաբանէր եւ սարակինոսներու (արաբերէն) լեզուին հմուտ էր, պարզամիտներէն կը սքանչացուէր։ Եւ երբ Աղեքսանդրիա ալ բախտ չունեցաւ, Հայաստան գնաց։ Եկաւ Աշոտ պատրիկին եւ առաջին տեսութեան իսկ մոլորեցուց զանիկա եւ (ասիկա) միտեցաւ անոր։ Այն ատեն Կիրակոս (յակոբիկեան) պատրիարքը (793—812) Մծբնայ Նոննոս սարկաւագապետը ղրկեց (Հայաստան, Աշոտին), անոր հերետիկոսական կարծիքները խայտառակելու համար, որպէս զի չըլլայ թէ Հայերը մոլորեցնէ։ Երբ անիկա (Նոննոս) հասաւ, տեսաւ որ Աշոտ արդէն Պուգգալայի հերետիկոսութեան միտեալ էր։ Աշոտ կը խորհէր թէ Նոննոս՝ այդ երիտասարդը, չէր համարձակեր հակաճառել կամ նոյն իսկ երեւալ Պուգգալայի, անոր բարձր համբաւոյն պատճառաւ։ Իսկ երբ Նոննոս խնդրեց վիճել Պուգգալայի հետ, վերջինս մերժեց, պատճառ բերելով թէ եպիսկոպոսի մը վայել չէ երիտասարդի մը հետ հակաճառել, վասն զի կը վախնար թէ կը խայտառակուի։ Սակայն Աշոտ ստիպեց զինքը. եւ առաջին գումարման իսկ կործանեցաւ, երկրորդ տեսութեան պատասխան չկրցաւ տալ եւ պար-

տուեցաւ. եւ յայտնի եղաւ թէ Ս. Գիրքը կարդացած չէր, եւ ոչ ալ սրբոց իմաստութիւնն ուսած էր, այլ սոփեստներու գիտութիւնը միայն ունէր։ Ելաւ եւ շփոթահար հեռացաւ. իր վրայ կատարուեցաւ այն մարգարէական խօսքը, որ սինագոգի համար կ'ըսէ (Երեմ. Բ. 36). «Ինչպէս որ խայտառակուեցար Եգիպտոսէն, այսպէս ալ պիտի խայտառակուիս Ասորեստանէն»։ Երբ Պուգգալա վերջապէս փախաւ Հայաստանէն, Աշոտ պատրիկը եւ իր որդիները Նոննոս սարկաւագապետը պատուով պահեցին իրենց քով եւ անոր հետ շատ լաւ էին։ Այս իմաստունը զԱշոտ եւ անոր որդիները եւ սոնց ձեռքով բոլոր Հայերն ոչ միայն մոլորութենէ եւ երկաբնէութենէ ազատեց, հապա նաեւ Յուլիանոս երեւութականի մոլորութենէն, որով անոնցմէ շատերը մոլորած էին այն միութենէն ետքը, զոր Աթանաս եւ Յովհաննէս (Օձնեցի) կաթողիկոսը յառաջ բերած էին[1]։

Դիոնեսիոս Թէլ Մահրէի այս տողերը կուգան աւելի լուսաւորելու խնդիրը։ Դարձեալ 812 թուականը կը ճշդուի իբրեւ ժամանակ Ապիկուռայի եւ Նոննայի Հայաստան գալուն։ Որովհետեւ Նոննա Կիրակոս պատրիարքի օրով Հայաստան եկած է, այս չի կրնար ի հարկէ պատճառ նկատուիլ թէ նաեւ առաքողը պա-

1 Michel le Syrien, Chronique, ed. J. B. Chabot, t. III, p. 495—497. Հմմտ. Հատուածս Յ. Մարկուարտ, Հայ Բագրատունեաց ծիւղագրութիւնը. թրգմ. Հ. Մ. Հապոզեան, Վիեննա 1913, էջ 31—32։

տրիարքն եղած ըլլայ, քանի որ Աբու-Ռայթա յայտնապէս կը վկայէ թէ ինքն է ղրկողը:

Ապիկուռայի եւ Նանայի վիճաբանութեան մասին ունինք կարեւոր վկայութիւն մ՚ալ Նանայի Յովհաննու Մեկնութեան յառաջաբանին մէջ, ուր կը գրէ հայ թարգմանիչը (էջ 5).

«Քանզի այր ոմն սարկաւագապետ գոլով Նանայ անուանեալ, յոյժ հմուտ եւ վարժ ասորի դպրութեան, ստացեալ բոլորիցն առաքինութեան, պարկեշտ վարուք, մաքուր առ ամենայն մարմնական հեշտութիւնս, աղբիւրաբար ընկալեալ զշնորհս վարդապետութեան ի հոգւոյն ուղղափառ հաւատոյն որ ի Քրիստոս. որ եւ յանդիմանեալ զոմն եռետիկոս, զայր պերճաբան եւ իմաստասէր, վանեալ հալածական անէր յաշխարհէս Հայաստանեաց. որ երբեմն խոտորնակս ուսուցանէր, յերկուս բաժանելով զՔրիստոսի զանբաժանելի միաւորութիւնն, որ յետ անքակ եւ անշփոթ միաւորութեան: Եւ հաստատէ վերստին զնոյն ուղղափառ որ ի Քրիստոս դաւանութիւնն, մի յերկուց բնութեանց խոստովանել. զաստուածականսն՝ բնութեամբ. իսկ զնուաստականսն՝ կամաւոր յանձնառութեամբ»:

Հ. Զրաքեան, որուն անծանօթ մնացած են Ապիկուռայի անձնաւորութիւնն եւ իր մասին եղած այս մանրամասնութիւնները, նոյնացուցած է զԱպիկուռան Սահակ Մռուտ եպիսկոպոսին հետ (Զրաքեան, էջ ԺԲ—ԺԳ), «որ ըստ աւելաձայնութեան՝ Ապիկուրէշն կոչիւր»

(Աստղիկ, էջ 158), «որ գրեաց պատասխանի թղթոյն փոտայ Յունաց պատրիարքին, լի իմաստութեամբ եւ գիտութեամբ» (անդ)։ Զինքը կը յիշէ եւ Վարդան. «Այսուքիկ ի թղթոյն փոտայ սակաւ ինչ գրեցաւ. որոյ գրեաց պատասխանի Սահակ Մռուտն կոչեցեալ, որ եպիսկոպոս էր Տայոց ի յԱշունիքն. եւ հալածեալ անտի վասն հաւատոց, եկն ի Հայս առ Աշոտ» (էջ 85)։ Բայց յայտնի է որ «Եպիկուռա» եւ «Ապիկուրէշ» իրարու հետ պարզ հեռաւոր նմանահնչութիւն ունին եւ նոյնութեան վրայ խնդիր չի կրնար ըլլալ։ Միւս կողմանէ պատմութիւնն կը վկայէ որ Ապիկուրէշ Տայքէն հալածուած է միայն հակաքաղկեդոնական վարդապետութեան համար, մինչ Եպիկուռա պաշտպան էր Քաղկեդոնականութեան (հմմտ. եւ Revue des Etudes arméniennes I, p. 441).

Դանա[1] ասորի սարկաւագապետս առանց տարակուսի նոյն անձնաւորութիւնն է այն Դոննոս Մծբնացի սարկաւագին հետ, որուն մասին Rubins Duval կը գրէ, La litérature syriaque, Paris, 1906, էջ 390, հմմտ. Զրաքեան, անդ. էջ ԺԵ—ԺԶ)։ «Դոննոսի՝ Մծբնայ սարկաւագապետին՝ գրուածները բովանդակուած են Բրիտանական Թանգարանին Թ. 14.594 ձեռագրին մէջ։ Գրութեանցը մէջ գլխաւորն է Թուղ-

---

1 Թէ ինչ հիմամբ Հ. Ալիշան (Հայապատում, էջ 266 ծն. 5) «որ է Յովհաննէս» կը ստուգաբանէ, ինձ անծանօթ է, բայց յամենայն դէպս անհիմն է։

մաս Մարգացւոյ[1] դէմ հակաճառութիւն մը՝ զոր գրեց Նոննոս բանտի մէջ, ուր դրած էր զինքը Մծբնայ կառավարիչը։ Միւս աշխատութիւնները վարդապետական խնդիրներու վրայ թղթակցութիւններ են։ Ըստ Բարհեբրէոսի[2], Նոննոս մէկն եղած է ամբաստանողներէն զՓիլոքսենէս կամ զՂազար որդի Սաբգայի՝ Պաղտատու եպիսկոպոսը, որ իր աթոռէն վար ձգուեցաւ 829ին, ուրեմն Նոննոս Թ. դարու առաջին կէսին կ'ապրէր»։

Նոննոսի բանտարկութիւնը կը յիշատակէ նաեւ Կիրակոս Գանձակեցի, երբ կը գրէ (էջ 44)։

«Եւ զսարկաւագ ոմն ասորի՝ անուն Նանան վասն համբաւոյ վարդապետութեան ըմբռնեալ ածին առաջի Ջաբրին. եւ նա խոստովանեցաւ համարձակութեամբ զՔրիստոս. եւ տանջեալ զնա եւ ի բանտն արգել արարեալ յոլով ժամանակս՝ յետոյ արձակեցաւ խնամօքն Աստուծոյ. որ եւ գրեաց զՄեկնութիւն աւետարանին Յովհաննու լուսաւոր բանիւք»։ Այսպէս նաեւ Վարդան (էջ 82) «որ ի մահ մերձեցաւ (Նանա) ի Ջափրայ վասն հաւատոյ եւ տեսլեամբ արհաւրաց արձակեցաւ»։

Այս տեղեկութիւնք յամենայն դէպս կապ չունին ասորական գրականութեան մէջ պա-

---

1 Թովմաս Մարգացի Բէթ-Գարմայի նեստորական եպիսկոպոսն եւ մետրապոլիտն էր, որ ծաղկեցաւ Աբրահամ եւ Թէոդոսիոս նեստորական պատրիարքներու օրով իբր Թ. դարու կէսին. Հմմտ. Ասեմանի Bibl. Or., հատ. Գ., էջ 463 եւ 617։

2 Ժամանակագր. Եկեղ. Ա. էջ 363։

հուած աւանդութեան հետ. մինչ հոն բանտարկութիւնը Մծբնայ կառավարչէն տեղի կ'ունենայ, անշուշտ ի Մծբին, հոս Ջափր ամիրապետին բռնութեանց մասին խօսք կ'ըլլայ, որ բանտարկեց Հայոց իշխաններն եւ ուրիշ քրիստոնեաներ Բաղտատի եւ Սամառայի մէջ: Կիրակոս եւ Վարդան ըստ ամենայն հաւանականութեան իրենց աղբիւր ունեցած են Յովհաննու Մեկնութեան յառաջաբանը այն ձեւին մէջ, ինչպէս հասած է մեզի. ուր ստուգիւ կը խօսուի բանտարգելութեան մը մասին, բայց շատ մութ խօսքերով: Այս պարագան Կիրակոս եւ Վարդան մերձեցուցած են Նանային, ինչպէս իրենցմէ շատ վերջը Նաեւ Չրաքեան: Ինչպէս քիչ վերջը պիտի տեսնենք, Յառաջաբանին խօսքերը կը հային Բագարատ Բագրատունւոյ բանտարգելութեան մասին. ուստի եւ Նանայի Նկատմամբ այսպիսի ենթադրութեան համար առ այժմ կռուան չկայ հայ մատենագրութեան մէջ:

Նանա հաւանօրէն երկար չմնաց Հայաստան: Վարդանի այն տեղիքն, ուր կ'ըսուի թէ Աշոտ իշխանաց իշխան 869 թուին Շիրակաւանի մէջ ժողով մը գումարեց եւ "էր անդ եւ սարկաւագն Ասորւոց Նանա„ (էջ 82), անհիմն կ'երեւայ: Վարդան քաղած է տեղեկութիւնս փոտի առ Հայս գրած նամակին կից՝ Նիկիոյ Վահան եպ.ի Դաւանութեան սկիզբը դրուած ծանօթութենէս.

"ՅԺԱ. Թուականութեան Հայոց (862) առաքեաց Փոտ Կոստանդինուպոլսի հայրապետ

զՎահան Նիկիոյ արքեպիսկոպոս ի Հայս առ Զաքարիա Հայոց Մեծաց կաթողիկոս, [որ եւ] արար ժողով ի Շիրակաւան զեպիսկոպոսաց բազմաց եւ զկրօնաւորաց առաջի Աշոտոյ Հայոց սպարապետին . . . անդ էր եւ Նանան ասորի սարկաւագ մեծ եւ հռչակեալ փիլիսոփայ„ (Հմտ. Марръ, էջ 196)։

Երբ Նանա տակաւին Աշոտ պատրիկի արքունիքը կը գտնուէր, ինչպէս Դիոնեսիոս Թէլ Մահրէի տողերէն կը տեսնուի, զինքը “Աշոտ պատրիկը եւ անոր որդիները պատուով պահեցին„. եւ թէ “զԱշոտ եւ անոր որդիները մոլորութենէ . . . ազատեց„։ Աշոտի որդիներուն մէջ հոյակապ հանդիսացաւ մանաւանդ Բագարատ Բագրատունի, որ ապա Տարօնի հրամանատար եւ իշխան իշխանաց Հայոց„ (Յովհ. Կաթ., էջ 115, տպ. Տփղիսի) կարգուեցաւ եւ երբ 835ին Ալմութասիմ ամիրապետէն նշանակուեցաւ պատրիկ Հայոց (Չամչ. Բ, 430. Daghbaschian, էջ 5—6)։

Ասիկա, նոյն 812—813 թուին հաւանօրէն, խնդրեց Նանայէն Յովհաննու Աւետարանին կարճառօտ մեկնութիւն մը, ինչպէս կը պատմուի նոյն Մեկնութեան յառաջաբանին մէջ. զոր յանձն կ'առնու Նանա մեծ դժուարութեամբ, եւ վերադառնալով Միջագետք (Մծբին), հին ասորական Մեկնութիւններէն կը խմբագրէ բաղձացուած աշխատութիւնը — յընթացս երեք տարիներու, այն է 813—816, արաբերէն լեզուաւ, եւ կ'ընծայէ Բագարատայ։ Այս

մասին յաճախ ակնարկութիւն կ'ընէ ուղղելով խօսքն Բագարատայ. «այլ դու ընդ սիրոյն հանգամանս եւ զիշխանական հրամանսդ շարայարեցեր (էջ 4) կամ «առընթեր եւ զիշխանական հրամանսդ ի վերայ ածեր (էջ 4)։ Կը դրուատէ իշխանին իմաստասէր բարքն «որ այդքան յօգնահանճարս գտար ի յետին ժամանակիս առ խուզմունս իմաստիցն խորս... որ այդքան պատուես զիմաստութիւն, մինչեւ յաղքատաց եւ ի նեղքեւելոց եւս որսալ ախորժես» (էջ 3)։ Նա հմուտ է իմաստութեան եւ ճոխ ծագմամբ. «...որում ոչ անհմուտ եւ զքոյդ գիտեմ ճոխութիւն, զոր յաստեացս բաղարկեալ ունիս հայրենական պերճանօք յղփացեալ» (էջ 3)։

Հեղինակը հակառակ սիրալիր յորդորանաց՝ չէ համարձակած ձեռնամուխ ըլլալ աշխատութեան, զոր գեր ի վերոյ համարած է իր ուժերէն եւ փորձած է ճողոպրել ինքզինքը որ եւ իցէ կերպով։ Բայց ի վերջոյ կը պարտուի «իշխանական հրամանաց» առջեւ. թէեւ «բազում աղաչանս առ քոյոյ տէրութիւնդ արկանեմ, առ հրաժարումն յայդքան ծայրագոյն իրագործութենէ», բայց «անշահ եւ անօգուտ եղեալ ի քոյոյդ ներող լսողութենէ... բուռն հարից զշնորհաց սուրբ Հոգւոյն...» (էջ 4—5)։ Ուրիշ տեղ նոյն միտքն կը յայտնէ այսպէս. «Ոչ գտի հնարս ինձ պատճառելով ըստ նախկի զաղափարութեան՝ հրաժարել եւ ի բաց դառնալ սակս անձին տկարութեան» (էջ 4)։

Ի մէջ կը բերեմ Յառաջաբանին խօսքերը թարգմանչի գրչէն (էջ 5—6)։

“Զսա (զՆանա) թախանձեալ մեծին Բագրատայ, որ ի տանէն Բագրատունեաց, այր (որ) յոյժ բարձրագոյնս ստացաւ զանուն, որ եւ պետ իշխանաց երբեմն ի բարբարոս ազգէն Հագարացւոց անուանեալ, որպէս թէ այնու զնա առաւել պատուի արժանաւոր վարկուցեալ... ստանալ նմա (Բագարատայ) զմեկնութիւն սրբոյ աւետարանին Յովհաննու։ Որոյ (Նանայի) փոյթ ի մտի եդեալ՝ վաղվաղակի ի ձեռն ուժգին պահոց եւ աղօթից, ջան ոչ փոքր յանձին բերէ՝ շրջագայութեամբ երից ամաց՝ յածեալ ընդ անապատս (վանորայս) յերկրին Միջագետաց, ուր եւ յուսայր իսկ զգիւտ գրոյ ուղղափառ վարդապետացն. եւ հանդիպեալ խնդրոյն առաջնորդութեամբ վերին խնամոցն, շարադրէ համառօտաբար ի բազմաց հաւաքելով՝ մի ըստ միոջէ ոճով զՄեկնութիւն Յոհաննեան սրբոյ Աւետարանին, փոխաբերելով յասորի լեզուոյն ի հագարական լեզու”։

Բագարատ Բագրատունի հաւանօրէն ստացաւ Մեկնութիւնս, արաբերէն լեզուաւ գրուած, 816—817 թուին։ Այնուհետեւ անձնատուր եղաւ անիկա քաղաքական գործերու։ Այս մասին յաջորդիւ աւելի ընդարձակ։

## 2.

Աշոտ Բագրատունի, Սմբատ սպարապետի որդին, կոչուած Քաջ կամ Մսակեր, Պատրիկ Հայոց (805/806—825/26), ունեցաւ 4 ուստր՝ Բագարատ, Սմբատ, Դաւիթ, Սահակ, Մուշեղ, եւ մէկ դուստր՝ Հռիփսիմէ, որ Վասպուրականի տիրոջ կինն եղաւ (մայրն Աշոտ իշխանին)։

"Աշոտի որդիք„ գովութեամբ կը յիշուէին Դիոնեսիոս Թէլ-Մահրէէն իբրեւ հետաքրքրուողներ կրօնական հարցերով, որոնք մեծապէս նպաստած են Նոնայի՝ Ապիկուռայի հետ ունեցած վիճաբանութեան ժամանակ։

Աոնց մէջ երիցագոյնն էր Բագարատ, որ հօրը մահուընէն ետքը (825/26) իշխանութեան յաջորդն եղաւ (Մարկուարտ, էջ 66—67) եւ անուանուեցաւ "պետ իշխանաց ի բարբարոս ազգէն„ (Յուքք. 5—6), այսինքն Ամիրապետէն, այն է "հրամանատար եւ իշխան իշխանաց Հայոց„ ինչպէս կը կոչէ Յովհ. Կաթ. (էջ 115)։ Բագարատ կ՚իշխէր Տարօնոյ, որ բաժին ինկած էր Բագրատունի տան, այս պատճառաւ ալ Թովմ. Արծրունի (էջ 107) զինքը "իշխան Տարօնոյ կը կոչէ, "վասն զի ունէր յայնժամ (835) զգլխաւորութիւն բարձակցութեան իշխանաց Հայոց„ (անդ)։

Բագարատ իւր այս բարձրութեան մէջ սիրող էր գրականութեան եւ կը հետաքրքրուէր

կրօնական եւ եկեղեցական խնդիրներով։ Մուշի մէջ մեծածախ եկեղեցի մը կը շինէ Ս. Փրկիչ անուն (Թովմ. 12)։ Անշուշտ ինքն էր առաջինն Աշոտի որդիներու մէջ, որոնք հետաքրքրուած էին Ապիկուռայի եւ Նանայի վիճաբանութեամբ եւ սէր եւ յարգանք ցուցուցած ասորի սարկաւագապետին (ըստ Դիոն. Թէլ-Մահրէի)։ Յովհ. Կաթողիկոս կը պատմէ թէ իբր 841ին երբ Ովայեցի Յովհաննէս կաթողիկոսի (833—855) դէմ գրգռուած էր կղերականաց մէկ մասն, անոնց համակարծիք ընծայեց ինք զինք նաեւ Բագարատ եւ գահընկէց ըրաւ Կաթողիկոսը, թէեւ ապա Սմբատ սպարապետ, Գրիգոր Սիւնեաց տէր եւ այլ եւս նախարարք միջամտելով — առանձին ժողով մը գումարեցին եւ կաթողիկոսն կրկին հաստատեցին աթոռին վրայ հակառակ Բագարատայ հաւանութեան, որ “եւս առաւել վասն այնորիկ զչարեալ լինէր, զի առանց կամաց նորա եղեւ հայրապետին հաստատութիւն եւ որ (տպ. ուր) ոչ ընկալեալ զնա, խնդրէր ժամ դիպող՝ զայլ փոխանակ նորա կացուցանել” (անդ, 116/17)։

Բայց առ այս՝ ժամանակ չունեցաւ Բագարատ, որովհետեւ օր աւուր սկսաւ բարդանալ քաղաքական դրութիւնը։ Ջաֆր (Ջաֆար, 847—867) ամիրան պատերազմ սկսաւ Տարօնի եւ Վասպուրականի տէրերու դէմ։ Ի սկզբան թէեւ յաղթութիւնները Հայոց կողմը եղան, բայց այս աւելի ի վնաս յաղթողին։ 851ին, Հայոց 3 թուին, ըստ Յովհ. Կաթողիկոսի եւ

Ասողիկի՝ Ապուսէթ, բայց աւելի ճիշդ Յովսէփ ոստիկանն Ջաբրայ (ըստ Թովմ. Արծր. 118) զԲագարատ նենգութեամբ իրեն կը հրաւիրէ Խլաթ քաղաքը. եւ «ըմբռնեալ զնա եւ զամենայն ազգատոհմն նորա ի տանէ Բագրատունեաց եւ կապեալ երկաթեղէն կապանօք՝ խաղացոյց ի Սամառա»։

Թովմա Արծրունի այսպէս Բագարատի հետ անոր բովանդակ տունն Սամառա գերի տարուած կը նշանակէ. բայց այս ուղիղ չէ. Բագարատի որդիները գերի վարուեցան քիչ յետոյ Բուղայէն. Յովհ. կաթ. 119 կը գրէ. Բուղայ գերի կը բռնէ «զիշխանն Աշոտ եւ զեղբայրն նորա զԴաւիթ» «այլ եւս իւրեանց ազգակցօք» եւ «առ ամիրապետն խաղացուցեալ առաքէր հանդերձ հարազատութեամբքն իւրեանց» ի Սամառա։ Նոյնպէս գրէ եւ Ասողիկ, էջ 107. «Բուղա եկեալ ի Տարօն կալաւ զերեսին որդիսն Բագարատայ»։

Բագարատի որդւոց թիւը Յովհ. կաթողիկոս երկու կը համարի, Աշոտ եւ Դաւիթ, բայց Ասողիկ երեք գրէ. մեզի անծանօթ կը մնայ երրորդին անունը. Նոյնպէս թէ չունէ՞ր չորրորդ մ'ալ։ Դանայի Յովհաննու մեկնութեան յառաջաբանը կ'ենթադրէ չորրորդ մ'ալ «առ ի յօգնականութիւն չորից ուստերաց[1]» (տես վարը, տող 95)։

[1] Կարդա՞լ արդեօք «գ. ուստերաց», ենթադրելով դ եւ գ տառերու շփոթութիւն։

գեբրի վարուած Հայ նախարարները շատ զրկանքներու ենթարկուեցան ի Սամառա։ Ամիրապետն բռնաբար ստիպեց զանոնք ուրանալ քրիստոնէական Հաւատքն եւ ընդունիլ մաՀմեդականութիւն։ Շատերը քաջութեամբ մնացին Հաստատուն. ոմանք մարտիրոսացան. մաս մ՚ալ դժբախտաբար տկարացաւ եւ ուրացաւ ճշմարիտ Հաւատքը (Հմմտ. Թովմ. Արծր. 152—162). վերջիններուս թուին մէջ էր նաեւ Բագարատ։ Յառաջաբանին Հեղինակը կը գրէ. "Յորժամ ըմբռնեալ լինէր ի Հագարական ազգէն մեծն եւ երեւելին այն իշխանն Հայոց (Բագարատ), վասամիտն, ... ոչինչ արուութիւն քաջութեան այնուՀետեւ ըստ արժանի իւրոյ մեծութեանն երեւեցոյց, այլ երագապէս ի վայր Հոլովեալ յաստուածային Հաւատոցն, զոր ունէր, գլորեցաւ վաղվաղակի ի վիՀ անկանգնելի կորստեանն։ Եւ ի բաց ընկենլով զգրոշմ ուխտի ճշմարիտ Հաւատոցն, սուգ անՀնարին բոլոր աշխարՀիս Հայաստանեաց Հասուցանէր„։ Կը յաւելու գրիչն՝ թէպէտ եւ Հրշտակացաւ ի լսելիս մեր, ի խորութեան սրտին Հաստատուն պաՀելով ճշմարիտ Հաւատոյս դաւանութիւնն„ (էջ 6—7)։

Բագարատի այս կեղծս ի կեղծս ուրացութիւնը թէեւ մասամբ սփոփանք պատճառած է Յառաջաբանի Հեղինակին, բայց ուրիշները դառնութեամբ միայն լսած են, մանաւանդ երբ իւր ուրացութիւնը ջատագովել փորձած է Բագարատ։ Այս նկատմամբ կը գրէ Թովմ. Արծր. 162 եւ շար. "Վասն Հերձուածոյն Բագարատայ

*Բագրատունւոյ, որ ի վերայ ուրացութեան զՔրիստոս՝ յաւել եւ զայս ի կործանումն բազմաց։... Ասաց Բագարատ յուրացութեանն իւրում, առ վտանգի նեղութեանցն՝ ուրացութիւնն ոչինչ վնասէ, եթէ ի սրտին գաղտնի պահէ զխոստովանութիւնն հաւատոց»։ Արծրունի յաջորդ էջերու մէջ կը ջանայ հերքել այս տեսութիւնը։*

*Այս ամէնէն կը տեսնուի թէ Բագարատ աստուածաբանական-կրօնական խնդիրներէն կը հետաքրքրուէր մեծապէս։ Ասոր վկայ է Նաեւ Յառաջաբանին հեղինակը, որ կը գրէ (էջ 6). «որ եւ զբաւընդակն յանձին բերէր ունել զգիտութիւն որ ի Քրիստոս հաւատոցն. որ եւ Նախանձ ոչ փոքրագոյն վասն Քրիստոսի միշտ յանձին կրէր՝ կշտամբել եւ յանդիմանել զհերձուածողացն դասս։»*

*Հայոց պատմութիւնը կը լռէ այնուհետեւ Բագարատի մահուան մասին։ Բայց նա յամենայն դէպս չվերադարձաւ Հայաստան։ Իւր որդին Աշոտ գերութենէն դարձին եղաւ «Կիւրապաղատ իշխան Հայոց» Տարօնի վրայ (Թովմ. Արծր. 218)։ Իսկ Դաւիթ ամուսնացաւ Դերենիկի դստեր հետ (անդ, էջ 220)։*

*Իւր եղբայրն Սմբատ-Ապլաբաս, որ Բագարատի գերի երթալէն (852) յառաջ Հայոց սպարապետ էր, Հարուն ար Ռաշիտի (786—809) ժամանակ պատանդ գնաց. միայն 826/27ին ազատ արձակուեցաւ։ Ասիկա եղաւ ապա՝ Բագարատի եւ անոր որդւոց գերի երթալէն ետքը՝*

*Բագրատունի տան գլխաւորն եւ իշխանութեան ամէնէն աւելի իրաւունք ունեցողը (Մարկուարտ, էջ 65—67)։ Բայց ոչ երկար ժամանակ. 855ին Ամիրապետին երթալով՝ Սամառա պահուեցաւ։*

*Այս տեղեկութիւնները գիտմամբ մանրապատում յառաջ բերինք, լուծելու համար կարեւոր խնդիր մը՝ Նանայի Մեկնութեան թարգմանութեան ժամանակը։*

*Նանա, ինչպէս տեսանք, իր Մեկնութիւնն յօրինած էր արաբերէն լեզուաւ՝ Միջագետք, յընթացս երեք տարիներու, այն է* 813—816։

*Իսկ այս Մեկնութիւնը առաքեցնա Հայաստան Բագարատի ի վայելումն՝ հաւանօրէն* 816/17*ին։ Բագարատ կարդաց զայն։ Մեկնութիւնս «յետ ժամանակի» կ'անցնի «ի ձեռն պատահման իմն» առ տէր Սմբատ Բագրատունի։ Այս պատահած կրնայ ըլլալ միայն* 851—854 *շրջանին, Բագարատի գերութենէն ոչ շատ վերջը, վասն զի այս գերութիւնը կ'իյնայ «ի մերումս իսկ ժամանակի», եւ դարձեալ Սմբատի Սամառա երթալէն* (855) *յառաջ, քանի որ այս մասին թարգմանիչը որեւիցէ ակնարկութիւն չ'ընէր։*

*Սմբատ Բագրատունի կամ անձամբ հետաքրքրուելով Նանայի Մեկնութենէն եւ կամ ի յորդորանս իւր եղբօր՝ Բագարատայ, կը հրամայէ «փութով ի հագարացւոցն ի հայկական վերաբերել լեզու, ոչինչ ներելով իմոյ տկարութեանս» կ'ըսէ թարգմանիչը* (*էջ* 7), *որ կամայ ակամայ կը ձեռնարկէ ի գլուխ հանել հրամանը։*

Ցառաջաբանն ամբողջապէս ձօնուած է Սմբատ Բագրատունւոյ (հմմտ. էջ 4. «ի ձեռն սիրոյն մտերմաբար աղերսեցեր, աստուածահաճոյ վարուք ո՛վ տէր Սմբատ Բագրատունի.» այս միտքը կը կրկնուի նաեւ Ա. մասին վերջաբանութեան մէջ, ուր կ'ըսուի. էջ 246 «այլ եւ Սմբատ Բագրատունի եւ Մարեմ Սիւնեաց տիկին որ զգիրս սուրբս թարգմանել հրամայեցին, զնոյն հայցեն յիշել»)։ Այս տեսակէտով կը գրէ հիներէն մէկն ալ. «թվ. Յ (851) Նանա սարկաւագ ասորի մեկնեաց զԱւետարանն Յովհաննու ի խնդրոյ Հայոց իշխանին վկային Քրիստոսի Սմպատայ» (Կանայեանց՝ Ցուցակ հայերէն ձեռագրաց Ներսէսեան հոգեւոր Դպրանոցի, էջ 33), ուր թուականն 851 ուղիղ կու գայ թարգմանութեան ժամանակի, բայց ոչ Նանայի՝ Մեկնութեան հեղինակի համար. դարձեալ Սմբատ աղերսողն է ոչ թէ հեղինակութեան այլ թարգմանութեան։

Այսպէս մեր համոզմամբ Նանայի Մեկնութեան թարգմանութիւնն կատարուած է 851—854 շրջանի։

Ցառաջաբանին մէջ կը յիշատակուի Մեկնութեանս «երկիցս» թարգմանութիւն մը, կ'ըսուի թէ «յետ այսորիկ այսպէս եղելոյ՝ հասեալ լինի գանձ գրոյս այսորիկ առ Մարեմ Բագրատունի, Սիւնեաց Տիկին, ի ձեռն Աշոտոյ հաւր իւրոյ մեծ եւ երեւելի տեառն Բագրատունւոյ իշխանաց իշխանի։ իսկ երանուհւոյս Սիւնեաց տիկնոջ փոյթ ի մտի եդեալ վաղվա-

ղակի հրամայեաց երկիցս անգամ փոխաբերել ի հայկական լեզու. (էջ 8)։

Այս հատուածը հիներէն Հ. Չամչեան այսպէս կը հասկնայ (Բ. 705). «Տիկինն Սիւնեաց Մարեմ անուն, դուստր արքային Աշոտոյ (885—890, կինն Վասակայ Գաբուռն կոչեցելոյ) տուեալ զանձն ի ճգնութիւնս եւ ի պահեցողութիւնս՝ եկաց յայնմ հետէ կրօնաւորական կենօք, վարժեալ եւ յուսումն աստուածաշունչ գրոց։ Եւ սմա ի պարգեւս հայր իւր Աշոտ զգիրս մեկնութեան աւետարանին Յովհաննու զոր շարագրեալ էր Նանայ սարկաւագ, եւ այլ ումն թարգմանեալ էր ի հայս հրամանաւ Սմբատայ խոստովանողի՝ հօր Աշոտոյ. այլ տեսեալ տիկինն Մարեմ՝ թէ հայերէն թարգմանութիւն այնր գրոց չէ ընտիր եւ յստակ, եւ միւսանգամ նորոգ թարգմանել զայն ի հայ բարբառ. որոյ ընթերցմամբ մխիթարիւր սիրտ նորա. որպէս գրի ի յիշատակարանս այնր մատենի։»

Չամչեանի ձեռքը միակ աղբիւրն եղած է այս կէտիս մէջ մեր ծանօթ Յառաջաբանը, որուն մտքերն ընդլայնած է միայն ըստ կամի։

Մարիամ (գրուած երկիցս՝ Մարեմ) վերոյիշեալ Սմբատ Բագրատունի իշխանաց իշխանի թոռն էր, դուստրն Աշոտի։ Այս Աշոտ հայ նախարարներու հետ գերի վարուած էր Սամառա. ի դարձին երբ իւր հայրն Սմբատ կանչուեցաւ Ամիրապետին արքունիքը եւ հոն պահուեցաւ († 855) ինքը ժառանգեց հօրը իշխանութիւնը

իբրեւ «իշխանաց իշխան» եւ ապա 886ին հռչակուեցաւ թագաւոր։ Ունէր ասիկա երկու ուստր՝ Սմբատ եւ Շապուհ եւ երեք դուստր, որոնցմէ մին եղած էր կին Գրիգոր Դերենիկի, երկրորդը՝ Գուրգէնի (Յովհ. կաթ. էջ 135, 145, 146). իսկ երրորդը՝ Մարիամ ամուսնացած էր Սիւնեաց տեառն Վասակ Գաբուռի հետ։ Սա հայ տիկնանց մէջ անուանի հանդիսացաւ իւր մեծագործ շինարարութիւններով. 874 թուին շինեց Սեւանի մէջ Առաքելոց եւ Աստուածածնի եկեղեցիները (Օրբել. 127). դարձեալ Շողոգուայ Ս. Պետրոս եկեղեցին, ուր ապա ամփոփուեցան իր նշխարք (Օրբ. 127, 138)։ Իսկ իւր եղբայրն Շապուհ «ի ձեռն քեռն իւրոյ շինէ զփառաւոր տունն Աստուծոյ յանուն Ս. Գրիգորի Լուսաւորչի» 903 թուին. արձանագրութեան մէջ կ'ըսուի. «Ես Շապուհ Բագրատունի՝ Հայոց ասպարապետ, տերանց տէր, որդի Աշոտոյ Հայոց թագաւորի, ի ժամանակս Հայոց թագաւորի մեծին Սմբատայ՝ հարազատ եղբօր իմոյ... մեծափափագ տենչանօք վերակացու եւ տեսուչ առնելով զքոյր իմ Մարիամ՝ Սիւնեաց տիկին յիմում իշխանութեան ի Վանեվանս տուն Աստուծոյ կանգնեալ» (Օրբել. 132)։

Մարեմայ ամուսինը Վասակ Գաբուռ վախճանեցաւ իբր 870ին (Օրբել. 126/27, Յովհ. կաթ. 136. Սիսական, 33 կը նշանակէ 855), թողլով երեք որդի՝ Գրիգոր Սուփան, Սահակ եւ Վասակ։ Իսկ Մարիամ ապրեցաւ դեռ երկար. մեռաւ 910ին ի Միափոր, ուր ապաստանած էր

իւր որդւոց հետ թշնամեաց առջեւ (Օրպել. 138. Միսաքեան 33)։

Այսպէս Մարիամ Նանայի Մեկնութիւնն “ի ձեռն Աշոտոյ հօր իւրոյ մեծ եւ երեւելի տեառն Բագրատունւոյ իշխանաց իշխանի„ կրնար ընդունիլ միայն 855էն ետքը, վասն զի այս թուէն սկսեալ միայն եղաւ անիկա “տէր եւ իշխանաց իշխան„, դարձեալ 886էն յառաջ, քանի որ այս թուին ընդունած էր անիկա թագաւոր տիտղոսը, որ անծանօթ է տակաւին թարգմանչին։ Եթէ նկատենք եւ այն պարագան որ Աշոտ “մեծ եւ երեւելի„ կը յորջորջուի, “երկիցս անգամ„ թարգմանել հրամայելու ժամանակն աւելի սիրով պիտի առաջարկէի 860 թուականը մերձաւորապէս, շնորհելով Աշոտի գոնէ 5 տարուան միջոց “մեծ եւ երեւելի„ հանդիսանալու համար։

Չեմ կրնար ընդունիլ Զամչեանի մեկնութիւնն որուն համաձայն առաջին թարգմանութիւնն “ընտիր եւ յստակ„ չըլլալուն համար երկրորդ անգամ թարգմանել տուած է Մարիամ։ Այս կարծիքը իւրացուցած է նաեւ Սարգիսեան (Dei tesori, p. 25)։

Հ. Զօրաբեան (էջ ժ) կը գրէ. “երկիցս անգամ„ խօսքը կարծեմ հարկ է իմանալ երկրորդ անգամ հրամայուիլը եւ ոչ թէ երկրորդ անգամ թարգմանուիլը„, “վասն զի երկու հրամաններուն արդիւնքով է որ կը համոզուի վերջապէս եւ սիրտ կ՚ընէ թարգմանիչը, խնդրելով որ իբր յանդուգն չմեղադրուի. զայս արդէն

այլուր աւելի որոշ կ՚ըսէ, երբ ի կէս Մեկնութեան կը յիշէ, թէ “Սմբատ Բագրատունի եւ Մարիամ Սիւնեաց տիկին որ զգիրս սուրբս թարգմանել հրամայեցին.„

Ես կը համարիմ թէ առաջին թարգմանիչը հրամանաւ Սմբատայ թարգմանած է Մեկնութեան Ա. մասը մինչեւ ժ գլխուն վերջը. հոս ընդհատած է թարգմանութիւնը վերջաբանով. թերեւս Մեկենասին Սամառա մեկնելուն եւ հոն մնալուն պատճառաւ։ Տարիներ վերջը, երբ Մեկնութեան արաբերէն բնագիրն եւ հայերէն կիսատ թարգմանութիւնը անցած է Մարեմայ ձեռքը, նա “երկիցս անգամ„ հրամայած է թարգմանել մնացած մասը, ԺԱ գլխէն սկսեալ եւ լրացնել։ Տես այս նկատմամբ ինչ որ պիտի ըսենք քիչ յետոյ։

3.

Եթէ ուղիղ են մեր այս տողերը, հարկ է նոյնպէս հասկնալ նաեւ Մեկնութեան Յառաջաբանը, որ խանգարուած բնագիր մը կ՚ընծայէ։ Ես կը նկատեմ հոն երեք գրիչ. ա. Նանայի, բ. առաջին թարգմանչի եւ գ. երկրորդ թարգմանչի։

Յառաջաբանն իր էական մասով Նանայի գրչէն է, առաջին մասն ուղղուած է իբրեւ ընծայական առ Բագարատ Բագրատունի (էջ 1—5). երկրորդ մասը բացատրութիւն

մըն է Մեկնութեան շարժառիթին եւ ծրագրին վրայ։ Հոս (էջ 5) Նանա իւր սկզբնագիր օրինակին մէջ բացատրած էր ընթերցողներուն այն շարժառիթն, որով յորդորուած է ինքը մատենագրելու Մեկնութիւնս. "Եւ արդ պատճեցուք, կը գրէ, զաւրինակ խնդրոյս, թերեւս ի ձեռն աղաւթից լսողացդ՝ առաւելապէս հասցէ ինձ աւգնականութիւն ի վերին շնորհացն„ (էջ 5)․ այս ինքն թէ ինչպէս Ապիկուռայի հետ վիճելու համար եկած է Հայաստան եւ ծանօթանալով Բագարատայ հետ՝ ընդունած է անկէ հրաման յօրինելու Յովհաննու Աւետարանին Մեկնութիւնը։ Մի եւ նոյն ժամանակ հիւսած է Բագարատայ դրուատիքը։ Այս մասը թարգմանիչն ընդլայնած եւ լուսաբանած է մանրամասնութիւններով լուսանցքներու վրայ. հոն տուած է Նանայի գովութիւնը, հաղորդած է մանրամասնութիւններ Բագարատայ գերեվարութեան վրայ եւ պատմած է թէ ինչպէս ձեռնարկած է ինքը թարգմանութեան։ Երկրորդ թարգմանիչը կցած է միայն Մարիամ տիկնոջ յանձնարարութեան մասին յիշատակութիւն մը։

Ընդօրինակողը ջանացած է հիւսել այս լուսանցագրութիւնները բնագրին մէջ. բայց չէ յաջողած իրեն ագուցանել մասերն իրենց պատշաճ տեղերը. եւ այսպէս ստեղծուած է այն թոհ եւ բոհ պատկերը, զոր կ'ընծայէ այժմ տպագիր օրինակը (էջ 5—9)։ Իր կամ թարգմանչին գրչէն կը համարիմ նաեւ "ով տէր

Սմբատ» բացադանչութիւնն, որ Նախնական բնագրին մէջ ըլլալու էր Նանայի գրչէն «ով տէր Բագարատ Բագրատունի»:

Յառաջաբանէն մերձաւոր իմաստ մը դուրս կորզելու համար հարկ է զայն անգամ անգամ կտորել եւ ի նորոյ դասաւորել. զոր ես այսպէս կ'առաջարկեմ համախմբել.

Էջ 5, 8—6, 16. Քանզի այր ոմն... ի հագարական լեզու:

Էջ 8, 15—23. Եւ յետ այսորիկ... բարձրագոյն հաւատս (լուսանցագրութիւն):

Էջ 6, 17—23. Իսկ յորժամ... զհերձուածողացն դասս:

Էջ 7, 15—8, 14. Զորոյ եւ ոչ... Երրորդութեանն:

Էջ 8, 23—9, 5. Վերագոյն ունելով... ժուժկալութիւն հաւատոցն:

Էջ 6, 23—7, 10. Ոչինչ արութիւն քաջութեան... վերաբերել լեզու:

Էջ 7, 10—15. Ոչ ինչ ներելով... բարձրագոյն խորհուրդ:

Էջ 9, 5. Եւ սորա այսպիսի եղելոյ...

Շատ դիւրին է մտադիր ընթերցողին զանազանել լուսանցագրութիւնները եւ բնագրին յատուկ տողերը: Ընդօրինակողն հիւսելով լուսանցագրութիւններն բնագրին հետ՝ ենթարկած է նաեւ բնագիրն թեթեւ փոփոխութեան: Այսպիսի փոփոխութեանց արդիւնք կը

համարիմ օրինակի համար հետեւեալ կրկնութիւնները, որոնք ուշագրաւ են փոքրիկ հատուածիս մէջ.

Էջ 6.

Առաջնորդութեամբ վերին խնամոյն շարադրել համառօտաբար ի բազմաց հաւաքելով մի բան միայն զՄեկնութիւն Յովհաննու Ա. Աւետարանին թարգմանեցաւ յասորի լեզուէն ի հայաբարբառ լեզու:

Էջ 8.

Հրամայեաց երկիցս անգամ թարգմանել ի հայկական լեզու առաջնորդութեամբ վերին խնամոյն յարգարել (յարդարել) համառօտաբար զաստուածային բարձրագոյն հաւատս...:

Էջ 6, 17.

Իսկ յորժամ ընթանալ լինել ի հոգեւորական աչքէն... որ եւ նախանձ ոչ փոքրագոյն վասն Քրիստոսի յանձին կրեր կշտամբել եւ յանդիմանել զհերձուածողացն զաստ:

Էջ 7.

Սա ընթանալ լինել... ի հոգեւորական աչքացն վասն նախանձոյ... որ ի նմանէ բազմափայլ վարդապետութեանն եւ ներհակս միշտ առ աղբերայն:

Էջ 8, 15.

Եւ յետ այսորիկ [illegible] [illegible] հասեալ յինքն զանձ գրոյս...

Էջ 9, 5.

Եւ սորա [illegible] [illegible] մի որ զնեզ...

Աւելի պայծառ ընծայելու համար մեր վերակազմած յառաջաբանը, այս տեղ կը դնեմ խնդրոյ նիւթ եղող մասը ամբողջութեամբ:

## ՎԵՐԱԿԱԶՄՈՒԱԾ ՅԱՌԱՋԱԲԱՆԸ[1]

Էջ 5, 5—6, 17. Եւ արդ պատմեցուք զաւրինակ խնդրոյս, թերեւս ի ձեռն աղաւթից լսողացդ՝ առաւելապէս հասցէ ինձ աւգնականութիւն ի վերին շնորհացն։ Քանզի այր ոմն սարկաւագապետ գոլով՝ Նանայ անուանեալ, յոյժ հմուտ եւ վարժ ասորի դպրութեան, ստացաւղ բոլորից առաքինութեան, պարկեշտ վարուք, մաքուր առ ամենայն մարմնական հեշտութիւնս, աղբիւրաբար ընկալեալ զշնորհս վարդապետութեան ի Հոգւոյն սրբոյ՝ ուղղափառ հաւատոյն որ ի Քրիստոս. որ եւ յանդիմանեալ զոմն եռետիկոս, զայր պերճաբան եւ իմաստասէր, վանեալ հալածական առնէր յաշխարհէս Հայաստանեաց. որ երբեմն խոտորնակս ուսուցանէր, յերկուս բաժանելով զՔրիստոսի զանբաժանելի միաւորութիւնն որ յետ անքակ եւ անշփոթ միաւորութեանն։ Եւ հաստատէ վերստին զնոյն ուղղափառ որ ի Քրիստոս դաւանութիւնն, մի յերկուս բնութեանց խոստովա-

1 Յառաջաբանին այս մասը հրատարակուած է քանի մ'անգամ ինչ ինչ յապաւումներով. հմմտ. Մատենագարան, էջ 620—633, Հայապատում, § 215, Н. Марръ, Арк'аунъ, էջ 11—15 (համեմատութեամբ Էջմիածնի կրկին ձեռագրաց). Նկատի կ'առնունք նաեւ մեր Մատենագարանի օրինակը։ O = Չրաքեանի Օր., W = Մեր Մատենագարանի Թ. 611, M = Մառի բնագիրը։ Կը նշանակենք միայն կարեւոր տարբերութիւնները։

5 Նանա W։ — 7 առաքինութեանց W։ — 11 հաւատոցն W։ — 12 հերետիկոս OW։ — 15 անբաժ OMW։ — 19 գ. յերկուց բ. OW.

նել. զաստուածականն՝ բնութեամբ, իսկ զնուաստականն՝ կամաւոր յանձնառութեամբ։ Զսա թախանձեալ մեծին Թագրատայ, որ ի տանէն Թագրատունեաց, այր ու յոյժ բարձրագոյնս ստացաւ զանուն, որ եւ պետ իշխանաց երբեմն ի բարբարոս ազգէն Հագարացւոց անուանեալ, որպէս թէ այնու զնա առաւել պատուի արժանաւոր վարկուցեալ. զորոյ եւ զանցս անցիցն յիւրում տեղւոջն փոքր ինչ յիշատակեսցուք։

Եւ զի՞նչ իցէ արդեաւք աւրինակ խնդրոյն. ստանալ նմա զմեկնութիւն սրբոյ աւետարանին Յոհաննու։ Որոյ փոյթ ի մտի եդեալ՝ վաղվաղակի ի ձեռն ուժգին պահոց եւ աղաւթից ջան ոչ փոքր յանձին բերէ՝ շրջագայութեամբ երից ամաց, յածեալ ընդ անապատս յերկիրն Միջագետաց, ուր եւ յուսայր իսկ գտանել գրոյ ուղղափառ վարդապետացն. եւ հանդիպեալ խնդրոյն* առաջնորդութեամբ վերին խնամոցն, շարագրէ համառաւտաբար ի բազմաց հաւաքելով՝ մի ըստ միոջէ անձով զմեկնութիւն Յոհաննեան սրբոյ աւետարանին, փոխաբերելով յասորի լեզուոյն ի հագարական լեզու։

Էջ Տ, 15–23. * Եւ յետ այսորիկ այսպէս եղելոյ, հասեալ լինի զանձ գրոյս այսորիկ առ

23 ստացեալ MW: — 35 որ OW. գրոց OMW: — * Այս տեղ "խնդրոյն„ բառին գիտց յուսանցագրութիւն կը համարիմ 42—51 տողերը, գրուած երկրորդ թարգմանչէն զետեղելու համար ու. 119էն ետքը "Եւ յետ այսորիկ այսպէս եղելոյ„ նախադասութենէն յառաջ։ Ընդօրինակողը ոչ միայն չէ տեղաւորած յարմար տեղը, այլ եւ կրկնելով առած է վերջին տողերը։ — 39 Յոհաննու MW։

Մարեմ Բագրատունի, Սիւնեաց տիկին, ի ձեռն Աշոտոյ հաւր իւրոյ մեծ եւ երեւելի տեառն Բագրատունեաց իշխանաց իշխանի: Իսկ երանուհւոյս Սիւնեաց տիկնոջ փոյթ ի մտի եղեալ վաղվաղակի հրամայեաց երկիցս անգամ՝ փոխաբերել ի հայկական լեզու, առաջնորդութեամբ վերին խնամոցն. յարդարէ համառաւտաբար զաստուածային բարձրագոյն հաւատս:

Էջ 6, 17—23. Իսկ յորժամ ըմբռնեալ լինէր ի հագարական ազգէն մեծն եւ երեւելին այն իշխանն Հայոց վասամամիռն, որ եւ զբաւընդակն յանձին բերէր ունել զգիտութիւն որ ի Քրիստոս հաւատոցն. որ եւ նախանձ ոչ փոքրագոյն վասն Քրիստոսի միշտ յանձին կրէր՝ կշտամբել եւ յանդիմանել զհերձուածողացն դաւս:

Էջ 7, 15—8, 14. Զօրոյ եւ ոչ զառաքինութիւն առնն պարտ է որ յետ այնորիկ գործեցաւ՝ անյիշատակ թողուլ. այլ թէպէտ ի նկարագրի փոքր ինչ ցուցանել զնորայն ճգնութիւն. ոչ իբրեւ ներբողելով դրուատել, զի եւ ոչ բազմութիւն յոյժ խմաստասիրաց ի մի վայր գումարելոց՝ կարող են բան ըստ նորա արժանաւորութեան հատուցանել հանդիսի. այլ միայն դոյզն ինչ բանիւք պատմութեանս թելադրել առ ի գիտութիւն լսողացդ:

Սա ըմբռնեալ եղեւ ի մերում իսկ ժամա-

---

44 Մարիամ W: — 50 "յարդարեալ" կը պատուէր. բայց ամբողջ նախադասութիւնը կցկտուրթիւն է 37—38 տողերուն: — 54 վանմնմիռն MW:

նակի ի հագարական ազգացն, վասն նախանձոյ որ ի նմանէ բազմափոյլ վարդապետութեանն եւ ներհակս միշտ առաքինելոյն, դ՚նանի ի բանդ հանդերձ որդւովք իւրովք. որովք բազում անգամ բանս հրապուրականս առաջի արկեալ, հանդերձ յոգնազան պարգեւաւք, ոչ ինչ խոնարհեցոյց զանխոնարհելի խորհուրդս մտացն որ ի Քրիստոս: Դարձեալ յայլ տեսակ հնարից բերեալք լինէին. սպառնմամբ բանդից եւ կապանաց եւ պէսպէս տանջանաց. այլ ոչ զանգիտեալ երբեք զիջանէր ի բարձրագոյն հաւատոցն որ ի Քրիստոս. եւ մնացեալ ի բանդի անդ բազում ժամանակս, ոչ միայն զինքն ամբողջ պահելով յամբիծ հաւատսն, այլ եւ բազմաց լինի առիթ փրկութեան. աներկեղաբար միշտ պահելով զարգելանաւորսն ի բանդին. ուսուցանելով եւ հաստատելով ի հաւատս ամենասուրբ Երրորդութեանն,

Էջ 8, 23—9, 5. վերագոյն ունելով ըստ իւրում քաղցր եւ յոյժ գովելի բարոյիցն, որ հասարակաբար ունէր առ ամենայն մարդիկ՝ զխնամս իւրոյ սիրելի սուրբ մտացն, մանաւանդ թէ միամիտ հաւատոցն որ ի Քրիստոս՝ պահպանեալ լինի ի վերին խնամոցն անվրդով առ ի յաւգնականութիւն չորից ուստերաց՝ զոր ոչ պատկառեմ սիրող Քրիստոսի անուանել եւ կենդանի վկայ: Որ այնքան ժամանակս երբեր յանձին ժուժկալութիւն հաւատոցն,

73 դնի ի բանտի OMW: — 74 որով OMW: — 98 զժ. որ ի Քրիստոս Հ. W:

Էջ 6, 23—7, 10. ոչ ինչ արուեստիւ քաջութեան այնուհետեւ ըստ արժանի իւրոյ մեծութեանն երեւեցոյց, այլ երագապէս ի վայր հոլովեալ յաստուածային հաւատոյն զոր ունէր, գլորեցաւ վաղվաղակի ի վիհ անկանգնելի կորստեանն։ Եւ ի բաց ընկենլով զգրոշմ ուխտի ճշմարիտ հաւատոյն, սուգ անհնարին բոլոր աշխարհիս հայաստանեաց հասուցանէր. թէպէտ եւ հրչտակացաւ ի լսելիս մեր, ի խորութեան սրտին հաստատուն պահելով զճշմարիտ հաւատոյս դաւանութիւնն։

Յայնմ ժամանակի ի ձեռն պատահման իմն գանձ գրոց հասեալ լինի առ տէր Սմբատ Բագրատունի. զոր ընկալեալ խնդութեամբ մեծաւ՝ հրամայէ փութով ի հագարացւոցն ի հայկան վերաբերել լեզու, ոչ ինչ ներելով իմոյ տկարութեանս։ Այլ զոր մեծն այն հռետորն՝ կատարեալ յարուեստս եւ ի մակացութիւնս՝ այնքան ջան յանձին բերելով տարժանեցաւ, ո՞վ ոք ոչ զինս աղարտեսցէ յանդգնութիւն, մատբերել անգամ յայսքան բարձրագոյն խորհուրդ։

Էջ 9, 5. Եւ սորա այսպիսի եղելոյ՝ մի՛ ոք զմեզ յայսմ վայրի բամբասեսցէ՝ իբրեւ աւելագործ ինչ, խառնելով զմեր ընդ նորայն ջան՝ կամեցեալ իբրեւ աւտարացուցանել կամ աղա՛րտել ինչ։ Այլ զի մի անկատար եւ պակաս

102 կը յաւելուն բարձրագոյն հ. OMW: — 111 լինէր O: — 112 աւելագործակ OW. ընդ նորայն OW: — 124 կը յաւելուն՝ կամ աշակերտել ինչ OW:

*վարդապետի փառք յաշակերտէն լինել՝ փոքր ինչ ներեսցեն մեզ լսաւղքդ. եւ ըստ իմաստասէր բժշկացն որք ի ձեռն երակացն գիտացեալ զախտի պատճառսն՝ հնարին այնուհետեւ առ բուժումն, այսպէս պարտ է ձեզ* 130
*մտաց աչաւք նայել ի ճառս յոր մտաք։*

---

Այս դասաւորութիւնը կ'արդարացնէ ինքնին թարգմանիչը, որ տող 28 կը խոստանայ յիշատակել համառօտիւ «յիրում տեղւոջ», «զանցս անցիցն», որոնց ապա նշաւակ եղաւ Բագարատ Բագրատունի եւ զորոնք արդամիք ալ կը յիշատակէ տող 70 եւ շար.։ Գրութեան ընթացքը թոյլ չի տար մերձեցնել այս տողերը Դանայի, ինչպէս առ հասարակ հասկըցուած է, որուն մասին ակնարկեցինք վերը (էջ 130)։

4.

Թարգմանիչը համաձայն Սմբատի իշխանական հրամանին աւարտելով Մեկնութեանս թարգմանութիւնը նուիրած է զայն Սպարապետին։ Բագարատի գովութիւնն հակառակ ուրացութեան ինքնին հասկանալի է, քանի որ գործն ի գլուխ կ'ելլէր անոր եղբօր՝ Սմբատայ յանձնարարութեամբ։

Որչափ ալ յայտնի են մեզի այս մանրամասնութիւնները Մեկնութեանս հեղինակին,

յօրինման եւ թարգմանութեան մասին, բայց քօղարկուած կը մնայ յաւէտ թարգմանչին անձնաւորութիւնը։ Այս նկատմամբ նա բաւականացած է միայն ակնարկութիւն ընել հետեւեալ շատ անգոհացուցիչ տողերու մէջ. «Ես յետին ուսումնասիրաց՝ մանաւանդ թարգմանչաց, ի ձեռն աստուածային սիրոյն աղաչեմ... ի վերծանել զգեղեցկալոյն աստուածաբանական ճառիցս բացատրութիւն, յիշեսջիք զիս ի դպրութեան կենաց» (էջ 295)։

Ո՞վ է սակայն այս անձնաթաքոյց թարգմանիչը. Զրաքեան չի համարձակիր քօղն վերցնել «որովհետեւ բաւական փաստ չունինք, կը գրէ, Զաքարիա կաթողիկոսի կամ ժամանակակից ուրիշ ծանօթ մատենագրի մ'ընծայելու թարգմանութեանս արդիւնքը» (էջ ԼԸ)։

Մեզի ալ դժուարին է կռահել անունը։ Անիկա հայ արքունիքին հետ յարաբերութեան մէջ ապրող արաբագէտ վարդապետ մ'ըլլալու էր, լաւ հմուտ գրական ուսմանց, մի եւ նոյն ժամանակ վարժ գրիչ մը, կրթուած աստուածաբանական դպրոցի մը մէջ։ Թ. դարը ցոյց չի տար մեզի համապատասխան պատրաստութեամբ գրական անձնաւորութիւն մը, որուն հետ կարենայինք նոյնացնել Մեկնութեանս թարգմանիչը։

Թարգմանութեան բնագիրը։ Այն անտարակուսելի է որ Մեկնութիւնս իւր էական մասով թարգմանութիւն է Նոնայի արաբերէն լեզուով գրած աշխատութեան. ուստի եւ նախաբնագիրն եղած է արաբերէն. զայս քանիցս

ակնարկած է թարգմանիչը ներածութեան մէջ. "Հրամայէ (Սմբատ Բագրատունի) փութով ի հագարացւոցն (իմա՛ յարաբերէնէ) ի հայկական վերաբերել լեզու" (էջ 7). կամ "վարձատրեա՛ եւ զիմոյ փանաքի չքաւորութեանս տաժանմունս՝ առ փոխաբերութիւն ասորւածային ճառիցս, ի խորթ բառիցն ի քոյ որդւոց շնորհաց փոխաբերելով լեզու" (էջ 244—245)։ Այս մասին կարեւոր ակնարկութեան կը հանդիպինք նաեւ բնագրին մէջ՝ էջ 224, ուր մեկնելով "Ես եմ հովիւն քաջ" նախադասութիւնն, հետեւեալ կարեւոր դիտողութիւնը կ'ընէ. "Զքաջն ի հագարական լեզու թարգմանութեանն՝ յորմէ զբաւանդակ գրոցս վերաբերեցաք զճառս՝ բարի գտաք. վասն այնորիկ հաճոյ մեզ թուեցաւ ոչ յայլ ինչ յեզուլ զբանն, զի մի՛ այլ ինչ հանդիպեսցին մեկնութիւնքն բանին"։

Մեկնութեան արաբերէն բնագիրը սակայն այլեւս ծանօթ չէ մեզի։ Հնութիւնը չէ պահպանած զայն, եւ անշուշտ հայկական հողի վրայ կորսուած է ի սպառ[1]։

1 Աւելորդ կը համարիմ հոս շօշափել այն խնդիրն զոր Հ. Տաշեան նկատմամբ Մեկնութեանս հեղինակին եւ բնագրին յարուցած է իւր Մայր ցուցակին մէջ (էջ 1136), ուր շեշտելով ի մերձաւոր ծանօթ Մեկնութեանս, համարած է զայն նոյն Նոննոս Պանոպոլսեցւոյ անուամբ ճանաչուած Յովհաննու Աւետարանին յունարէն Մեկնութեան հետ. զայն կրկնած է Conybeare իւր Բոդլեան Մատենադարանի հայերէն ձեռագրաց ցուցակին մէջ (էջ 171)։ — Նանա անուան հայկական ձեւը (գրուած նաեւ Նանան), զոր Հ. Ալիշան Յովհաննէս կը տառադարձէր, իւր համա-

Թարգմանիչն հրաման ընդունած էր Նոնայի Մեկնութիւնն "ի հագարացւոցն ի հայկական վերաբերել լեզու", որուն համար անբաւական կը գտնէր իւր ուժերը (էջ 7)։ Ձեռնարկելով սակայն թարգմանութեան, կը խնդրէ կանխաւ որ "մի ոք զմեզ յայսմ վայրի բամբասեսցէ՝ իբրեւ աւելադործ ինչ՝ խառնելով զմերս ընդ նորայն (տպ. նոսայն) քան՝ կամեցեալ իբրեւ աւտարացուցանել կամ աղարտել ինչ" (էջ 9)։ Այս տողերը կը մղեն զմեզ ենթադրելու, որ նա իւր թարգմանութեան մէջ թոյլ տուած է անձին ազատութիւններ, խառնած է Նոնայի տեսութեանց մէջ սեփական մտքեր, վերջապէս ենթարկած է բնագիրը փոփոխութեան։ Նոյն մտածութիւնն կ'արթնցնեն մեր մէջ նաեւ վերջաբանին խօսքերը, ուր կը գրէ. (էջ 242). "ըստ արփիափայլ եւ աստուածական բանիցս անհետազօտելի ճառիցս յաճախագոյնս լոյս տուաք բանի, զոր այժմ բացատրութեամբ վերին շնորհացն օժանդակելով՝ տրամաբանութեամբ տարորոշեալ՝ յատակագոյնս զաստուածական խորոցն անհետազօտելի զիմաստս բացայայտեցաք"։

Ոչ լոկ թարգմանութիւն մ'ունինք ուրեմն մեր առջեւ, այլ ազատ խմբագրութիւն մը Նո-

զօր ընթերցուածներն ունի ասորական գրականութեան մէջ ܢܐܘܣ (Նաեոս), ܢܘܐ (Նոեա), ܢܘܢܘܣ (Նոնոս) Հմմտ. Wright, Catalogue of Syriac Manuscripts in the British Museum, I, էջ 618. Հմմտ. նաեւ Марръ, Арк'аунъ, էջ 10։ Արու. Ըսպթայի ընծայած Եղիան ձեւն կ'ենթադրէ՝ ասորական ܢ գրութեան ազնուան մը։

*նայի աշխատութեան։ Թարգմանիչը ջանացած է արար բնագրին մտութեանց "Լոյս տալ" այլ-ուստ, իրեն աղբիւր առնլով Հայ գրականութեան մէջ պահուած սուրբ Հարց գործերը։*

*Թէեւ Նանա ինքնին ունեցած է իւր առջեւ սուրբ Հարց մեկնութիւնները՝ շարադրելով "Համառօտաբար ի բազմաց հաւաքելով մի ըստ միոջէ ոճով" (էջ 6), յատկապէս Ոսկեբերանի Մեկնութիւնն Յովհաննու Աւետարանին, բայց ճարտար թարգմանիչն ալ արթուն եղած է երեւան հանելու նոյն աղբիւրներն Հայ գրականութեան մէջ եւ քայլ առ քայլ անոնց հետեւելու, ուր կրնային առաջնորդ ըլլալ իրեն։ Հ. Զրաքեան (էջ ԼԳ—ԼԴ) անդրադարձած է այս կէտին եւ մատնացոյց ըրած յականէ Ոսկեբերանի Մեկնութիւնը, համեմատական օրինակներով։ Ոսկեբերանի այս աշխատութիւնը ծանօթ էր թարգմանչին Ե. դարու Հայերէն թարգմանութեամբ, թէեւ այն այսօր մասամբ միայն հասած է մեզի։ Ուստի մեր քննութեան համար այս հնագոյն թարգմանութիւնն միայն կրնայ հիմ առնուիլ, եթէ ուզենք որոնել թարգմանչին բառական փոխառութիւնները։ Յառաջ կը բերեմ հոս օրինակ մը միայն, զոր մատնացոյց ըրած է նաեւ Զրաքեան.*

| Ոսկեբ., էջ 223։ | Նանա, 38։ |
|---|---|
| Եւ ընդէր իսկ առէն. Արար զայս Քրիստոս, զի այնչափ [illegible] վարէր ընդդէմ նոցա. [illegible] | Խնդրելի է բանս, եթէ Ե՞ր աղագաւ այնքան պայքանայր մինչեւ խաչաղան եւս առնէր եւ մեծագոյն [illegible] |

(Ոսկեբ., էջ 223։)

[illegible] եւ ի թշնամանելն զնա եւ յանգոսնել, եւ Աստուծոյ [illegible] եւ թէ զեւ գայ ի քեզ։

(Նանա, 38։)

արտաքս հանէր․ [illegible] յորժամ [illegible] զնա հանէին, այլովքն հանդերձ։

Հոս հայերէն թարգմանութենէն բառական փոխառութիւնն ակնյայտնի է։

Չեմ կրնար հաստատել թէ այսպիսի փոխառութիւններ կա՞ն նաեւ ուրիշ մատենագիրներէ ալ, թէեւ կը զգացուին։ Չրաքեան կու տայ համեմատութիւններ Սեբերիանոսի եւ Նանայի, դարձեալ Մամբրէի եւ Նանայի մէջ տեսնուած նմանութեանց։ Այն տեղիք առանց տարակուսի կախում ունին Սեբերիանոսէն եւ Մամբրէէն (յաւ եւս Մամբրէի աղբիւրէն), բայց որովհետեւ ի մէջ բերուած այս հատածները կը վերաբերին Մեկնութեան Բ. Մասին, չեմ ուզեր զանոնք նկատի առնուլ հոս լրջօրէն։

Թարգմանութեան ամբողջութիւնը։ Զարմանալի երեւոյթ մը կ'ընծայէ հայերէն բնագիրը, որուն չէ անդրադարձած հրատարակիչը։

Առաջին թարգմանիչը իւր աշխատութիւնն կ'աւարտէ էջ 246, այս ինքն Յովհ. Ժ գլխուն մեկնութեամբ, ուր եւ կը դնէ վերջակէտը, ի մէջ այլոց հետեւեալ դիտողութեամբ․ "Վասն որոյ աճապարեալ անհանգիստ վեհ երագութեամբ ընթացիւք, ի մօից ասպարիսի աւարտեալ զկիսաւորեցի զաստուածազարդ բանիցս հանգամանս, յաւուրն եկաւորութեան փեսայի քո եւ հասարակաց կեցուցչին ի

*Բեթանիա եկաւորեալ՝ կենագործելով զՂա-զարոս:*

Մեկնութիւնն սակայն կը շարունակուի ԺԱ. գլխէն Յովհ. Աւետարանի վերջը եւ կ'աւարտի առանց ինքնուրոյն վերջաբանութեան ի կատարածին թէեւ կայ վերջաբանական հատուած մը, բայց այն ոչ այլ ինչ է, եթէ ոչ քաղուածք մը Ոսկեբերանի ի Յարութիւն ճառէն, որուն անդրադարձած է նաեւ Ոսկեբերանի ճառերու հրատարակիչը (Յովհ. Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոցն Պաւղոսի. Վենետիկ 1862, Բ, էջ 897, ծան. ուր կ'ըսուի. «Համառօտութիւն է այսր ճառի վերջաբան Յոհաննու մեկնութեան Նանայի ասորւոյ»): Հոս կը դնեմ համեմատական զուգադրութիւն մը երկու բնագիրներու:

| *Յովհ. Ոսկեբ.:* | *Նանա, էջ 440-441:* |
| --- | --- |
| Յորժամ զձմեռական չփոն գարնանային ժամանակն փոխանորդեսցէ, եւ զանազան հաւուցն յօգս թռուցեալ նուագաձայնութեամբ երգեն՝ զհեշտութիւն ժամանակին մարդկան նշանակելով, յայնժամ ծիծառանն հեշտախօսք երագաթռիչք ըզգօ հարկանեն ի վերայ գլխոյ մարդկան անցանելով, զօրէն ծաղկի զեւ բեանց ձայնն լականէ մարդկան արկանելով. յայնժամ է տեսանել մարքուր եւ զօդ | Յորժամ չմեռնական ժամանակին անվայելուչ զմընգակութիւնքն ժամանեն զբաւանդակ կենդանեացն տեսակս ընդ ախրութեամբ կապելով զբաւեն. իսկ ի փոխանորդութեամբ գարնանային հեշտայի եւ զուարճառեսակ ժամանակին՝ խայտան ամէնք կենդանեացն: Ծիծառանն հերձանելով զօդս ի վերայ գլխոյ մարդոյ, ձեւացուցանէ իւրն ի նոյնն մեր հնչեցուցանեն նուագս այսպէս եւ զանազան ձայնս |

(Յովհ. Ոսկեբ.։) | (Նանա, էջ 440-441։)

առանց հոգւոց, եւ զգեստ մարդկան զուարթս նման ցածութեամբ փոփոխմամբ ալեաց ծովու յարմարեալս։ Վասն զի եւ [illegible] կազմածք հեշտացուցանեն զլսելիս, եւ ոչ մանաւանդ զուարճացուցանէ զայս. եւ ազգի ազգի ծաղկանց [illegible] վայելչացուցանեն զհոտոտելիս։

տեսակք գեղգեղեն, երաժըշտականս իմն յարինելով, պայծառ ժամանակին հեշտալի եւ ախորժելի քաղցր աւդոյն փոխարկութեամբ։ Ընդ որում արեգակն միաւորեալ, եւս քաղցրահայեացս եւ բարեխառն ղձառագայթիցն իւրոց ի մեզ վերառաքէ [illegible]. երկիր զանազան բուսոցն եւ ծաղկանցն ընձեռէ զբաղբոյս. ծառք սաղարթաւորք հովանացեալք գեղեցկանան . . .

Էջ 899. Թէ պարտ եւ արժան իցէ... զերկնային հացն մաքուր ձեռօք եւ սուրբ սրտիւ ընդունել, յանձինս, առաքեցուք [illegible] ...զաստուածային եւ զերկնային զխառնուածն վարդապետն շրթամբք [illegible]

Էջ 441. Արժանապէս զաստուածային յարութիւնս տօնեսցուք. զմարմին եւ զարիւն Տեառն արժանաւորապէս [illegible]. համբարեսցուք ի մեզ, [illegible] ի մշտնջենաւոր [illegible]։ Ու [illegible], զի հայելով յաջակողմեանն դասս արժանաւորեսցուք վերառաքել փառս։

Ահա այս է երկրորդ մասի վերջաբանը։

Ի՞նչ աղերս ունին առաջին եւ երկրորդ մասերը իրարու հետ իբրեւ մէկ ամբողջութիւն. մէկ հեղինակի կամ թարգմանչի գործ են անոնք։

կարեւոր խնդիր մը, որուն լուծումն չէ տուած Հրատարակիչը։

Եթէ միտ դնենք Ա. եւ Բ. մասերու յօրինուածական ձեւին եւ մեկնողական եղանակին, մեծ խտիր պիտի տեսնենք առաջնոյն եւ վերջնոյն մէջ։ Ա. մասին մեկնիչն աւելի հմուտ է նիւթին, կը մեկնէ բնագիրն բառականէն աւելի վերացական եւ վարդապետական ձեւով։ Յօրինուածութիւնը ընթացիկ է. բնագրին իմաստի համաձայն կը մշակէ նիւթը լայնօրէն, բազմակողմանի զննութեամբ եւ կը մերձեցնէ վարդապետութեան եւ ժամանակակից յուզուող դաւանաբանական վիճմանց։ Մինչ երկրորդ մասը՝ զուտ բառական է. վարդապետական բովանդակութիւնն հեռուէն միայն կը շօշափուի. եւ մեկնութիւնք յաճախ հարց ու պատասխանի ձեւով են, կարճ եւ հարեւանցի։

Այս զանազանութիւնն կը նկատուի նաեւ լեզուական ոճի մէջ։ Ա. մասի գրիչը աւելի կ'իշխէ լեզուին, պարզ է, բայց ունի հռետորական ձգտումներ, մինչ երկրորդ մասն տկար է, խրթին եւ զուրկ հռետորական ճախրանքներէ։

Այս հանգամանքը կը ստիպէ զմեզ ենթադրելու Մեկնութեանս մէջ կրկին գրիչ. Ա. մասը՝ մեկնուած Նանայէն, թարգմանուած է 850ի շրջանին՝ արաբերէն բնագրէ։ Իսկ Բ. մասը հեղինակուած է հայ գրչէ մը, թերեւս նոյն շրջանէն ոչ շատ ուշ, բայց յամենայն դէպս տարբեր անձնաւորութիւն մ'եղած է այն քան առաջին մասի թարգմանիչը։

Բ. մասի հայ հեղինակը իր մեկնութեան համար օգտուած է բացարձակապէս ազգային գրականութենէ։ Ինքն ալ ունեցած է աչքի առջեւ Ոսկեբերանի Մեկնութիւնը, որուն հետքերու վրայէն ընթացած է, բայց ծանօթ եղած է նաեւ Սեբերեանոսի Ճառերուն եւ Մամբրէի անուամբ հրապարակի վրայ շրջած քարոզներուն (կամ անոնց աղբիւրին)։ Զրաքեան յառաջ բերած է բառական փոխառութիւններ այս ճառերէն (էջ ԼԵ—ԼԶ)։

Նանայի այս Մեկնութիւնը թէեւ ծնունդ առած է հայ գրականութեան ազդեցութեան տակ, բայց ոչ նուազ ազդեցութիւն ըրած է ինքն ալ հետագայ գրականութեան վրայ։

1197ին Սարգիս Վ. Կունտ իր Ղոկասու եւ Յովհաննու խմբագիր մեկնութեան մէջ օգտուած է ի մէջ այլոց Նանայի Մեկնութենէն. «Եւ սկիզբն ի Նանայէ, սակաւ մի, եւ ի Սեբերիանոսէ՝ ի մէջ քրիստոսասիրացն սուղ ինչ վկայութիւն» (Հայապատում, § 286, էջ 371)։ Հատուածներ մուտ գտած են նաեւ հին ճառընտիրներու մէջ։

Մեկնութենէս պահպանուած են մեզի բազմաթիւ ձեռագիրներ։ Հ. Զրաքեան իր հրատարակութեան բնագիր առած է Վենետիկի Մխիթարեան Մատենադարանի 1155ին Ամիթ Կիրակոս կրօնաւորէն գրուած երկաթագիր օրինակը (Թ. 1683)։ Աչաց առջեւ ունեցած է նաեւ երկրորդ օրինակ մը՝ նօտրագիր, անթուական (= Օր.), զոր կը համարի ծագած 1115ին օրինակուած երկաթագրէն (էջ ԺԶ)։ Օրինակ

*մ'ալ կը գտնուի մեր Մատենադարանին մէջ,* թ. 611, *նօտրագիր, անթուական։ Ձեռագիրս յընդհանուրն նոյն է Զրաքեանի Օր.ին հետ. հոս կը պակսի միայն Ա. գրքի վերջաբանին վերջաւորութիւնը՝ էջ* 245, $_{20}$—246, $_{10}$։ *Կը յիշուին օրինակներ՝ Էջմիածին՝ Կարինեան Ցուցակ,* թ. 1239, 1207—1311, *Կանայեանց՝ Ցուցակ հայերէն ձեռագրաց Ներսէսեան Հոգեւոր Դպրանոցի.* թ. 19 (*Ժթ դար, էջ* 40—41). Baronian-Conybeare, Catalogue of the armenian Manuscripts in the Bodleian Library, թ. 74 (*էջ* 170—171), *Դալեան՝ Ցուցակ հայերէն ձեռագրաց Ս. Կարապետի վանուց ի Կեսարիա,* թ. 18, թ. 19, *երկուքն ալ անթուական։*

*Այստեղ կը վերջացնենք մեր խօսքը Մեկնութեան մասին։*

# ՇԱՊՈՒՀ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

## ԵՒ ԻՒՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

«Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ» խորագրուած գրութիւնը, զոր հրատարակեցին † Գ. Տէր-Մկրտչեան եւ Մեսրոպ եպիսկոպոս Տէր-Մովսէսեան, Էջմիածին 1921, առիթ կու տայ ինձ զբաղելու Շապուհ Բագրատունւոյ անձով[1], անոր պատմագրքով եւ անոր վերագրուած «Պատմութեամբ»։

---

1 Շապուհի մասին բացի մեր գրութիւններէ զորոնք պիտի յիշենք յընթացս, համեմատէ նա այժմ՝

[Մ. Մսերեանց] Շապուհ Պատմագիր. Ճռաքաղ Գ (1861/62), էջ 127—130։

Հ. Գ. Գ[ալէմքեարեան], Շապուհ Բագրատունի. Հանդ. Ամս. 1896, էջ 59։

Հ. Գ. Զարբհանալեան՝ Շապուհ Բագրատունի. Պատմ. Հայկական հին դպրութեան, Վենետիկ 1897, էջ 503—506։

Հ. Ղ. Ալիշան՝ Շապուհ Բագրատունի. Հայապատում Ա. § 54. էջ 188—192։

Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ, ի լոյս ածին † Գ. Տէր-Մկրտչեան եւ Մեսրոպ եպիսկոպոս [Տէր-Մովսէսեան]. Էջմիածին 1921, էջք XXXIV+96։

## 1.

Յովհաննէս կաթողիկոս Դրասխանակերտցի պատմաբան (899—931), որ ժամանակակից եղած է Շապհոյ եւ ի մօտոյ ծանօթացած անոր պատմագրոց, յաճախ կը յիշատակէ զինքը իբրեւ “Շապուհ Բագրատունի մերում ժամանակի պատմագիր„ (տպ. Տփղիս 1912, էջ 7, 131 եւն), առանց հաղորդելու սակայն անոր անձնաւորութիւնը յատկանշող մանրամասնութիւններ:

Ուխտանէս (Ա. էջ 109) գիտէ զինքը “Աշոտոյ ապուհիւպատ պատրիկի որդի„, իսկ Ասողիկ (էջ 13) “Աշոտոյ անթիպատրիկի որդի„: Վասն պահոց հատածին (տես վարը) կցուած ծանօթագրութիւն մը կը յայտարարէ՝ “այս ի պատմութենէ Շապհոյ Բագրատունւոյ է, որդւոյ Աշոտի ապիւհիպատ պատրիկի յանուն Դաւթի Բագրատունւոյ որդւոյ Աշոտի իշխանաց իշխանի„ (Սամ. Անեցի, էջ 248):

Վերջին տեղիքս յայտնապէս զանազանութիւն կը դնէ ժամանակակից երկու Աշոտներու մէջ եւ այսու կու տայ մեր ձեռքը կռուան Շապուհի անձնաւորութիւնը համանուն Բագրատունիներէն որոշելու:

Բայց ո՞վ է “Աշոտ ապուհիւպատ պատրիկ„:

Այն պարագան որ Յովհաննէս պատմաբան իւր 924ին աւարտած պատմութեան մէջ ժամանակակից գիտէ զՇապուհ Բագրա-

տունի, կը ստիպէ զմեզ անոր հայրը Աշոտ ապուհիւպատ պատրիկ նախորդ դարուն մէջ փնտռել։

Արդ Ասողիկ (էջ 144) խօսելով Թէոփիլոս կայսեր (829—842) վրայ, կը գրէ. «Ի սորա աւուրս եղեւ գալուստ Հոռոմքիերոյն ի գաւառն Բասեան եւ զբազումս խողխողեցին սրով ի վերայ յարուցեալ գեղաքաղաքին Գոմաձորոյ։ Իսկ Թէոփիլոս գնաց ի Խաղտի եւ ել ի ցամաք կամուրջ եւ գերեաց զբազումս ի Հայոց հանդերձ ընտանեօք իւրեանց եւ տուեալ զհիւպատոսութեան պատիւն՝ այսինքն ապուհիւպատ (ἀπὸ ὑπάτων) պատրկութիւն Աշոտոյ որդւոյ Շապհոյ եւ թողու ի Սպեր գաւառի, եւ ինքն առեալ հարկս ի Թէոդուպօլսեաց՝ դարձաւ անդրէն։ Իսկ ապա եկեալ Հոռոմքի արանցն ի Վանանդ ի գիւղն Կաճկաքար՝ կոտորեցան ի ձեռն Սահակայ որդւոյ Իսմայէլի։»

Այս դէպքերը պատահած են 836/37ին (հմմտ. Մարկուարտ՝ Բագրատունեաց ծագումը, Վիեննա 1915, էջ 134)։ Իսկ Ասողկան հաղորդած տեղեկութիւնները ըստ ամենայն հաւանականութեան (հմմտ. Մարկուարտ, անդ, էջ 133) քաղուած են Շապհոյ Պատմութենէն, ուստի եւ արժանի են մասնաւոր ուշադրութեան։

Աշոտ կը ներկայանայ հոս Շապուհ Բագրատունւոյ որդին, իսկ Շապուհ Աշոտ Մսակերի եղբայրն է՝ Սմբատ սպարապետի († 722) որուն

(Հմմտ. Վարդան, էջ 76—77, 79) որ 823/24ին ինկաւ Սեւադայի դէմ մղուած կռուին մէջ. «զկնի երկու ամաց» մեռաւ նաեւ Աշոտ «եւ առ զիշխանութիւնն Սմբատ որդի նորա, եւ խնամէր զմնացեալ որբսն, զորդիսն Շապհոյ՝ բնակեցուցեալ զնոսա յԱնի յապահովս» (էջ 79)։ Շապհոյ որդւոց մէջէն ծանօթ է պատմութեան միայն Աշոտ, որ առաջին անգամ Սպերի մէջ երեւան կու գայ 836ին։

Համաձայն այս տեղեկութեանց Աշոտ կը վերաբերէր Բագրատունեան երկրորդ ճիւղին, որ առաջնոյն հետ ուղիղ գծով կը սերէր Սմբատ սպարապետէն այսպէս.




Ասոր եւ հետեւելով Ուխտանէսի, Ասողկան եւ վասն Պահոց հատուածին՝ հարկ է պատմութեան հեղինակ Շապուհ Բագրատունի որդին Աշոտոյ ապիհիւպատ պատրիկի՝ նոյնացնել այս Աշոտեան Շապուհի հետ, ինչպէս նոյնացուցած

է մեզմէ յառաջ Չամչեան, Բ. 428, եւ իրմէ առեալ Սոմալեան՝ Quadro, էջ 55. Մոսերեան, Զարբհանալեան եւ Մարկուարտ:

Աշոտ կարգուելով՝ 836ին ապիհիւպատ Սպերի, կը կորսնցնէ այնուհետեւ իւր հետքը պատմութեան մէջ: Յայտնի չէ թէ 853ին Բուղայի արշաւանաց ժամանակ ինքն ալ գերեվարուեցա՞ւ ի Սամառա: Մեզի ծանօթ է միայն իր որդին Շապուհ:

Չենք կրնար որոշ բան մ'ըսել թէ յետ մահուան Աշոտի՝ Շապուհ ժառանգե՞ց Սպերի անթիհիւպատոսութիւնը. եւ առ հասարակ ի՞նչ գործնական ասպարէզ ունեցաւ:

Շապուհ Աշոտ Մեծի ուղիղ ժամանակակից եւ ընկերակից կ'ըլլայ: Իր ծնունդը կրնանք դնել մերձաւորապէս 830ի շրջանին եւ վախճանը՝ 885էն ոչ շատ վերջը, հաւանօրէն 900էն յառաջ, մեռած իբր 60—70ամեայ: Պատմութիւնը չ'աւանդեր թէ ամուսնացա՞ծ էր, ունեցա՞ւ զաւակներ:

Թերեւս այս եւ նման կէտերու մասին ինչ ինչ մանրամասնութիւններ ունենայինք, եթէ հասած ըլլար մեզի իր պատմական աշխատութիւնը ամբողջութեամբ:

Մարկուարտ (անդ, էջ 68) զինքը կ'ուզէ համարիլ այն "Շապուհ որդի Աշոտի" որ 884ին զԱհմադ բ. Խալիդ արաբացի կուսակալը Ջորւոյ վրայ նստեցուցած Գառնանէն Վասպուրականի ճամբով արտաքսեց "մինչեւ ի մուտս Ասորեստանեայց ճանապարհին" (Թովմ. Արծր.

222)։ Բայց ինծի կ'երեւայ թէ այս Շապուհը Աշոտ իշխանաց իշխանի որդին էր, որ քիչ յառաջ Թովմ. Արծրունւոյ քով (էջ 218) յիշուած էր «Շապուհ եղբայր (իմա՛ որդի) իշխանաց իշխանին», իբրեւ մին այն հայ իշխաններէն, որոնք 884ին Պատուան գտնուեցան։

Հ. Ալիշան, որ Շիրակ, էջ 97 Բագրատունեաց ազգատոհմի ծիւղագրութեան մէջ ուղիղ կերպով սերեցուցած է Շապուհ պատմագիրը Սմբատէն (Սմբատ † 775[1], Շապուհ † 818[1], Աշոտ Ապիհիւպատ † 829[1], Շապուհ Պատմիչ) Հայապատումի մէջ (Ա. § 54) կը նոյնացնէ Աշոտ իշխանաց իշխանի (862—885), ապա թագաւորի (885—890) որդւոյն՝ Շապուհ սպարապետի հետ, որուն պատմութիւնը կը հիւսէ հիմնուած Յովհ. կաթողիկոսի եւ Թովմա Արծրունւոյ վրայ։ Բայց այս նոյնացումը հետեւանք է պարզապէս անուանց նոյնութեան եւ ժամանակակցութեան. չկայ ուրիշ որեւիցէ պատճառ առ այս։ Ուստի եւ հարկ է իբրեւ անհիմն մերժել Ալիշանի նոյնացումը։

Այսպէս Շապուհ Բագրատունի պատմագիր, որդի Աշոտ անթիհիւպատ պատրկի ծաղկած կ'ըլլայ Թ. դարու մէջ, 830—885 շրջանին։ Որովհետեւ ո՛չ ժամանակակից Յովհ. Պատմաբան, ո՛չ Թովմա Արծրունի եւ ո՛չ Ասողիկ այս շրջանի պատմութեան մէջ իր մասնակցու-

---

[1] Ալիշան հետեւած է թուականներու մէջ Չամչեանի, ուղիղը տուած է Մարկուարտ, որուն համաձայն վերագոյն նշանակեցինք։

թիւնն քաղաքական անցուդարձին չեն յիշատակեր, թերեւս անկէ հնարաւոր ըլլայ ենթադրել, թէ Ղապուհ չհետեւեցաւ զինուորական կոչման, այլ նախընտրեց դիւանագիտական ասպարէզը, եւ գործեց աւելի դիւանադպիր Աշոտ Մեծի արքունիքը։ Իր գրագիտութեան հմտութիւնը, որով ձեռնարկած է պատմագրութեան, եւ մանաւանդ ծանօթութիւնը հայկական մատենագրութեան (օր. համար՝ անիկա կարդացած է Գրիգոր Աստուածաբանի ճառերը, Նիկիոյ ժողովոյն պատմութիւնը եւն), ենթադրել կու տան, որ Ղապուհ նուիրուած էր գրական կեանքի եւ իբր այսպիսի ունէր իր կարեւոր դիրքը Աշոտի արքունիքի մէջ։ Կ'երեւայ թէ դիւանագիտական գործերով առաքուած է Բիւզանդիոնի արքունիքը, եւ մինչեւ Կրետէ ճանապարհորդած։ Այս առթիւ ծանօթացած է Կոստանդիանոսի թագի զրոյցին (տես վարը) եւ Մահմետի մասին պատմուած առասպելներուն (տես վարը)։ Այսպիսի պարագաներու մէջ բնական էր որ Ղապուհ յաճախակի յարաբերութեանց մէջ ապրէր իր ժամանակի նախարարական տներու հետ եւ ծանօթանար ի մերձուստ քաղաքական անցքերու, լիովին կ'արդարանայ յայսմ Յովհ. Պատմաբանի տեսութիւնն, „ըստ իւրում ժամանակի ընտանի գոլով զրուցացն ամենայնի", այսինքն բոլոր քաղաքական անցուդարձերուն քաջ ծանօթ (էջ 132)։

## 2.

Պատմական իրողութիւններու հետաքրքրութիւնը ժառանգած է Շապուհ իր համանուն պապէն, որ մեկենաս եւ խնդրող եղած է Ղեւոնդ երիցու պատմութեան։

Ղեւոնդ երէց իր պատմութիւնը գրած է "ի հրամանէ տեառն Շապհոյ Բագրատունւոյ" (Ղեւոնդ, էջ 170)։ Այս Շապուհ Բագրատունի Սմբատ Սպարապետի († 722) որդին է (տես վերը ազգացուցակը), որ 823/24ին ինկաւ Սեւադայի դէմ մղուած պատերազմին մէջ (Վարդան, 79) որուն "զմնացեալ որբսն, զորդիսն Շապհոյ" խնամակալութեան տակ առաւ Սմբատ Խոստովանող "բնակեցուցեալ զնոսա յԱնի յապահովս" (Վարդան 79)։ Այս պարագան վերջնականապէս կ'որոշէ Ղեւոնդ երիցու ժամանակը, որ յամենայն դէպս 823էն յառաջ եւ 788էն ետքը կ'իյնայ։ Ղեւոնդ իր պատմութեան նիւթ ընտրած է 632—788 շրջանը, մօտաւորապէս սկիզբ ընելով այն կէտէն, ուր դադրեցուցած էր Սեբէոս իր պատմութիւնը։

Գրասէրն Շապուհ Աշոտեան անշուշտ ժառանգած էր իր հօրմէն պատմութեանս պապենական անդրանիկ օրինակը եւ յաճախ ընթերցած զայն։ Ղեւոնդ երիցու պատմական երկասիրութիւնը յորդորած է զինքը հետաքրքրուելու պատմութեամբ եւ ձեռնարկելու շարունակել Ղեւոնդի գործը 788էն սկսեալ մինչեւ իր օրերը։

Հայաստան 788էն սկսեալ ապրեցաւ պատմական դէպքերով հարուստ շրջան մը, արաբական տիրապետութեան տակ։ Որչափ ալ տխուր էին ի սկզբան պատմական բեմին վրայ արարուածները, բայց հետզհետէ բարւոքեցան ժամանակները եւ պատմիչն կրնար տխուր պատկերներու նկարագրութիւնը փակել զուարթ տեսարաններով — Բագրատունի հարստութեան փայլուն յաջողութիւններով։

*Պատմութիւնը:* — Աշոտեան Շապուհ Բագրատունւոյ պատմական երկասիրութիւնը յաճախ կը յիշատակուի հիներէն։ Անոնց մէջ առաջինն է Յովհաննէս Պատմաբան, որ թէ իբրեւ ժամանակակից եւ թէ իբրեւ ի մերձուստ ծանօթ երկասիրութեանս, օգտուած է անկէ առատօրէն եւ հաղորդած անոր բովանդակութիւնը ընդարձակ գծերով։ Քանի որ մինչեւ օրս բախտը չէ պահպանած մեզի պատմական երկս, ջանանք՝ յեցած նախնեաց վկայութիւններու վրայ՝ ի վեր հանել անոր որպիսութիւնը՝ որչափ հնարաւոր է։

Պատմութեան խորագիրը Յովհ. կաթողիկոսի քով շատ անորոշ խօսքերով ակնարկուած է, որ զայն կը յիշատակէ պարզապէս “պատմեալն ի Շապհոյ պատմագրէ„, կամ “գրոյցք Շապհոյ Բագրատունւոյ մերում ժամանակի պատմագրի„ (տես վարը)։ Ուխտանէս կ'անուանէր “Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ„, այսպէս նաեւ Ասողիկ։ Բայց աւելի ամբողջական կը թուի այն որ նշանակուած է

վասն Պանոց հատուածին վերջը դրուած ծանօթագրութեան մէջ. այսպէս. “Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ որդւոյ Աշոտոյ ասպահիւպատ պատրկի յանուն Դաւթի որդւոյ Աշոտոյ իշխանաց իշխանի”: Սկզբնագրին մէջ թերեւս համառօտիւ բացատրուած ըլլար նաեւ պատմութեան բովանդակութիւնը՝ նման Ղեւոնդ երիցու պատմութեան, որ ձեռագրին մէջ այսպէս խորագրուած է. “Պատմութիւն Ղեւոնդեայ մեծի վարդապետի Հայոց որ յաղագս երեւելոյ Մահմետի եւ զկնի նորին, թէ որպէս եւ կամ որով օրինակաւ տիրեցին տիեզերաց, եւս առաւել ազգիս Հայոց” (Հմմտ. Ցուցք. էջ ՀԸ—ՀԹ): Ի հարկէ չեմ կրնար ընդունիլ, թէ Ղեւոնդի հարազատ ըլլայ խորագիրս այնպէս ինչպէս է, բայց ընդհանուրն յամենայն դէպս հին է:

Շապուհի պատմութեան այս խորագիրը կը յայտնէ մեզի ուրիշ կարեւոր պարագայ մ'եւս, այն է պատմութեան Մեկենասը կամ խնդրողը: Ինչպէս Ղեւոնդ “ի հրամանէ Շապհոյ Բագրատունւոյ” գրած է, նոյնպէս Շապուհ “յանուն” կամ ի խնդրոյ “Դաւթի որդւոյ Աշոտոյ իշխանաց իշխանի” ձեռնարկած է գրել իւր պատմութիւնը: Այս կէտը նաեւ կարեւոր կռուան մը կու տայ մեր ձեռքը՝ որոշելու գրութեան ժամանակը, որուն վրայ կը խօսինք յետոյ:

Տեսնենք նախ Շապհոյ պատմութեան ծրագիրը կամ բովանդակութիւնը: Յովհաննէս պատմաբանն է այս մասին մեզի երկար բացատրութիւն տուողը, որուն համա-

*ձայն պատմութեաննիւթն է 790—885 շրջանի Հայոց պատմութիւնը, իր 100 տարուան դէպքերու նկարագրութիւնը, սկսեալ այն կէտէն, ուր դրած է Ղեւոնդ երէց իր պատմութեան վերջակէտը։*

*Երկու կարեւոր մաս ունեցած է պատմութիւնը. Ա. Մաս, ուր իբրեւ պատրաստութիւն տրուած է ներածական ձեւով 790—853 շրջանի պատմութիւնը համառօտիւ (Յովհ. էջ 111)։ Հաւանօրէն այս բաժնին մէջ զետեղուած են նաեւ այն համառօտ ցանկերը, Յունաց, Արաբացւոց եւ Վրաց իշխողներու, որոնց մասին ակնարկութիւն կ'ընէ Յովհ. կաթողիկոս։*

*Շապուհ աւելի մանրապատում եղած է 853—885 շրջանի համար, ուր ինքը արդէն ականատես եւ ականջալուր է դէպքերուն։ Իր պատմութեան հերոսն եղած է յատկապէս Աշոտ Բագրատունի, որ Սամառայի գերութենէն դարձող իշխաններու մէջ ամէնէն հոյակապն հանդիսացաւ. եւ իր շուրջը համախմբելով բոլոր նախարարները կազմեց միացեալ ոյժ. անուանուեցաւ իշխանաց իշխան (862) եւ խորտակելով ներքին եւ արտաքին թշնամիները՝ ընդարձակեց պետութեան սահմանները եւ Բագրատունի հարստութեան հիմը դրաւ. 885ին հռչակուեցաւ թագաւոր եւ հնգամեայ խաղաղ թագաւորութենէ ետքը վախճանեցաւ 890ին, թողլով թագն ժառանգութիւն իր որդւոյն Սմբատայ (890—914)։*

Որովհետեւ Շապհոյ պատմութեան բովանդակութեան համար կարեւոր աղբիւր ունինք միայն Յովհ. Պատմաբանը, այստեղ պիտի ամփոփեմ նախ անոր տողերը Շապհոյ մասին եւ ապա պիտի անցնիմ անոնց վերլուծութեան, թէեւ կրկնութիւններով։

Յովհ. Պատմաբան, էջ 6—7 տալով իւր Պատմութեան ուրուագիծը, պիտի պատմէ կ'ըսէ՝ “Թէ զիա՛րդ այսրէն ի մեզ նորոգեալ տեսաւ թագաւորութիւնն, որ ի վաղնջուցն հետէ սպառեալ դադարեալ էր՝ պսակելով զմեծ իշխանն Աշոտ թագաւոր ի վերայ մեր։ Զի թէպէտ նախ քան զմեզ Շապհոյ Բագրատունւոյ եւ մերումս ժամանակի պատմագրի գրով դրոշմեալ է զնորայն գործոց եւ զգնացից եւ իմաստից եւ մրցանաց եւ շինութեանց եւ խաղաղութեան հանդէս. այլ այս այնչափ միայն առ յինէն քեզ տեսցի, զի առ ի յայժմու ճառս նպաստ լեալ՝ ոչ տայցէ կարգի բանին հատակոտր սեթեւեթել, այլ յայտ ածել զհիւսուածս հաւաստութեան առաջակայ իրին։ Զկնի ապա ընդարձակիլ բանիւ եւ ի նմին դեգերիլ պատմութեան վասն Սմբատայ՝ որդւոյ Աշոտի, որ թագաւորեաց Հայաստանեայցս փոխանակ հօր իւրոյ„։

Էջ 111. յիշելով Գէորգ կաթողիկոսի (792—895) ընտրութիւնը կը յայտնէ թէ այս շրջանին (790—852) Արաբացիք տիրապետեցին Հայաստանի եւ մեր ձեռքը եղած աղբիւրները կը լռեն հայ նախարարական տուներու մասին. “սակս այսորիկ իսկ յայսմ վայրի պա-

կասեաց ի պատմութենէ աստի զրոյցք իշխանաց մերոց, բայց եթէ գուցէ գտցի ինչ՝ բաւական քեզ բերցի նախ քան զմեզ պատմեալն ի Հայ-հոց պատմագրէ»։

ԷՋ 131—132. Ստեփանոս կոնի Նահա-տակութիւնը (855) պատմելէն ետքը կը գրէ. «Յայսմ հետէ ապա եթէ թեթեւ թուեսցի քեզ զառ ի ծերունեացն անցեալ բան ի պար-զագունիցն չափաբերապէս հանդիպեցայց. վասն զի հաճեցաւ բանս ոչ երկրորդել միւսանգամ զհետեւանս զրուցաց Հայհոց Բագրատունւոյ եւ մերում ժամանակի պատմագրի, որ յայտնապա-տում խոկ արարեալ է զրոյցս պայազատութեան որդւոյ Աշոտոյ սպարապետին Սմբատայ զիշխա-նական պատմութիւնն, եւ զթագաւորացն զհան-գամանացն զկարգս. եւ կամ զդարձ գերելոցն ի Բուխայէ զհայաստանեայցս իշխանաց եւ նա-խարարաց յիւրաքանչիւրն սեպհական իշխա-նութիւնս ածեալ կացեալ հաստատեալ. եւ թէ ոյք ի նոցանէ հոյակապք եւ հարուստք եւ ուժե-ղակք ընդդէմ հակառակորդաց հինից գտան. եւ կամ ոյք յումեքէ եղեն հարստահարեալք, եւ կամ զվախճան նոցա յիւրաքանչիւրում տեղ։ ...Արդ այսպէս ես աստանօր զբովանդակն ի նա թողացուցեալ՝ եւ ինչ ինչ հարկաւորաբար այժմ ինչ պիտոյ է ճառս պատմութիւն, զայն եւեթ համառօտ քեզ ընծեռութիւն առնելով, փորձեցայց սակաւուք իբր ներածութեան եղա-նակաւ՝ որպէս վերագոյն ասացաւ, ի մանկու-թենէ մինչեւ ցերեւոյթս երիտասարդութեանն

զԱշոտոյ՝ որդւոյ Սմբատայ սպարապետի, զզօրու-
թիւնս եւ զքաջութիւնս եւ զպատերազմունս եւ
զհրոմունս յայլս եւ զայլոց եւս ի նա՝ բաւական
բերցի քեզ առ ի Շապհոյ պատմեալքն»։

Էջ 141—142. Գրիգոր Դերենիկի
եղեռնական մահը եւ իշխանութեան գլուխը
անոր Աշոտ որդւոյն անցնիլը յիշելով կ՛աւելցնէ.
«Բայց զմնացորդս բանիցս այսոցիկ՝ զօրու-
թեանց եւ քաջութեանց եւ մրցանաց եւ պա-
տերազմաց եւ բազում բարի օձանից աւանիկ
գրեալ ի գիրս պատմութեանց Շապհոյ Բագրա-
տունւոյ՝ բաւական քեզ կացուցանել տեղեկա-
գոյն առնն բարեբաստութեան» (այս ինքն Գրի-
գոր Դերենիկի)։

Համաձայն Յովհ. Պատմաբանի խօսքերուն՝
Շապհոյ Պատմութիւնը կ՛ընդգրկէր 1. «Համա-
ռօտիւ զգործս իշխանաց Հայոց» 788—853
շրջանին (էջ 111)։ Ապա 2. «զդարձ գերելոցն
ի Բուխայէ[1] զհայաստանեայցս իշխանաց եւ նա-
խարարաց եւ թէ ոյք ի նոցանէ հոյակապք եւ
հարուստք եւ ուժեղակք ընդդէմ հակառակոր-

[1] Շապուհ գանց առած է պատմել մանրամասնաբար Բուղայի արշաւանքները եւ Հայ նախարարաց գերեվարութեան պատմութիւնը. այս անցքերէ կը տեղեկանք Թովմա Արծրունւոյ խօսքերէն, որ Ջափր ամիրապետի Բուղայի ձեռքով Հայաստան կատարած բռնութեանց պատմութիւնը անգիր մնացած գիտէ. «Բայց մեզ կայ առաջի առեալ զվան Ջափրայ եւ չար գործոց նորա՝ անգէտ Շապհոյ յայլոց, զոր կատարեաց ի վերայ աշխարհիս Հայոց երկայնագոյն ժամանակաւ, եւ անըմբռնելի նեղութեամբ ի մերս հանդիպեալ աւուրս, որ էր Հայոց Յ (851) թուականին» (Թովմ. Արծր., էջ 106)։

դաց հինից գտան, եւ կամ ոյք յումեքէ եղեն հարստահարեալք՝ եւ կամ զվախճան նոցա յիւրաքանչիւրումն տեղւոջ» (էջ 132), զոր օրինակ զգործս «զօրութեանց եւ քաջութեանց եւ մրցանաց եւ պատերազմաց եւ բազում բարի օձանից» Գրիգոր Գերենիկի (էջ 141—142)։ Բայց յատկապէս 3. իր պատմութեան մէջ կարկառուն դէմք ընտրած է իր հասակակիցն եւ տոհմակիցն Սմբատեան Աշոտ Բագրատունին, որուն «ի մանկութենէ մինչեւ յերեւոյթս երիտասարդութեանն... զզօրութիւնս եւ զքաջութիւնս եւ զպատերազմունս եւ զհրոսմունս յայլս եւ զայլոց եւս ի նա» պատմած է մանրամասնաբար (էջ 132) եւ կամ ուրիշ խօսքով «գրով դրոշմեալ է զնորայն գործոց եւ զգնացից եւ իմաստից եւ մրցանաց եւ շինութեանց եւ խաղաղութեան հանդէս» (էջ 6—7)։

Պատմաբանին այս տողերէն յայտնի կը տեսնուի թէ Շապուհ իր պատմութիւնը սկսելով 788էն երկարած է մինչեւ Աշոտի կենաց վերջին դէպքերը։ Բայց թէ նաեւ վերջին 5—6 տարիներու, այսինք Աշոտի իբրեւ թագաւոր գործունէութեան շրջանին պատմութիւնն ալ շօշափա՞ծ է, այս մասին մութ կը մնան Պատմաբանին տողերը, որոնք աւելի ժխտելու քան թէ հաստատելու կը միտին։ Պատմաբան ուրիշ տեղ մը մինչեւ անգամ յայտնապէս կը շեշտէ այս միտքը, երբ կ՚ըսէ թէ Շապուհ «յայտնապատում իսկ աբարեալ է զզրոյցս պայազատութեան Աշոտոյ որդւոյ (տպ. որդւոյ Աշոտոյ) սպարապետին

Սմբատայ զիշխանական պատմութիւնն», այս ինքն այն շրջանի պատմութիւնը, ուր Աշոտ իբրեւ իշխանաց իշխան (862—885) գործած է։

Մեր այս տեսութեան իբրեւ հաստատութիւն կրնանք ի մէջ բերել խորագրին «յանուն Դաւթի որդւոյ Աշոտոյ իշխանաց իշխանի» խօսքերը, ուր Աշոտ կը ներկայանայ տակաւին իշխանաց իշխան եւ ոչ թագաւոր (885—890), այս ինքն Շապուհ ի խնդրոյ Դաւիթ Բագրատունւոյ[1] գրած եւ աւարտած է իր Պատմութիւնը ժամանակ մը, երբ անոր՝ Դաւթի հայրը Աշոտ դեռ «իշխանաց իշխան» տիտղոսը կը կրէր, այն է 885էն յառաջ։

Հաստատուն եզր բռնելով 884 թուականը՝ կը համարիմ, թէ այս թուին մերձաւորապէս կ'իյնայ նաեւ Շապուհ Բագրատունւոյ վախճանը, ուստի եւ ինձի անհիմն կ'երեւայ Տէր-Մովսէսեանի տուած ժամանակագրութիւնը, որ յեցած անվերջ ենթադրութեանց վրայ այսպէս կը պատկերացուի. «Եթէ ընդունենք որ Շապուհը իր պատմութիւնը հասցրել էր մինչեւ Սմբատի մահը, կը ստանանք որ նա գրել է մինչեւ

[1] Այս Դաւիթ Աշոտ իշխանաց իշխանի՝ ապա թագաւորի որդին էր, եղբայրն Սմբատ թագաւորի (890—914) եւ Շապուհ Սպարապետի. ինքն ալ ի կարգին (հաւանօրէն եղբօր թագ կապելէն յետոյ) յորջորջուած է «իշխանաց իշխան Հայոց». վախճանեցաւ իր եղբօր Շապուհ սպարապետին մահուընէն քիչ առաջ, 904ի մօտերը, ի մեծ սուգ իր եղբօր Սմբատ թագաւորի, զոր մխիթարած է կաթողիկոսը։ Յովհ. Պատմաբան (էջ 194—195) գիտէ զինքը «այր համեստ եւ հարթ հաւատարմութեամբ ի բոլոր գործառնութիւն բարեաց»։

914թ., որ է Սմբատի մահուան տարին...։ Ընդունելով որ ապուհիւպատի տիտղոսի արժանացող Աշոտի որդին Շապուհը կայսեր գալըստեան ժամանակ (833—842) արդէն ծնուած էր, նրան 70—80 տարի կեանք պիտի վերագրենք, որ կարելի է իրական համարել։ Բայց եթէ ընդունենք որ Շապուհը գուցէ աւելի ուշ է ծնուել, կայսեր Հայաստան գալուց յետոյ, Շապուհի երկարակեցութիւնը զգալի կերպով կը կրճատուի։ Ուստի մենք համակիր ենք ինչ որ Ջամչեանի կարծիքն է, Շապուհին այս Աշոտ Բագրատանու որդի համարել, որի կեանքի ժամանակամիջոցն ընկնում է 838ից մինչեւ 920 թուականը„ (էջ XI)։

Պատմութեան ոճի մասին Յովհաննէս պատմաբան կը հաղորդէ հետեւեալ նկատողութիւնը (էջ 132)․ “Զի թէպէտ ստուգութիւն սահմանական բանի բացատրութեան եւ զբոլորովին բաժանումն ապացուցից ոչ կարացեալ ըստ քերթողական հրահանգացն համառօտաբար ընձեռել, սակայն ըստ իւրումն ժամանակի ընտանի գոլով նորա զրուցացն ամենայնի՝ գեղջուկ բանիւ բաւական քեզ տայ պատճառս տեղեկութեան։„

Շապուհ, ըստ Յովհ. պատմաբանի, գրած է իւր պատմութիւնը միամտօրէն, “գեղջուկ բանիւ„, այնպէս ինչպէս պատմուած է իրեն եւ “ըստ իւրումն ժամանակի ընտանի գոլով նորա զրուցացն ամենայնի„ գրի առած է զանոնք՝ առանց ընտրելու ուղիղն սուտէն, հաւատալին

անհաւատալիէն, առանց սերտ կապակցութեան դիպաց, առանց կանոնաւոր դասաւորութեան կամ ամփոփման՝ «զստուգութիւն սահմանական բանի բացատրութեան եւ զբոլորովին բաժանումն ապացուցից ոչ կարացեալ ըստ քերթողական հրահանգացն համառօտաբար ընձեռել»:

«Պատմաբանի գեղջուկ բանիւ» ասութիւնն առհասարակ առաջնորդած է այն մտքի, թէ Շապուհ ըլլալով ոչ-եկեղեցական մատենագիր, իւր Պատմութեան համար գործածած է աշխարհաբար՝ ժամանակի ռամկօրէն լեզուն[1]: Բայց ինչպէս ուղիղ կը նկատէ Յովհաննեան՝ «յայտնի է որ Յովհաննու կաթողիկոսի խօսքը լեզուի ռամկականութեան վրայ չէ, այլ իմաստասիրական կամ քերթողական կերպին եւ ոճոյն վրայ», «որպէս թէ ուզեր ըսել, չէ կրցեր Շապուհ Բագրատունի կարգաւորեալ ուսումնական ոճով գրել իւր Պատմութիւնն[2]»:

---

1 «Ընդունած այս երկու [գրական եւ ժողովրդական] բարբառոց տարբերութիւնն աւելի բացայայտ ըլլալուն համար է՝ որ Մատենագրութեան Քէրթողական լեզուին դիմաց՝ Գեղջուկ Բարբառ անուն կ'առնու այն անգիր արհամար լեզուն (թէեւ խանգարեալ քերթողականէ մը շատ աւելի բնականն): Բայց չենք սխալիր եթէ նոյն համարման դաս եղած ըսենք Շապհոյ Բագրատունւոյ պատմագրութիւնը որ չհասկանալով զրոյցներէն հաւաքած՝ յայտնապէս գեղջուկ պարզուկ ռամիկ լեզուաւ շարագրած՝ իր տեսակին մէջ միակ աղբիւր մը կ'ըլլար հիմայ մեր ձեռքը՝ գոնէ Թ. դարուն աշխարհիկ հայերէնին»: Հ. Ա. Այտընեան՝ Քննական քերականութիւն աշխարհաբար կամ արդի հայերէն լեզուի. Վիեննա 1866, Նախաշաւիղ, էջ 138:

2 Հ. Գ. Յովհաննեան՝ Հետազօտութիւն Նախնեաց ռամկօրէնի վրայ. Վիեննա 1887, էջ 29—30. Հմմտ. անդ «Գեղջուկ» բառին իմաստի մասին Նախնեաց քով:

*Եւ յիրաւի այն հատակոտորները, զորոնք պահած հասցուցած է մեզի ժամանակը (տես վարը), վկայ են թէ ինչպէս անիկա հմուտ է գրական՝ գրաբար հայերէնի եւ որչափ յաջողութեամբ կրցած է կիրարկել զայն պատմագրութեան ժամանակ. իր լեզուն պարզ է եւ կանոնեալ: Այս հատակոտորներն մի եւ նոյն ժամանակ կը հաւատարմացնեն Պատմաբան կաթողիկոսի ուղիղ դատաստանը Շապհոյ ոճին նկատմամբ, ցուցադրելով մեզի հատուածներ, ուր պատմագիր հեղինակն այնպէս ձախողակի կը սայթաքի, ստոստելով պատմական աշխատութեան մը մէջ միամտօրէն եւ աւելորդաբանութեամբ պատմութեան անյարիր նիւթերու (հմմտ. Պահոց հատուածը, Կոստանդիանոսի թագին զրոյցը):*

*Շապհոյ Պատմութիւնը չէ հասած մեզի ամբողջութեամբ: Բայց անոր ծանօթ էին հիներէն բացի Յովհ. կաթողիկոսէն՝ Ուխտանէս, որ կը պատմագրէր 880 ին, Ասողիկ (1004-ին), Սամուէլ Անեցի, հաւանօրէն նաեւ Վարդան եւ Կիրակոս*[1]*, որոնք յանուանէ կը յիշեն զՇապուհ*[2]*:*

---

1 *Բնաւ ուղիղ չի թուիր Ալիշանեանի ենթադրութիւնն թէ "Հաւանական կ'երեւայ որ Սամ. Անեցի, Կիրակոս եւ Վարդան ի ձեռին ունեցած չըլլան„ Շապհոյ գործը. Հետազօտութիւն, էջ 42:*

2 *Ասողիկ էջ 7. "Հաւաք յետոյ ի վերջին աւուրս Պատմութիւնք Շապհոյ Բագրատունւոյ, եւ Տեառն Յովհաննիսի Հայոց կաթողիկոսի, որք առ ժամանակօքն Աշոտոյ եւ Սմբատայ առաջին թագաւորաց Բագրատունեաց„. էջ 13 "ուսուցանէ քեզ պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ որդւոյ Աշոտոյ անթիպատրկի„: Սամ. Անեցի էջ 83 յամի ՄԿ "Երեւեալ կոյին, յորում՝ զգիրքն գացեա-*

Զարմանալի է որ Թովմա Արծրունի չի յիշեր զինքը յանուանէ, որ այնպէս մերձաւոր էր Շապհոյ։ Այս լռութիւնը սակայն ապացոյց չի կրնար նկատուիլ հետեւցնելու թէ անծանօթ մնացած է իրեն Շապհոյ պատմութիւնը։ Քանզի կ'երեւայ թէ Թովմա կարդացած է Շապհոյ պատմական երկասիրութիւնը. եւ հաւանօրէն անոր մասին են հետեւեալ ակնարկութիւնները, երբ խօսելով Վասպուրականի տիրոջ Գուրգէնի քաջագործութիւններու (855—866) վրայ կը ջատագովէ իր համառօտաբանութիւնն "վասն ոչ ոճով զսորայս կարգել գնել ի շարի աստ զշարագրածս. վասն ոչ բաւելոյ զանչափութիւն ի մի վայր գումարել... մանաւանդ զի յառաջագոյն քան զմեզ այլոց ոմանց շարակարգեալ գրեալ հաւաքեալ է ի մի շար" (էջ 198)։ Այս "այլք ոմանք" առանց տարակուսի Շապուհի անձը կ'ակնարկեն (հմմտ. եւ Brosset, Collection d'historiens arméniens, t. I (Th. Ardzrouni), S. Pétersbourg 1874,

ու պատմագրութիւնս առաջնոյն՝ Շապուհ եւ Ասողնիկ յիշեն". եւ էջ 3 ի թիւս պատմագրաց կը յիշէ "եւ Ղեւոնդ երիցու եւ Շապհոյ եւ տէր Յովհաննէսի"։ Մխիթ. Անեցի, էջ 15. "Եղիշէ, Շապուհ եւ Սեբէոս որ Հերակլին է"։ Մխիթ. Այրիվանեցի, էջ 37. "Եղիշէ վարդապետ, Շապուհ Բագրատունի, Եւսեբի որ ի Հերակլին". էջ 70 յամի 901. "Շապուհ Բագրատունի պատմագիր. տէր Յովհաննէս կաթողիկոս պատմագիր"։ Կիրակոս էջ 3. "Եւ Թովմայ վարդապետ տանն Արծրունեաց, եւ Շապուհ Բագրատունի եւ տէր Յովհաննէս կաթողիկոսն Հայոց". էջ 44. "այլ եւ յոլովակի չարիս անցոյց (Ջափր) ընդ աշխարհս, զոր գրեաց ի գիրսն Թովմայի եւ Շապուհի եւ այլոց պատմագրաց"։

p. 159, n. 2)։ Այս բոլոր պատմագիրները երբ առիթ կ'ունենան ձեռք առնելու Շապհոյ Պատմութիւնը, առ հասարակ աղօտ քաղուածներով միայն կ'օգտուին անկէ, երբեմն յանուանէ յիշելով աղբիւրը, բայց յաճախ անգամ առանց անուան։ Այսպիսի հատուածներ մատամբ ցոյց տալ դժուարին է մեզի[1], քանի որ չունինք Շապհոյ գործը մեր ձեռքը։ Աստորեւ կը յիշատակեմ միայն այն հատուածները, որոնք առանց տարակուսի Շապհոյ Պատմութենէն հանուած են։

1. *Տապուհ Պատմութիւն, որ է գիրք սրբոյն Սմբատայ ասպարապետին եւ այլ նահատակացն թուին Հայոց ԳՃԲ (853)։* — Այս գրութիւնը յանուն Շապհոյ կը յիշատակէ հայ պատմագիրներու շարքին մէջ Յակոբ Այուբեան (հմմտ. Գալէմքեարեան՝ Պատմութիւն հայ լրագրութեան. Ա, էջ 206, հանուած Ազգարարէն)։ Իրմէ գիտէ հաւանօրէն նաեւ Զարբհանէլեան՝ Պատմութիւն Հայկ. հին դպրութեան, Վենետիկ 1897, էջ 504, ծն. 1։ Այուբեան աշխատութեանս ծանօթացած ըլլալու է Նոր-Ջուղայի Մա-

---

1 Մարկուարտ՝ Բագրատունեաց ծագումը, էջ 133–134, ծան. 2, ուղղակի Շապհոյ Պատմութենէն առնուած կը համարի Ասողկան էջ 144 Յունաց ("Հոռոմգիներոյ") բանէն արշաւանքի յիշատակութիւնը. ուր "Հոռոմգին = Հոռոմք անունն կը համարի "Շապուհ Բագրատունւոյն ամկախառն ոճէն օրինակ մը. եւ արդէն իր ոճին համար Շապուհ իր յաջորդ հայ պատմագիրներէն կը զատուի։ Ասկէ զատ հոն Ասողկի բնագրին մէջ տեղւոյ անունները մեծաւ մասամբ չափազանց կերպարանափոխուած են"։

տենագարանէն, որուն 214 ձեռագիրներու համառօտ ցուցակին մէջ, զոր Բրոսէի խնդրանօք կազմած է 1853ին Գալուստ Շիրմազանեան, կը յիշատակուի գրութիւն մը այսպիսի վերնագրով. “Շապուհ պատմագիր. որ է պատմութիւն Որմըզդաքըրադայ (այսպէս) եւ այլոց նահատակաց որ ի թուին ԳՃԲ„ (Հմմտ. Տէր-Մովսէսեան, էջ VI)։

Թէ ինչ գրութիւն էր այն, նո՞յն է պատմութեան հետ թէ անկէ հանուած մաս մը, եւ թէ ինչ եղաւ այժմ ձեռագիրը, չունինք մասնաւոր տեղեկութիւն։

Այսպիսի բովանդակութեամբ գրութիւն մը կը յիշատակուի առանց Շապուհի անուան՝ Սարգիս արքեպիսկոպոս Ջալալեանցի ձեռագիրներու ցուցակին մէջ (Մեղու Հայաստանի, 1858, Թ. 15). “Պատմութիւն մահուան Սմբատայ եւ աւերանաց աշխարհին Հայոց յանորէն Յուսուփայ„, որուն կից ցուցակագիրն կ՚աւելցնէ փակագծի մէջ “գուցէ Շապուհ Բագրատունի„։ Հ. Գալէմքեարեան (Հանդ. Ամս. 1896, էջ 59) որ ուշադիր եղած է այս կէտին, ամենեւին տարակուսելի չի գտներ “որ այս Շապուհ Բագրատունւոյ կորուսեալ պատմութիւնն է„։

853ին Բուղայի ձեռքով նահատակուած վկաներու մասին Յովհ. կաթողիկոս մանրամասնութիւններ կը հաղորդէ, ապահովապէս Շապուհէն քաղելով (Հմմտ. էջ 131)։ Ինքն ալ ճշդիւ թուականը կը նշանակէ “ՅԲ թուակա-

նութեանս Թորգոմեան„, իսկ վկաներու թիւը "որ առաջի եւ զկնի„ "ընդ ամենայն աւելի քան զճ' այր„ (էջ 125)։ Այս նահատակներու թուին մէջ Յովհ. կաթողիկոս յականէ յանուանէ կը յիշատակէ՝ Ատոմ Աղբակ գաւառէն († 853, էջ 122—124), Սմբատ Բագրատունի սպարապետ († 855, էջ 128—130) եւ Ստեփանոս Կոն († 855, էջ 130—131)։ Նոյն նահատակներու համառօտ յիշատակութիւնը կ'ընէ նաեւ Կիրակոս Գանձակեցի (էջ 44) մանրամասնութեանց համար առաքելով ընթերցողը հին պատմագիրներու. "զորս գտցես ի գիրս Թովմայի եւ Շապհոյ եւ այլոց պատմագրացն„։ Իսկ Սամ. Անեցի, էջ 93—94, որ նոյն մանրամասնութիւնները կը հաղորդէ, աղբիւր ցոյց չի տար,

Այսպէս թէ սոյն գրուածքին հեղինակն Շապուհ է, խնդրոյ նիւթ չի կրնար ըլլալ։ Սակայն Տէր-Մովսէսեանի հետ (էջ VII) համամիտ ենք ընդունելու, թէ այս գրուածքը առանձին երկասիրութիւն մ'ըլլալու չէր, այլ մասն պատմութեան, թերեւս ապա նաեւ առանձին գրքով հրատարակուած։ Մինչեւ 60ական թուականը այն գոյութիւն ունէր հայ գրչագիրներու մէջ. տա՛ր բախտը, որ հրապարակ ելլէր։ Պէտք է քրքրել Էջմիածնի եւ Նոր-Ջուղայի Մատենադարանները։

2. *Յաղագս թագին Կոստանդիանոսի:* — Ուխտանէս Ա, էջ 109—111, Հե գլխով յառաջ կը բերէ Շապհոյ պատմու-

թենէն ընդարձակ հատուած մը "Յաղագս թագին երանելոյն Կոստանդիանոսի, թէ ուստի՞ կամ որպէս յաջողեալ եղեւ նմա ի Տեառնէ՝ Շափոյ որդւոյ (յօր. որիոյ) Աշոտոյ ապիհիւպատ պատրկի (յօր. ապահի պատրակի) ստացեալ ի Պատմութեան իւրում" (յօր. իւրոյ). սկզբնաւորութեամբս՝ "Կոստանդիանոս թագաւորէ ամս երեսուն եւ երեք։ Սա եղեալ ի կողմանս Բիւզանդացւոց՝ շինեաց քաղաք եւ կոչեաց զանուն նորա Կոստանդնուպոլիս." — որ կը վերջանայ այսպէս. "Արդ ասացաք զորպիսութիւն թագին ի Պատմութենէ Շափոյ":

Այս հատուածը Ուխտանիսի Պատմութենէն հանելով տպած էր առաջին անգամ Մ. Մսերեանց "Շապուհ Պատմագիր" խորագրով յօդուածին մէջ, Ճռաքաղ, Գ. (1861—1862), էջ 129—130։ Գաղղիերէն թարգմանութիւն մը հմմտ. M. Brosset, Deux historiens arméniens, Kiracos de Gantzac, XIII[e] s., Histoire d'Arménie; Oukhtanès d'Ourha, X[e] s., Histoire en trois parties. I. St. Pétersbourg 1870, p. 274—275. Զարբհանալեանի անծանօթ մնացած է այս հատուածը։

Հատուածիս Շապհոյ հարազատ ըլլալուն վկայ է Ասողիկ, որ անկախ Ուխտանէսէն կը յիշատակէ զայն այսպէս (էջ 138). "Սա (Կոստանդիանոս) խնդրեաց եւ առ զնախնիկին թագն Դաւթի մարգարէին ի Շապհոյ Պարսից արքայէ, զոր բարձեալ էր ի գլխոյն Յեքոնեայ որդւոյ Յովսիայ Նաբուգոդոնոսոր արքայն, որպէս ու-

սուցանէ քեզ պատմութիւնն Հայոց Բագրատունեաց, որդւոյ Աշոտոյ անթիպատրկի (Զ. որդիոյ Աշոտի անթիպատրիկի)։

Որովհետեւ Ասողիկի անծանօթ մնացած է Ուխտանէսի պատմութիւնը, հարկ է ընդունիլ թէ Ասողիկ յիշեալ տեղեկութիւնները քաղած է ուղղակի Շապհոյ պատմութենէն։ Այս հիմամբ չեմ կրնար համախոհուրդ ըլլալ Տէր-Մովսէսեանի (էջ IV—V), որ չուզեր ընդունիլ, թէ Ասողիկ ուղղակի օգտուած ըլլայ Շապուհէն։ Ուխտանէս, որ 980ին կը յօրինէր իւր պատմական քաղուածոյքը (հմմտ. իմ Կիւրիոն կաթողիկոս Վրաց, էջ 54) անշուշտ պիտի արժանանար Ասողիկէն յիշուելու, եթէ անոր ծանօթ ըլլար։ Նոյն զոյգը կը յիշէ նաեւ Վարդան, էջ 42, “հաւանօրէն Ուխտանէսէն առնելով„ (Յովնանեան՝ Հետազօտութիւնք, էջ 42)։

Կը կարծեմ թէ հատուածս նախնաբար կը կազմէր Շապհոյ պատմութեան այն գլխուն մասը, որ կը ճառէր “զթագաւորացն հանգամանացն զկարգս„ (Յովհ. կաթ. էջ 131), ինչպէս հատուածիս սկզբնաւորութիւնը ցոյց կուտայ. եւ անկէ անփոփոխ արտագրուած է Ուխտանէսէն[1]։ Ստորեւ առիթ պիտի ունենանք մասնացոյց ընելու այս գլխէն ուրիշ մասեր ալ։

1 Չեմ կրնար մասնակցիլ Յովհաննեանի կարծեաց, որուն “աւելի հաւանական կ'երեւայ որ (Ուխտանէս զզոյգս) բառ իմաստին միայն առած է եւ ինքնին ընդլայնած, քան թէ բառ առ բառ անկէ (Շապուհէն) օրինակած„ (Հետազօտութիւնք, էջ 43)։ Յաջորդ հատուածը որ բառ առ բառ նոյն նկարագիրը կը կրէ, վկայ է անփոփոխ հարազատութեան։

*Աւշագրաւ է այն իր պարզ գրաբար լեզուով, ուր «գեղջուկ» է պատմուածքը, անյօդ, լի կրկնութիւններով, միջանկեալներով, բայց դիւրահասկնալի։ Կը տեսնուի թէ պատմագիրն հմուտ է սուրբ հարց գրուածներուն, կարդացած է Գր. Աստուածաբանի ճառերը, ծանօթ է Նիկիոյ ժողովոյն պատմութեան, որուն կանոնները նաեւ վասն Պահոց հատուածին մէջ կը յիշատակէ։ — Թագին զրոյցը հաւանօրէն լսած է ի Կ.Պոլիս, ուր էր եւ Ս. Առաքելոց հրաշալի եկեղեցին, «յորում է տապան Նորուն Ս. Կոստանդիանոսի եւ այլոց ուղղափառ թագաւորացն. Նաեւ ի յատակս բեմին կայ հանգիստ մեծի հայրապետին Յովհ. Ոսկեբերանի»։ Գիտէ թէ «յետ մեծի Կիւրակէի Պասեքին յաւուր երկուշաբաթւոջ» կը պսակուին նոյն թագով «կայսերք Հոռոմոց. նոյնպէս եւ յերկրորդ Կիւրակէին որ կոչի Նաւակատեաց» նոյն թագով պսակուած կը վերադառնայ կայսրը Ս. Մոգք եկեղեցիէն։ Մանրամասնութիւններ, որոնք հաւանօրէն անձնական տպաւորութեան տակ գրի առնուած են։*

3. *Բան վասն Պահոց*։ — *«Ի Շապհոյ պատմութենէ։ Այլ քանզի ստունկանեաց եւ նախահայրն՝ յերկիր դարձաւ ուստի առաւ. բայց այսպիսի ինչ մեզ կարի ողորմելի եւ արտասուաց արժանի գործք...»։*

*Ընդամէնը* 26 *տող բան։ Ի կատարածին կ՚ըսուի. «Այս ի Պատմութենէ Շապհոյ Բագրատունոյ է, որդոյ Աշոտի ապուհիպատ պա-*

տրիկի յանուն Դաւթի Բագրատունւոյ որդւոյ Աշոտի իշխանաց իշխանի. զոր ի ձեռն առեալ եւ ընկալեալ յօժարութեամբ Հօր Դաւթի առաջնորդի վանացՍ. Ստեփաննոսի ի Բագրեւանդ գաւառի, եւ յոյժ բերկրեալ յաղագս հեռի գոլոյ ի ստութենէ, եւ լի ճշմարտութեամբ, յաւել յինքենէ զճառ բանից աստուածայնոց,,։

Էջմիածնի թ. 264 եւ 267 ձեռագիրներէն հրատարակեց առաջին անգամ Ա. Տէր Միքէլեան Սամուէլ Անեցւոյ ժամանակագրութեան (Վաղարշապատ 1893) ծանօթութիւններու մէջ, էջ 247—248։ Նոյնը երկրորդ անգամ լոյս տեսաւ ԲԶՄ. 1906, էջ 446—447, "Պատառիկ մը Շապուհ Բագրատունւոյ պատմութենէն,, խորագրուած. Հրատարակիչն անծանօթ նախորդ հրատարակութեան, իրեն հիմ առած է հաւանօրէն Վենետիկի Մխիթարեան Մատենադարանի Խմբագիրք ԻԱ. (= թ. 1562) ձեռագիրն, ուր ըստ ցուցակին (հմմտ. Տէր Մովսէսեան, էջ IX) կը յիշուի "Շապհոյ պատմչի պատառիկ,,։ Այս պատառիկն է անշուշտ եւ այն "Հատած ի Պատմութենէ Շապհոյ Բագրատունւոյ,, զոր կը յիշատակէ Նոր Հայկազեան Բառագիրք (Ա, էջ 17), որուն մասին ակնարկութիւն կ'ընէ նաեւ Somal, Quadro della storia letteraria di Armenia, Venezia 1829, էջ 56 (col nome di questo Sapore ci resta un frammento di altra sua opera sul Digiuno. Ենթադրելով վասն Պահոց առանձին գրուածք մը յանուն Շապհոյ)։

*Զարբհանալեան՝ Պատ. հայկ. հին դպրութեան, էջ 505 կը կասկածի հատածիս հարազատութեան վրայ՝ «այլ թերեւս ուրիշ համանուն անձի մը երկասիրութիւնն է», նոյնպէս Տէր-Մովսէսեան (էջ VII եւ X)՝ «վստահութեամբ կարելի է ասել, որ Պահքի մասին գրուած պատառիկը համարեա անկարելի է վերագրել պատմութեան հեղինակին»: Հաւանօրէն այս հատակտորը՝ կ'ակնարկէ եւ Այտընեան՝ քննական քերականութիւն. Նախաշաւիղ, էջ 131. ծան. 1, երբ կը գրէ. «կը համարինք թէ սխալմամբ Շապհոյ տրուած է այն փոքր հատուածն որ ձեռագրի մը մէջ յիշուած ու բացայայտ 'Շապհոյ Բագրատունւոյ, անուամբ յառաջ բերուած է, որ զուտ խրատական ճառի մը մասն է եւ ըստ լեզուին քան զՅովհ. կաթողիկոս շատ աւելի կարգաւորեալ գրաբար է եւ հնոց նմանագոյն: Ստուգագոյն վճիռը ժամանակին թողունք»: Բայց մենք չենք տեսներ ինչու դժուարութիւն Շապուհի հարազատ համարելու հատածս. այս տեղ ալ նոյն լեզուն, նոյն ոճն է, գրութեան նոյն եղանակը, ինչ որ նախորդհատուածին մէջ կ'իշխէր, վկայ հարազատութեան: Կը կարծեմ թէ Շապուհի այս պատառիկը կը վերաբերէր Յառաջաբանական մուտքին, հոն ուր անդրադարձութիւններ ըրած է Նախաստեղծ մարդոյն անկման վրայ:*

4. *Կարգ թագաւորաց: — Յովհ. կաթողիկոս կը յիշէր թէ Շապուհ ի մէջ այլոց գրած է իր Պատմութեան մէջ «զթագաւորացն*

հանգամանացն զկարգս,,, այս ինքն, ինչպէս կ'են-թադրեմ, առուած է Բիւզանդիոնի կայսերաց եւ Դամասկոսի ամիրապետներու յաջորդութեանց ցանկը՝ թերեւս համառօտ պատմութեամբ կամ յիշատակութեամբ կարեւոր դիպաց։ Այսպէսի ցանկեր արտագրած են հին պատմագիրներէն Թովմա Արծրունի (էջ 104—105), Ասողիկ, (էջ 136, 137 եւն) եւ Մխիթար Անեցի (էջ 47—48)։ Ինձի կ'երեւայ որ թէ Ասողիկ եւ թէ Անեցի օգտուած են Շապուհի պատմութենէն, թերեւս նաեւ Թովմ. Արծրունի[1]. այս մտածու-թիւնն կ'առթէ ինձ յատկապէս այն պարագան, որ երկուքն ալ իրենց ցանկերը կը բերեն կը հասցնեն 890 մերձաւորապէս։

Հաւանօրէն վրացի Բագրատունեաց ծագ-ման եւ յաջորդութեան պատմութիւնն ալ, զոր Վարդան ընդարձակօրէն յառաջ կը բերէ, քաղուածք մըն է Շապուհէն (Վարդան, էջ 76—86)։

5. *Վասն առասպելաց անօրէն Մահմետի եւ նորին ատութեան:* — Մխիթար Անեցի, էջ 35—43 ի մէջ կը բերէ Մահմետի մա-սին առասպելներ, որոնց աղբիւրն թէպէտ չի յի-

1 Թ. Արծրունի յիշելով իր ցանկին մէջ վերջին Ամիրապետ "Ջաֆր որդի Մահմետի ամս ԺԵ (իմա ԺԵ, 846–861) կ'աւելցնէ. "Եւ զայսք ժամանակաց սոցա յայլոց գրեալ յառաջագոյն՝ աւելորդ համարեցաք երկրորդել։ Նախ զանուանս եւ զթիւ ժամանակացն այլափոխս եդաւն մեզ"։ Մինչեւ 788 շրջանի համար անշուշտ Ղեւոնդ ամէնէն աւելի ճշտուած աղբիւր ըլլայ, իսկ յաջորդ շրջանի պատմագիրն է Շապուհ։

շատակեր, բայց հաւանօրէն քաղուած են Շապհոյ Պատմութենէն, դատելով ոճէն եւ այլ պարագաներէն։ Առաջին եւ երկրորդ հատածներու հեղինակը լսած է Մահմետի մասին հրապարակի վրայ շրջող առասպելները Կրետէ կղզւոյն վրայ քրիստոնեայ դարձած մահմետականէ մը. «զայս ամենայն երանելի այրն որ յոյժ տեղեակ էր, եւ եկն ի Կրետէս կղզի, հաւատաց, յայտնեաց եւ ծանոյց» (էջ 40). «զայն ամենայն յայտնեալ մեզ աշակերտ նորին... որ եկեալ մկրտեցաւ ի Կրետէս կղզւոջ... եւ մեք զառասպել եւ զզազիր պատրանս նորա գրեցաք առ ի ծանուցումն եւ ի զգուշութիւն երկեղածաց Քրիստոսի, զի փախուցեալ ատեսցուք զատելին Աստուծոյ» (էջ 43)։

Թէեւ մեզի ծանօթ չէ թէ Շապուհ մինչեւ Կրետէ հասած ըլլայ, բայց գիտենք որ նա Կ. Պոլիս այցելած է։ Աշոտ Ա.ոյն եւ Վասիլ կայսեր մէջ եղած սերտ յարաբերութիւնը մէկ կողմանէ եւ միւս կողմանէ Սպերի տիրոջ՝ Շապուհի հօր Բիւզանդիոնի հետ ստեղծած քաղաքական կապակցութիւնը ենթադրել կու տան որ Շապուհ իբրեւ գրագէտ անձնաւորութիւն ամրապնդած ըլլայ յարաբերութիւնները ստէպ երթեւեկութեամբ. եւ այս միջոցին լսած այն առասպելները։

Մահմետի մասին զրոյցներ կ՚աւանդեն Նաեւ Սեբէոս, Ղեւոնդ եւ Թովմա Արծրունի։ Վերջինս Մահմետի մասին երկար գրելէ ետքը (էջ 100—103) կ՚աւելցնէ. «արդ եկ ասացից

քեզ, որպիսի՛ ողբովք ողբայ զնոսա հին մատենագիրն ասելով. վա՜յ քեզ, եղուկ դու, ազգ Տաճկաց...» (էջ 103)։ Յամենայն դէպս Հապուհ չէր կրնար հոս իբրեւ նոր մատենագիր աղբիւր եղած ըլլալ Թովմայի։

Նոր պատառիկ մը Շապուհի վերագրուած։ — Վենետիկի Մխիթարեան Մատենադարանի Խմբագիրք ԻԱ կը պարունակէ «Պատմական հատուածք հանեալ ի ձեռագրաց Կարապետ վարդապետի Շահնազարեանց, որք կարծին գոլ Շապհոյ»։ Ասոնք ընդ ամէնը երեք հատուած են. Ա. հատուածն Ուխտանիսի ՀԵ գլուխն՝ այն է Կոստանդիանոսի Թագին զրոյցը Շապհոյ Պատմութենէն, Բ.ն է Ուխտանիսի ՀԶ գլուխը՝ հոս Շապհոյ վերագրուած, մինչ Ուխտանիսի քով անանուն է։ Չկայ հիմ զայն Շապհոյ վերագրելու։

Երրորդ հատուածն՝ «Յաւուրս Թագաւորին Սմբատայ եկն Յուսուփ ոստիկան ի Հայս»... սկզբնաւորութեամբ է եւ կը պատմէ Սմբատ Ա. Թագաւորի, Աշոտի որդւոյն Յուսուփ ոստիկանէն եւ Լեւոն կայսրէն թագ ընդունիլը. Յուսափի եւ Սմբատի մէջ տեղի ունեցած կեղծեօք կռիւը, Սմբատի դէմ դաւադրութիւնը, Յովհան կաթողիկոսի բանտարկութիւնն ՅԾԸ = 909 թուին, Հայ իշխանաց դեղակուր սպանութիւնը, Սեւանի կռիւը, Սիւնեաց Մարիամ տիկնոջ մահը, Սմբատի նահատակութիւնը, Աշոտ Երկաթի թագաւորելը։ Ապա ստամամբ կ'անցնի Մրուան, Մահմէտ, Արդիլա, Ոգորս,

Վլիթ, Օմար ոստիկաններու Հայաստան գալը, է եւ Ը դարու դէպքեր: Որկին կ'անցնի Աշոտ Ա.ոյ թագաւորելուն եւ Սմբատ թագաւորի մասին կրկնութիւններով: Որկին անգամ ոստում գործելով դէպ ի յետս՝ կը յիշէ Հերակլի անցքերը: Հմմտ. Հ. Ղ. Տ[այեան]՝ 'Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ եւ Ս. Ղազարու գրչագիրները„. ԲԶՄ. 1922, էջ 69—73:

Պատառիկէս օգտուած է Հ. Ալիշան Սիսական էջ 33, ուր յառաջ բերելով հատուած մը Վասակ Գաբուռի որդւոյ մասին, ծան. 3 կը գրէ. "Շապհոյ պատմչի Բագրատունեաց թուի հատուած բանից„:

Բայց ինձի զարմանք կը պատճառէ թէ ինչպէս Շահնազարեան[1] պատառիկս կրնայ Շապհոյ վերագրել, որ իւր բովանդակութեամբ ԺԴ դարու նկարագիրն կը կրէ:

Հրատարակիչն Հ. Ղ. Տ. արդէն դիտել կու տայ որ "մի քանի մասեր զոյգ կ'ընթանան Յովհաննէս կաթողիկոսի պատմութեան հետ, նոյն իսկ բառ առ բառ, մերթ մերինը կը յառաջէ՝ գլխաւոր կէտերը շօշափելով, եւ կամ թողլով շարքը՝ կ'անցնի անկէ նախընթաց դէպքերուն: Երբեմն ալ կը համառօտէ, մինչ Յովհ.

---

1 Շահնազարեան հանած է պատառիկս Պետերբուրգի Ասիական Մուզէոնի ձեռագիրներէն, ինչպէս կը գրէ Brosset, „Le V. Chahnazarian ...croit en avoir trouvé des fragments considérables, qu'il a copiés et cédés au Musée asiatique de notre Académie“. Հմմտ. M. Brosset, Deux historiens arméniens I, p. 274, n. 2.

պատմագիր կը գնէ նաեւ անոնց պարագաները. կան եւ մի քանի մասեր, որոնց չկրցանք հանդիպիլ Յովհաննու պատմութեան մէջ„ (ԹԶՄ., էջ 69)։ Ամբողջին մէջ կ'իշխէ Յովհ. պատմաբանի ուռուցիկ սեթեւեթեալ ոճը, ուստի եւ յայտնապէս քաղուած է պատմաբանէն եւ զուր է փնտռել հոն Շապհոյ պարզ գրիչը։ Աւելի հաւանօրէն Մխիթար Անեցւոյ պատմութեան կը վերաբերէր այն, ծայրաքաղ հանուած ազատօրէն պատմաբանէն։ Այն պարագան որ պատառիկս կը շօշափէ 914ի դէպքերը, եւ կը ճանչնայ “զկաթողիկէն Իշխանին„ (էջ 73) առաջին անգամ ԺԳ. դարուն այսպէս կոչուած, ինքնին կասկածելի կ'ընէ Շապուհի գրիչը։ Ս. Ղազարու Մխիթարեան Հայրք, յատկապէս Հ. Ալիշան պէտք էին անդրադարձած ըլլալ անհարազատութեան, յառաջ քան զայն հրապարակ հանելը՝ աւելորդ տեղ անոր “քննութիւնը բանասիրաց թողլով„։

Ահա ինչ որ թոյլ կու տար մեզի ըսել ժամանակը Շապհոյ անձին եւ գրական գործունէութեան վրայ. ինչ որ կը հայի յատկապէս իր նկարագրին, զայն կրնանք ամփոփել հետեւեալ տողերու մէջ։

Շապուհ Բագրատունի հակառակ իր իշխանական ծագման ապրեցաւ լռին կեանք մը հեռու քաղաքական ասպարէզէն։ Գրական զբաղումներն աւելի գրաւեցին իր սիրտը քան զէնքերու շառաչմունք։ Թէեւ զինուորական համազգեստի ներքեւ ի մերձաւորութեան արքունեաց

ապրեցաւ, բայց զինուորական շարժմանց հեռուէն միայն հանդիսատես եղաւ: Անձնատուր նախնեաց մատենագրութեան ընթերցման՝ զարգացուց իւր մէջ գրական ճաշակ եւ ինքնին մղուեցաւ մատենագրելու: Ազգակցին՝ Դաւիթ Բագրատունւոյ մէկ կամքը շարժառիթ եղաւ իրեն յանպատրաստից Բագրատունեաց տոհմին անդրանիկ "պատմագիրն" հանդիսանալու: Եթէ Յովհ. կաթողիկոս անոր ոճը "գեղջուկ բանիւ" կը գտնէ, անհամապատասխան "քերթողական հրահանգաց", բայց այն բնաւ զարմանալի երեւալու չէ, եթէ նկատի առնուի որ պատմաբան կաթողիկոսին առ հասարակ անծանօթ մնացած է պատմագրի պարտականութիւնը: Շապուհ իւր "գեղջուկ" ոճովն աւելի սիրելի է մեզի քան կաթողիկոսն իւր "ըստ քերթողական հրահանգացն" սեթեւեթած բռնազբօսիկ եւ ուռուցիկ ոճով[1]:

Շապուհ թէպէտ "գեղջուկ բանիւ", բայց մանրամասնօրէն տուաւ Բագրատունի առաջին թագաւորի՝ Աշոտի գործոց եւ արութեանց պատմութիւնը, այսինքն թէ ինչպէս Հայաստան Բուղայի գերեվարութեան ծանր հարուածէն ետքը տակաւ առ տակաւ շունչ առաւ եւ Աշոտ իւր հեռատես քաղաքագիտութեամբ հիմ դրաւ իւր պետութեան: Ցորչափ Շապուհի երկասիրութիւնը յայտնուած չէ, Աշոտի պատմութիւնը իւր իսկութեամբ պիտի մնայ մեզի համար թաքուն: Գիտենք միայն որ անոր մահուան ժամանակ գոյութիւն ունէր հայկական պետութիւն

[1] Հմմտ. եւ Ալիշան՝ Հայապատում, էջ 189:

*մը, որ կ՚ամփոփէր իւր մէջ նաեւ Վրաստան եւ Աղուանքը, բայց թէ ինչպէս ի գոյութիւն եկաւ այս պետութիւնը, դժբախտաբար կ՚անգիտանանք իւր մանրամասնութեանց մէջ։ Յովհ. Պատմաբան թէեւ յաճախ անգամ կը յիշէ Շապուհի անունը, բայց անկէ շատ քիչ բան, ճշդագոյնս խօսելով ոչինչ յառաջ կը բերէ։ Ինքն է նաեւ ըստ մասին պատճառը, որ անագանագոյն ժամանակի մատենագիրներու քով ալ պահուած չէ Շապուհի Պատմութենէն կարեւոր մաս մը։ Անոնք, այսպէս Ասողիկ, Սամուէլ, Վարդան, Կիրակոս թէեւ կարդացած են — ինչպէս կ՚երեւայ — Շապուհի Պատմութիւնը, բայց Յովհաննէս կաթողիկոսի գործը, որ անոնց աչքին աւելի բարձրագոյն ճոխութիւն մը վայելած է, պատճառ եղած է, որ հետեւին աւելի անոր, քան Շապուհին*[1]*։*

*Մինչեւ հոս դիտմամբ չշօշափեցինք յանուն Շապհոյ հրատարակուած Պատմութիւնը, որուն պիտի անդրադառնանք յաջորդիւ։*

3.

*«Հազար ինը հարիւր տասնը եօթը թուին Վասպուրականի եւ Մշոյ դաշտի հայ ժողովուրդի մեծ գաղթի ժամանակ այնտեղի վանքերից եւ եկեղեցիներից Էջմիածին բերուած ձեռագիրների մէջ գտնուեց արտաքին գիրքով մի*

---

1 *Հմմտ.* H. Daghbaschian, Gründung des Bagratidenreiches durch Aschot Bagratuni. Berlin 1893. S. 90-91.

*աննշան հատորիկ, պատմական խիստ հետաքրքիր եւ անծանօթ բովանդակութեամբ»* (էջ I)։

*Այս ձեռագիրը «բերուած է Լիմ անապատից եւ ամենայն հաւանականութեամբ արտագրուած է նաեւ նոյն անապատում»։ Այժմ «Էջմիածնի Մատենադարանում նրա համարն է* 1371*»։ Մեծութիւնն է* 16×10 *սանտիմետր, միասին «շղագրաձեւ նօտրագրով», գրուած երկու տեսակ թղթի վրայ. թղ.* 1—85 *հաստ դեղնագոյն եւ անհարթ, թղ.* 86—195 *բարակ եւ փայլուն թուղթ է, պահուած հաստաբակ կաշեկազմով* (էջ XXX—XXXI)։ *Առաջին մասի բովանդակութիւնն է Հայոց խաչի, Սահակ կաթողիկոսի, Վարդ Պատրիկի եւ Արծրունեաց Ը—Ժ դարու պատմութիւնը։ Բ մասը կը պարունակէ Աբրահամ Կրետացւոյ ինքնակենսագրութիւնը՝ ծանօթ արդէն տպագրութեամբ։ Առաջին մասը կազմելու ժամանակ թըղթերու ետեւառաջութիւն կրած է, զորոնք խնամով դասաւորած է Տէր-Մկրտչեան* (էջ XXXI)*. իսկ սկիզբէն եւ վերջէն թղթեր ինկած են, զորոնք հնարաւոր չէ եղած լրացնել այլուստ։ Գրչութեան ժամանակն է հաւանօրէն ԺԷ—ԺԹ դար* (էջ XXXII)։

*«Նորագիւտ ձեռագիրը հեղինակի անձի մասին ոչ եւ է տեղեկութիւն չի պարունակում. որովհետեւ նա չունի ընդհանուր վերնագիր, ոչ վերջ եւ ոչ էլ սկիզբ, ուստի եւ անյայտ է մնում մեզ համար նաեւ գրքի սկզբնական անունն ու ծաւալը»* (էջ IX)։

Ձեռագրին կարեւոր բովանդակութեան անդրադարձած է առաջին անգամ Մեսրոպ եպիսկոպոս Տէր-Մովսէսեան, իսկ ուսումնասիրութիւնը թողուցած է գալուստ Տէր-Մկրտչեանի, որ «մանրամասն ուսումնասիրելով ձեռագիրը՝ բերանացի, եւ ոչ գրաւոր, մահուանից առաջ յայտնել էր Յուսիկ արքեպիսկոպոսին, որոշ վերապահութեամբ եւ Տիրայր եպիսկոպոսին, որ դա է մինչեւ այժմ կորած Շապուհ Բագրատունու պատմութիւնը, մինչդեռ իր արտագրութեան վերջին (էջ 61) կցուած Ձեռագրի համառօտ նկարագրութեան մէջ կոչում է «Հացունեաց խաչի նորագիւտ խմբագրութիւնը իւր շարունակութեամբ» (էջ I)։

Գալուստ Տէր-Մկրտչեան վաղահաս մահուամբ կ'արգելուի գրաւոր աւանդել իր տպաւորութիւնները գրութեան հեղինակի եւ ժամանակի մասին։ Բայց իր ենթադրութիւնը, թէ անոր մէջ Շապուհ Բագրատունւոյ Պատմութիւնը թաքնուած է, գրգիռ կ'ըլլայ Մեսրոպ եպիսկոպոսին անդրադարձ քննութեան ենթարկել գրուածքս, որ կը բերէ կը հասցնէ զինքը այն համոզման թէ ստուգիւ Շապուհ Բագրատունւոյ է գործս։

Իր քննութեանց արդիւնքը կը փութայ հրապարակ հանել Տէր-Մովսէսեան առաջին անգամ Արարատի մէջ (1919. էջ 40—53) եւ ապա Ս. Էջմիածին շաբաթաթերթի մէջ (1920, թ. 2)։ Գեղեցիկ գիւտը ընդհանուր հետաքրքրութիւն կը զարթեցնէ բանասէրներու

մէջ եւ նաեւ արտասահման լսելի կ'ըլլայ ուրախալի աւետիքը (Հմմտ. Հանդէս Ամս. 1921, էջ 446)։

Թէեւ Կ. Պոլսոյ թերթերէն ոմանք — քաղուածաբար՝ տուին նմոյշներ նորագիւտէն, բայց բաղձալին էր ամբողջական հրատարակութիւնը, որ լոյս տեսաւ խնամով Մեսրոպ Եպիսկոպոսի եւ հրատարակութեամբ Էջմիածնի գիտական ինստիտուտի՝ իբրեւ Ա. Գիրք «Բնագիրներ եւ հետազօտութիւններ» շարքին։

Այժմ միայն, երբ աչքի առջեւ ունինք ամբողջը, կրնանք լրջութեամբ խօսք ընել Շապհոյ վերագրուած պատմութեանս մասին։ Ցաւալի է մեզի խոստովանիլ, թէ վաղաժամ էին մեզի հասած աւետեաց լուրերը եւ անհամապատասխան իրականութեան։ Ենթադրութեամբ վերագրուած է Շապհոյ պատմութիւն մը, որ միակ ձեռագրի մէջ անվերնագիր է։ Կը մնայ մեզի քննել, թէ որչափ հիմնաւոր է այս ենթադրութիւնը։

Ծանօթանանք նախ բովանդակութեան։ Ձեռագրին մէջ պատմութեան սկիզբը ինկած է. թերի է նաեւ վերջաւորութիւնը։ Այս վիճակի մէջ կարելի է երկու գլխաւոր մասերու բաժնել բովանդակութիւնը, ինչպէս զայս նկատած են նաեւ հրատարակիչները։

Ա. Մասը (էջ 1—36) կը պարունակէ 1. Մահմէտի մասին զրոյցներ. այս հատուածէն փոքր բաժին մը միայն մնացած է այժմ, ուր կ'ակնարկուի Սարգիս Նեստորականի դերը Մահմէտի քարոզութեան առաջին շրջանին։ Մահ-

մէտի յայտնութիւնը կը նշանակուի Պարսից «Ճապաստ Քասրէ արքայի» օրով, Հայոց ԼԶ թուականին, այն է 587։ — 2. Կը յաջորդեն Մօրիկ կայսեր մասին զրոյցներ (էջ 3—6) եւ կարգաւ 3. Հերակղ կայսեր արշաւանքն Պարսից վրայ. Ս. Խաչի դարձը Պարսկաստանէն. Սիւնեաց Բիւրեղ տիկնոջ հանդիպումը Հերակղի եւ Ս. Խաչէն մաս մը ստանալը, որ կը պահուի այնուհետեւ Հացունեաց գիւղը (էջ 6—14)։ — 4. Մահմէտ եւ յաջորդները կը նուաճեն Երուսաղէմը, Եգիպտոսը, Կիլիկիա, Միջագետք, Պարսկաստան եւ Հայաստան (էջ 14—17)։ — 5. Ահմատ որդի Մահմէտի Լեւոն կայսեր օրով կ'արշաւէ Ճենաց վրայ, ուր կը պարտուի խայտառակաբար. անկէ կը դառնայ Կ. Պոլսոյ վրայ, ուր սաստիկ պարտութիւն կը կրէ (էջ 17—25)։ — 6. Վրէժն Հայաստանէն առնուլ կ'ուզէ Ահմատ. Սահակ կաթողիկոս ընդառաջ կ'երթայ բռնաւորին մինչեւ Խառան. ուր մահուան անկողնոյն մէջ գրած թուղթը յետ մահուան իւր բարերար ազդեցութիւնը կ'ունենայ Ահմատի վրայ եւ կ'իջեցնէ բռնաւորին բարկութիւնը (էջ 25—29)։ — 7. Թէոդորոս Ռըշտունի եւ Վարդ Պատրիկ կը հետեւին ի նպաստ Արաբացւոց քաղաքականութեան. Վարդ Պատրիկ կը դաւէ Յունաց, որ իւր խղճին խայթ կ'ըլլայ եւ իւր յանցանքը կը քաւէ շինելով եկեղեցիներ (էջ 29—36)։

Բ. Մասը՝ էջ 37—85, յատկապէս Արծրունեաց պատմութիւնն է, իսկ Բագրատունիք

*նկատի առնուած են միայն փոխադարձ յարաբերութեան մէջ։ Վարդ Պատրիկի մահուընէն ետքը Հայաստան կը բաժնուի Բագրատունիներու եւ Արծրունիներու մէջ. առաջին շրջանին նշանաւոր կը հանդիսանայ վերջիններուն մէջ Գրիգոր Դերենիկ իր առատաբոց կենցաղով։ Դերենիկին կը յաջորդէ իր որդին Աշոտ (էջ 50), որուն օրով իր հնարագիտութեամբ անուանի կ՚ըլլայ Տաճատ Անձեւացի. որ ժամանակ մը կը բռնանայ նաեւ ամբողջ Հայաստանի, մինչեւ որ նախարարք դառնալով վերջ կու տան իր կենաց (էջ 51—57)։ Տաճատի սպանման վրէժխնդիր կ՚ելլէ Բուղայ (էջ 57—58). հայ նախարարք գերի կը վարուին Սամառա. անոնց հետ նաեւ Աշոտ Արծրունի, որ Բաղդատը Մուղուլներու յարձակման դէմ քաջութեամբ պաշտպանելուն ի վարձատրութիւն ազատ կ՚արձակուի. կը վերադառնայ հայրենիք եւ կը տիրանայ նախկին իշխանութեան (էջ 58—64)։ Աշոտի կը յաջորդէ իր որդին Դերէն. երկար կը պատմուի, թէ ինչպէս սիրահարած էր Դերէն Հերի տիրոջ՝ Ապումսարի աղջկան. եւ այս պատճառաւ Սմբատի սադրանօք սպանուեցաւ (էջ 64—71)։ Վասպուրականի իշխանութեան գլուխը կ՚անցնի Ապումրվան հակառակ Դերենի հարազատ որդւոց. բայց սա իր նենգութեանց համար զոհ կ՚երթայ Սմբատի վրէժխնդրութեան (էջ 71—75) եւ Գագիկ, Դերենիկի երէց որդին տէր կ՚ըլլայ հայրենի իշխանութեան (էջ 75—85)։ Մանր նկարագրութեամբ կը պատմուին Գագիկի*

եղբօր՝ Գուրգէնի քաջագործութիւններըԱբխազաց դէմ կռուին մէջ. բայց Սմբատ Թագաւորի ապերախտ վարմունքը հանդէպ Գուրգէնի կը գրգռէ իրեն դէմ Արծրունի երկու կորիւնները, որոնք ուխտակալութիւն կը խորհին Թագաւորին դէմ. հոս կ'ընդհատի պատմութիւնը, թուղթ ինկած ըլլալով։

Պատմութեանս արժէքը գնահատելէ յառաջ պէտք է ըսել, թէ առ հասարակ շատ խեղճ ձեռագրի մէջ պահպանուած է մեզի բնագիրը։ Ընդօրինակողը տգէտ, անհմուտ գրիչ մ'եղած է, որ ինչպէս ուղղագրութեան անծանօթ, նոյնպէս իմաստի հասկացողութենէն օտար եղած է։ Կարելի չէ վստահութեամբ հաստատել, թէ յաջողա՞ծ է առ հասարակ իր առջեւի օրինակն հարազատ ընծայել։ Կը նկատուի որ գրիչն հակառակ իր օտար հասկացողութեան թեւակոխած է նոյն իսկ բնագիրն փոփոխութեան ենթարկելու, ձգտելով լայն ճանապարհով ռամկացնել բնագիրը, թերեւս ջանալով նմանիլ Աբրահամ Կրետացւոյ "քաջախօս" հայերէնին, որուն պատմութիւնն ունէր առընթեր։ Այս ըմբռնումով ռամկախօս ձեւերու մեծ մասը կը համարիմ գրչին խակութեանց արդիւնք. ասոնց մէջ են՝ բոլոր ուղղագրական սխալները, այն գաւառական հոլովման եւ խոնարհման ձեւերը, որոնք Նորագոյն շրջանի նկարագիր կը կրեն, փիմնք[1],

[1] Էջ 6. "Միաբանեաց զամենայն յերկիրն Փռանկաց, Յունաց եւ Հայոց մեծաց եւ Աղուանից . . ." մէջ Թ. 574 կը կարդամ՝ "Միաբանեաց զզաւրս աշխարհին Յունաց եւ

պայման եւ այլն. այս պարզ կը տեսնուի, եթէ համեմատենք Ա. Մասի միւս խմբագրութեանց հետ։

Սկզբնագիրն հաւանօրէն աւելի գրաբարախառն եղած է եւ աւելի կանոնաւոր ընթացքով, թէեւ դարձեալ ռամկօրէնի նկարագրով, այնպէս ինչպէս գրուած է Մատթէոս Ուռհայեցւոյ ժամանակագրութիւնը[1]։ Այս նկարագիրը աւելի անխառն կը փայլի Բ. Մասին մէջ, ուր հեղինակն աւելի ազատ է իր գետնին վրայ եւ անկախ գրաւոր աղբիւրներէ, որոնց ենթարկուած է Ա. Մասն մէջ։

Նկատելով Պատմութեանս բովանդակութիւնը, պէտք է ըսել թէ հեղինակն կը սիրէ աւելի զրուցախառն դէպքերու նկարագրութիւնն տալ քան իսկապէս պատմութիւն մը յօրինել։ Այս տեղ ամփոփուած են հայ պատմագիրներէն եւ աւանդութենէն կէս պատմական եւ կէս առասպելական նկարագրով դէպքեր որոնք ժողովրդական ընդարձակ շրջանի մէջ հետաքրքրութիւն կրնային արթնցնել[2]։ Ժամանակա-

զՀայոց եւ զԱփխազաց»։ Էջ 9. «Եւ նայ միայբանեցոյց զաւրսն Հայոց եւ զՎրաց եւ զԱղուանից, զՄիջագետաց եւ Ցունաց եւ զՖռանկաց եւ առաջ եղ գնաց յերկիրն Վասպուրականի» — Թ. 574. «Եւ միաբանեցաւ գումարեաց զամենայն զօրս իր զՀայոց, զԽարզաց, զԱղուանից եւ զՄիջագետաց, զոր խառնեաց ի զաւրս Յունաց եւ Հոռոմայեցւոց. եւ չու արարեալ եհաս յաշխարհն Վասպուրականի»։

1 «Ձեռագրին լեզուն ոչ միայն գեղջուկ բարբառ չէ, այլ եւ նոյն իսկ շատ աւելի գրաբար է քան Վարդան Պատմիչի լեզուն»։ Աճառեան, ԲԶՄ. 1922, էջ 180—181։

2 Իբրեւ Տարօնեցի եւ շրջող Վասպուրական աշխարհի մէջ, մինչ ունէր Յովհաննէս ծանօթանալու ա-

գրական ճշդութիւն, պատմական դէպքերու եւ անուններու Հարազատ ներկայացում եւն զուր է փնտռել Հոն։ Եթէ այս տեսակէտով քննութեան առնունք ամբողջն, պիտի ներկայանայ այն Հակաժամանակագրական դէպքերու խառնակոյտ մը, որուն մէջէն ելլել անկարելի է։ Պիտի չուզենք այս կէտին մերձենալ իսկ։ Իբրեւ աղբիւր պատմութեան Համար որեւ իցէ արժէք չունի անիկա, բայց ընտիր աղբիւր է աշխարՀագրութեան եւ ազգագրութեան Համար։

Երեք խնդիր պիտի ջանանք մասնաւորապէս մեզի քննութեան նիւթ ընտրել. Պատմութեանս աղբիւրները, գրութեան ժամանակը եւ Հեղինակը։ Այս կէտերու մէջ Հիմնովին կը տարբերի մեր տեսութիւնը Տէր-Մովսէսեանի տեսութենէն։

Աղբիւրներու քննութեան անցնելով Հարկ է նախ պարզել երեւոյթ մը, որուն մտադիր եղած է նաեւ Հրատարակիչը։

Ա. Մասը իր ամբողջութեամբ կը գտնուի անջատ՝ Հին ճառընտիրներու, Ոսկեփորիկներու

---

տաճկերէնի. իր Հմտութիւնը այս լեզուին կը տեսնուի Հետեւեալ ստուգաբանութեան մէջ. «Գիէրէն(ն) որ կոչի որդի վանաց» (էջ 38), որ կը յիշէ տաճկերէն دير dairia, dera. «վանք, մենաստան» բառին վրայ. ուստի աւելի ճիշդ. քան Թովմա Արծրունւոյ մեկնութիւնը՝ «Գերանիկ որ թարգմանի ու խաւիւք խնդրեալ ի Տեառնէ» (էջ 280)։ Նման թարգմանութիւն մ՚ալ ունի Պատմութեանս Հեղինակը, էջ 16, ուր կ՚ըսուի թէ Աղեքսանդրիա քաղաքն նուաճելէն ետքը Մուշմէս «կոչեաց զանուն նորա Մսր որ թարգմանի տեղի ապաստանքաց»։

եւ նման հաւաքածուներու մէջ մէկէ աւելի խմբագրութեամբ։ Այս խմբագրութիւնները կը կրեն սովորաբար հետեւեալ խորագիրն, սկզբնաւորութիւնը եւ վերջաւորութիւնը.

«Պատմութիւն Ս. Խաչին որ Հացունեաց կոչի, եւ թէ որպէս դարձաւ ի Պարսից աշխարհէն խաչն աստուածընկալ. եւ յայնժամ մասն ընկալեալ տիկնոջն Սիւնեաց։

Եւ եղեւ յետ թագաւորելոյն Մաւրկայ արքային Հոռոմոց, քանզի առեալ էր նորա կին զԾաւրրան քոյր Խոսրովու արքային Պարսից, որդւոյ Ջարմասպայ. Զի յորժամ թագաւորեաց Մաւրիկ ի Կոստանդնուպոլիս, հաստատեցաւ թագաւորութիւն նորա յոյժ յոյժ. քանզի եկեալ զամենայն աշխարհն Հռոմայեցւոց. եւ դարձեալ ի կողմանս Հարաւոյ եւ բռնաբար եկեալ զԵգիպտոս։ Եւ եկն յԵրուսաղէմ եւ ածեալ պարիսպ շուրջանակի պատեաց զնա... (վերջ) ի սորա (Վարդ Պատրիկի) աւուրս յայտնեցաւ սուրբ խաչն որ ի Վարագ. եւ էր թվականն Հայոց ՃԲ. եւ Քրիստոսի փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Ձեռագիրք՝ մեր Մատենադարանի թ. 34, թղ. 309—318ա (Ցուցակ, էջ 192). 574, թղ. 11բ—26բ։ — Ս. Ղազարու՝ թ. 200, թղ. 276բ—283ա (=Ճառընտիր Ա. 1224էն. Ցուցակ, էջ 18). 203, թղ. 32ա—43ա (ԺԳ. դար, Ցուցակ, էջ 116), 222, թղ. 298ա—256ա (Ճառընտ. ԻԳ. Ցուց. 339)։ Բեռլին, թ. 46, թղ. 146ա։ Պարիս, Ancien

fonds, 88 (Macler, 178, 341 ա, ԺԲ. դար)։ հմմտ. նաեւ անդ (Macler) 184, 304 (ուրիշ ձեռագիրներու մասին հմմտ. Տէր Մովսէսեան, էջ XXIII)։

Այս խմբագրութենէն մաս մը հրատարակած է Հ. Ալիշան Հայապատում, § 183 (փոքրադիր հրատարակութեան Ա, էջ 498—501 = Մխր թ. 574, թղ. 15 ա—17 ա)։

Մխր թ. 574 բաժնած է ամբողջը մէկ խորագրի տակ ա—դ հատուածներու (այս ինքն ա. Մօրիկ կայսր, բ. Հերակղ, գ. Մահմետ եւ Սահակ կաթողիկոս, դ. Վարդ պատրիկ. ամէնէն վերջը՝ Պետրոս Գետադարձի սքանչելիքը)։

Նոյնը քիչ մը տարբեր խմբագրութեամբ կը ներկայացնեն ուրիշ ձեռագիրներ, ուր երկու հատուածներու բաժնուած է ուրոյն խորագիրներով այսպէս։

ա. Պատմութիւն Ս. Խաչին թէ որպէս գնաց գերի ի Պարս եւ թէ որպէս դարձաւ ի Պարսից Խաչն աստուածընկալ։ "Եւ եղեւ յետ թագաւորելոյն Մօրկայ...”։

բ. Պատմութիւն Ս. Խաչին թէ որպէս դարձաւ ի Թավրիզոյ եւ բերաւ յԱրզրում ի Կարնոյ քաղաք, Թէոդուպօլիս։ "Իսկ արքայն Հերակլ...”։

Մխր Մատենադարանի թ. 224, թղ. 418 ա—422 բ։ Ս. Ղազարու թ. 247, թղ. 178 ա—205 (Ոսկ. Ը. Ցուցակ, էջ 681—82)։ Հմմտ. եւ թ. 262, թղ. 94 ա—96 բ (Ցուց. 825, Ոսկեփորիկ ԻԳ., մաս մը միայն)։

*Այս խմբագրութեան կը վերաբերի Նաեւ Արարատ 1888, էջ 399—404 հրատարակուած օրինակը, ուր դուրս ձգուած են սկիզբէն եւ վերջէն ընդարձակ մասեր: Խորագիրն, սկզբնաւորութիւնն եւ վերջաւորութիւնն է հոս.*

*«Պատմութիւն Ս. Խաչին Հացունեաց, զոր էառ ի Հերակլեայ կայսերէն Բիւրեղ տիկինն Սիւնեաց: Ի ժամանակս Մօրկայ թագաւորին Յունաց էր խաղաղութիւն ամենայն աշխարհիս, զոր ոմանք յառակս արկեալ ասէին՝ թէ իբրեւ ի ժամանակս Մօրկայ նստեալ ես յանհոգս...: (Վերջ) Արար վանս միաբանութեան. գնեաց զաւանն Հացունեաց եւ զըՍունդն աւանին եւ փանացն... տուն կարգեցին եւ ամ յամէ զնոյն առնել զենմամբ խոյոց եւ ղուարակաց ի պատիւ Ս. Նշանին:»*

*Հաւանօրէն հրատարակչէն են այս յապաւումները սկիզբէն եւ վերջէն. այնպէս որ Արարատի օրինակը ուրոյն խումբ մը չիներկայացներ:*

*Այս կրկին խմբագրութիւններէն*[1] *առանց տարակուսի առաջինն է հնագոյնը, որուն հնութիւնը կը հասնի առ անագան մինչեւ ԺԲ դար,*

[1] *Հացունեաց խաչի Պատմութեան հետ որ եւ իցէ ակերս չունի այն բնագիր հատուածը, որ այսպէս կը սկսի. «Յաղագս Ս. Խաչին ի Հերակլեայ պատմութեանց: Ի ժամանակի յորում թագաւորեաց Պարսից Խոսրով ամբարիշտ թագաւորն, սկսաւ նախանձել ընդ աստուածակարգ թագաւորին Հերակլի: Հմտ.* Н. Марръ, Антіохъ стратигъ, Плѣненіе Іерусалима Персами въ 614 г. С. Петербургъ, 1909, *էջ* 52—59 *հանած Էջմ.* 940 (= *կար.* 920) *ձեռագրէն (Հրաշափառ տօնամակ, գրուած* 1456 *ին):*

բայց յամենայն դէպս 1224էն յառաջ, երբ գրուած է Ս. Ղազարու ճառընտիրը։ Ուստի հարկ է մերժել Տէր-Մովսէսեանի (էջ XX) այն հաստատութիւնը, թէ “Մեր Ձեռագրի պատմութեան մի մեծ հատուածը, լեզուական փոփոխութիւններով, ընդօրինակել է Մովսէս Երզնկացի իւր Ոսկեփորիկ յայտնի ճառընտրի մէջ՝ Մօրիկ կայսեր, Հացունեաց խաչի, Սահակ կաթողիկոսի Արաբացւոց Մահմետ զօրավարի հետ հանդիպման պատմութիւնները, իբրեւ յաջորդական գլուխներ”։ Մովսէս Երզնկացի վախճանած է 28 Մայիս 1323, ուրեմն Պարիսի եւ Ս. Ղազարու ճառընտիրներու գրութենէն շատ վերջը. որով իր փոխառութիւնը հարկ չկայ ուղղակի Ձեռագրէս համարելու, այլ աւելի հաւանօրէն քաղած է հնագոյն ճառընտիրներէն։

Այս հատուածներու աղբիւր “Շապհոյ-Պատմութեան հետ այնպէս անձուկ է, որ հարկ է ենթադրել թէ մին կամ միւսը սկզբնագիր եղած է։ Անշուշտ ճառընտիրներն աւելի անաղարտ պահած են սկզբնագիրն. ուր գրութեան ոճն աւելի զօրաւոր է, լեզուն աւելի կանոնաւոր, միօրինակ եւ հին նկարագրով քան Պատմութեան մէջ, որ յայտնապէս ենթարկուած է նոր խմբագրութեան։ Բովանդակութիւնը նոյն է երկուքին մէջ ալ, սակաւ տարբերութեամբ։

Այսչափ նմանութիւն հարց կը յարուցանէ միոյն կամ միւսին առաջնութեան մասին։ Տէր-Մովսէսեան այս հանգոյցը դիւրաւ կը լուծէ, առանց երկար դեգերելու անդրանկութեան իրա-

ւումբը պատմութեան տալով (էջ XX)։ Եւ յիրաւի՝ պատմութիւնը ունի ինչ ինչ առաւելութիւններ, յաւելուածոյ մասեր, որոնք կը խօսին ի նպաստ առաջնութեան։ Ընդունելով հանդերձ պատմութեան առաջնութիւնը՝ բնագրին հարազատութիւնը բայց ոչ ամբողջութիւնը աւելի սիրով պահուած կը համարիմ Ճառընտիրներու մէջ։ Ասոնք իբրեւ կրօնական-աստուածաբանական նիւթերու հաւաքածուներ, քաղած են այնպիսի հատուածներ միայն, որոնք իրենց շինիչ բովանդակութեամբ օգտակար կրնան ըլլալ ժողովրդեան։ Այս ծրագրով դուրս ձգած են Ա. Մասի սկզբի հատուածները Մահմետի երեւման մասին. նոյնպէս Բ. Մասը ամբողջութեամբ։ Բայց կապակցութեան համար ստիպուած են առնուլ Մահմետի Հնդկաստան արշաւանքի պատմութիւնը եւն։

Ա. Մասի համար հեղինակը իրեն աղբիւր ունեցած է գլխաւորաբար Ղեւոնդ։ Տէր Մովսէսեան ուղիղ նկատած է թէ “Շապուհ” կապ ունի միայն Ղեւոնդի պատմութեան հետ եւ այդ կապը շատ մօտ է ոչ միայն պատմական մանրամասնութիւններով, այլ մի քանի դէպքերում նոյն իսկ բառացի կրկնութիւններով”։ “Ես ընդունում եմ, որ Շապուհը գիտէր եւ ծանօթ էր Ղեւոնդի պատմութեանը, բայց որ նա կարդացել էր նոյն նիւթերի մասին նաեւ այլ գրքեր, կամ աւելի հաւանական է բերանացի պատմուածքներ լսել եւ իր գիրքը գրել է յիշողութեամբ եւ ոչ Ղեւոնդի գիրքը կամ այլ աղբիւր

սեղանի վրայ գրած» (էջ XXX)։ Կ՚երեւայ թէ Սեբէոսէն օգտուած չէ։ Բայց իրեն ծանօթ եղած ըլլալու է Թովմ. Արծրունի։ Օրինակի համար Թովմա կը գրէ էջ 255. «գագիկ Արծրունի «չինեաց զհողաբլուր բարձրավանդակն ի Մահռաշա գեօղ յափն գետոյն յեղս կոյս, որ հայի յՈստանն Ռշտունեաց, յորում տեղւոջն յառաջագոյն ապարանք պարսպաւորք եղեալ էր Վարդ պատրկի Ռշտունւոյ հայկազնոյ»։ Այս տեղւոյն կ՚ակնարկէ նաեւ «Շարակ», էջ 32. «Վարդպատրիկ մնեալ ի արքունիս իւր, որ մօտ էր ի ծովն Ռշտունեաց, որ կոչի Մահերաշայ»։ Արծրունւոյ հետքերն կը նկատուին մանաւորապէս Բ. Մասին մէջ։ Յայտնի է թէ Արծրունին է տուողը եւ «Շարակ»ն առնողը, բայց միշտ աւանդութեան զրուցախառն պատմուածքով զգեստաւորած։ Այսպիսի տեղիք հրատարակիչն նշանակած է ծանօթութեանց մէջ, այնպէս որ աւելորդ է այս տեղ օրինակներ յաճախել։

## 4.

Ե՞րբ գրուած է Պատմութիւնս։ Սրովհեան պատմութեան թելը կը հասնի մինչեւ 913 մօտաւորապէս եւ հոն կ՚ընդհատի թղթերու անկման պատճառաւ, չենք կրնար ի յառաջագոյնէ հետեւցնել, թէ հեղինակն Ժ դարու առաջին տասնեակին կը վերաբերէր՝ ինչպէս կը միտի Տէր-Մովսէսեան հաստատել։ Ըստ իս դժուարութեան կրնայ ենթադրուիլ, թէ պատմութիւնը կը շա-

բունակուէր դեռ ժամանակ մը՝ թերեւս դար մը եւս ընդգրկելով իր ծոցը։

Պատմութեան ընթացքէն կը տեսնուի թէ հեղինակն շատ ծանօթ չէ ժամանակագրութեան, ոչ միայն հնագոյն շրջանին, այլ եւ նոյն իսկ ժ դարու անցքերուն։ Այստեղ պիտի յիշատակենք այնպիսի հակաժամանակագրական կէտեր, որոնք հեղինակի ժամանակը երեւան հանելու կրնան նպաստել։ Էջ 2. կը համարի թէ Բաղդատ հիմնարկուած է Մահմետէն 587 թուին եւ այնուհետեւ եղած ամիրապետներու մայրաքաղաքը։ Յայտնի է թէ Բաղդատ առաջին անգամ եղաւ մայրաքաղաք 750ին Աբբասեան հարստութեան օրով եւ մնաց այնպէս մինչեւ 1258, երբ Բաղդատ կործանեցաւ Թաթարներէն։

Էջ 3. Մօրկայ հայրենիք կը նշանակուի “Անի քաղաքը„։ Անի իբրեւ քաղաք պատմութեան մէջ կը յիշուի սկսեալ 961էն (Շիրակ. էջ 37)։

Էջ 52. Տաճատ ամիրապետի որդին առած կը փախչի “յերկիրն Հոռոմայ առ արքայն Փոկաս„։ Դէպքը կը պատահի ըստ Ղեւոնդի (էջ 159) 780ին, երբ Բիւզանդիոնի կայսրն էր Կոստանդին։ Հեղինակը հոս կամ Փոկաս կայսրն կ'ակնարկէ, որ թագաւորեց 602—610 եւ կամ թերեւս Նիկեփորոս Բ. Փոկաս (963—969), բայց երկու դէպքին ալ անճիշդ։

Էջ 65. Հեղինակին ծանօթ է Յունաց Ռոմանոս կայսրը, որ Սմբատին թագ կը ղրկէ։ Ռոմանոս Ա. թագաւորեց 920—944, մինչ

Սմբատ վախճանեցաւ 914ին։ Որպէս զի կարենանք մեկնել այս սխալը, հարկ է հեղինակն համարիլ 920էն շատ աւելի ուշ ժամանակ մը։

Այս տեղիք արդէն բաւական են ապացուցանելու, որ Պատմութեանս գրութեան ժամանակը չի կրնար ըլլալ Ժ դարու առաջին տասնեակը, ինչպէս կը համարի Տէր-Մովսէսեան, այլ հարկ է տեղափոխել աւելի ուշ շրջան մը։

Եթէ զայս ընդունինք արդէն ապացուցուած իրողութիւն, ինքնին պիտի հետեւի թէ նաեւ հեղինակը չի կրնար համարուիլ Շապուհ Բագրատունի, որ՝ ինչպէս վերագոյն տեսանք, ապրած է առ անագան մինչեւ Թ դարու վերջին տասնեակը եւ իր Բագրատունեաց պատմութիւնը գրած է 885էն յառաջ։

Թէ Պատմութիւնս նաեւ իր բովանդակութեամբ բնաւ աղերս չունի Շապհոյ Պատմութեան հետ, զայս համոզիչ փաստերով ապացուցուց Հ. Աճառեան (Զանգ 1922, արտատպուած՝ Արձագանգ Փարիզի 1922, Թ. 22). իր փաստերը այսպէս կ՚ամփոփէ Աճառեան[1] (ԲԶՄ. 1922, էջ 180). «Ներկայ ձեռագիրը Արծրունեաց պատմութիւնն է եւ ոչ թէ Բագրատունեաց, հետեւաբար պէտք է որ ըլլայ Արծրունի գրչի գործ, չի կրնար ըլլալ Շապուհի աշխատութիւնը, որ Բագրատունի է եւ Բագրատունեաց պատմութիւնն է գրած»։

1 Հ. Աճառեան, Հայերէն նոր բառեր Շապուհ Բագրատունւոյ Պատմութեան մէջ. ԲԶՄ. 1922, էջ 179—182։

նոյնպէս կը խորհի նաեւ ուսուցչապետն Յ. Մարկուարտ, որ (նամակ 28 Սեպտ. 1922) այսպէս կ'արտայայտէ ինք զինքը. «Երբ լըսօրէն ձեռք առի «Շապհոյ Պատմութիւնը», նկատեցի անմիջապէս, որ խօսք չի կրնար ըլլալ թէ այն Շապհոյ Պատմութիւնն ըլլայ։ Մանր տարրալուծելով բովանդակութիւնը՝ երեւան եկաւ որ գիրքս ԺԱ դարէն յառաջ գրուած չէր կրնար ըլլալ։ Անիկա վաւերական պատմութիւն մըն է, ոչ Բագրատունեան այլ Արծրունեան տեսակէտով գրուած. լեզուն միջնադարեան է, աւելի ռամկօրէն քան Մատթէոս Ուռհայեցին, բայց առանց այնպիսի բացատրութիւններու, ինչպէս է այն հատակոտորն առ Ստ. Ասողկան (Բ. Գ. էջ 144), որուն մասին խօսած եմ այլուր» (հմմտ. վերը՝ էջ 187, ծն. 1։)։

Մարկուարտի տեսութիւնը գրութեան ժամանակի մասին, շատ հաւանական կ'երեւայ ինծի եւ կուգայ հաստատել այն ամէնը, ինչ որ կ'աղաղակէին ժամանակագրական վրիպակները։ Այնու որ նաեւ «Հայ պատմագիրներից եւ ոչ մէկը այն ձեռագրից որ այժմ մեր ձեռքումն է (= «Շապհոյ Պատմութիւն») չի օգտուել» (Տէր-Մովսէսեան, էջ XXX), ո՛չ Յովհաննէս Պատմաբան, ո՛չ Թովմա Արծրունի եւ ոչ Ստ. Ասողիկ, կարելի է վստահօրէն ըսել, թէ այն անծանօթ էր մինչեւ 1004 պատմագրող հեղինակներու, ուստի եւ մինչեւ այս թուականը հրապարակի վրայ գոյութիւն չունէր անիկա։

Ո՞վ կրնայ եղած ըլլալ հեղինակը։ Այս

մասին ոչ Աճառեան եւ ոչ Մարկուարտ կարծիք յայտնած են։

Որովհետեւ պատմութեան ծիրը կը յածի յատկապէս Վասպուրականի շուրջը եւ հեղինակը քաջ ծանօթ կը ցուցնէ ինք զինքը Վասպուրականի աշխարհագրութեան եւ նոյն կողմերուն սեպհական աւանդութիւններուն, հարկ է են-թադրել թէ կամ այս կողմերէն էր եւ կամ երկար շրջագայութեամբ մերձաւոր ծանօթացած էր աշխարհին։

Էջմիածնի Մատենադարանին մէկ ձեռագիրը կը ծագէ մեզի լուսոյ նշոյլ մը անստուգութեան այս մթութեան մէջ ընդնշմարելու հեղինակը, թէեւ հազիւ ճանաչելի կերպարանքով։

Ն. Քարամեանց՝ ԱՐՐՏ 1896, էջ 76 հաւանական կը կարծէ թէ Յովհաննէս Կոզեռն վարդապետի գործը ըլլայ Հացունեաց խաչի պատմութիւնը, որ Էջմիածնի գրչագրի մը նիւթոց ցանկին մէջ նշանակուած է «Յովհաննէս Կոզեռնի պատմութիւն» թէեւ բուն ձեռագրին մէջ անանուն է։ Դժբախտաբար Քարամեանց չէ նշանակած, թէ ո՛ր ձեռագրի մասին է հոս խօսքը։

Յովհաննէս Կոզեռնի յիշատակութիւնը Հացունեաց խաչի պատմութեան կից պատահական չենք ուզեր համարել։ Շատ հաւանական է որ Կոզեռն վարդապետ ոչ միայն Հացունեաց խաչի պատմութեան, այլ եւ ամբողջ «Շապհոյ Պատմութեան» հեղինակն եղած ըլլայ։

Յովհ Վարդապետ Տարօնացի[1], կոզեռն մականուանուած, ապրած է ԺԱ. դարու առաջին քառորդին, Պետրոս Գետադարձի (1019—1054) օրով։ Մ. Ուռհայեցի եւ Ա. Լաստիվերտացի կը յիշեն զինքը ժամանակակից հայ ականաւոր վարդապետներու թուին մէջ իբրեւ «այր աստուածազգեաց եւ հրեշտակակրօն եւ լի իսկ առաքելական եւ մարգարէական գրոց գիտութեամբ» (Ուռհ. 52) կամ «այր սուրբ եւ սքանչելի ճգնութեամբ զարդարեալ, եւ մեկնիչ հին եւ նոր կտակարանացն Աստուծոյ, լցեալ վարդապետական շնորհօք» (անդ, էջ 67)։

Մատթէոս Ուռհայեցի իրեն կը վերագրէ 1022ին եւ 1036ին տեղի ունեցած արեգական խաւարման եւ նման բնութեան արհաւիրքներու առթիւ բացատրութիւններ կամ «տեսիլներ», զորոնք ամփոփուած գիտէ «ի գիրս յառաջ ժամանակաց» (էջ 230)։ Նման աշխատութիւն մ'ալ կը յիշատակէ Աճառեան՝ «Յոհան կոզեռն արար ի ժամանակս իւր զոր ինչ եղեւ» (Պատմ. հայ լրագր., էջ 207)։ Անշուշտ անկէ տարբեր բան ըլլալու է այն «Հաւատոյ գիրքը», զոր կը յիշէ իր անուամբ Լաստիվերտացի (էջ 13)։ Մեզի համար սակայն աւելի հետաքրքրական է

---

1 Զարբհանալեան՝ Պատմ. հայկ. հին դպրութեան, էջ 570 եւ իրեն հետեւելով Ալիշան՝ Հայապատում. Ա. էջ 218. Յովհ. կոզեռնի վրայ կ'առնուն Ստ. Ասողիկի (էջ 185) «Յովհաննէս խաչակիր վարդապետի» համար ըսած մէկ խօսքը. առանց մեր գիտելու որ 1004ին պատմագրող Ասողիկ արդէն մեռած գիտէ այդ վարդապետը։

իր ուրիշ մէկ պատմական աշխատութիւնը, որուն ծանօթ եղած կ'երեւայ Մխիթար Այրիվանեցի, երբ կը գրէ յամի 1051. «Յովհաննէս վարդապետ Տարօնեցի, արար պատմութիւն Բագրատունեացն հրամանաւ տէր Պետրոսի» (էջ 74). հմմտ. նաեւ էջ 37 Հայ պատմագիրներու թուին մէջ. այսպէս նաեւ Մխ. Անեցի, էջ 15): Այտըեան (անդ) զանազանելով Տարօնեցին եւ Կողեռնը կը գրէ. «Յոհան Տարօնեցին որ է պատմութիւն Բագրատունեաց»: Տարօնեցի վարդապետի այս գրութիւնը կ'երեւայ այն, զոր կը նշանակէ Կարինեան Էջմիածնի թ. 1675ի մէջ. «Յովհաննու վարդապետի Տարօնեցւոյ Պատմութեան տանն Բագրատունեան՝ քառածալ, նոտրագիր գրեալ ի թղթի»:

Դժբախտաբար մինչեւ այսօր հրապարակ հանուած չէ այս պատմական երկասիրութիւնը, որ անմատչելի մնացած է նաեւ Սամուէլ Անեցւոյ, Վարդանի, Կիրակոսի եւ Ստեփ. Օրպէլեանի, ուստի եւ դժուարին է խօսք ընել անոր բովանդակութեան մասին: Բագրատունեաց պատմութեան ո՞ր շրջանը կ'ընդգրկէր անիկա. միա՞յն Բագրատունեաց պատմութեամբ կը զբաղէր, թէ նաեւ Տարօնի եւ Վասպուրականի սահմաններու վրայ կը տարածուէր:

Այն պարագան որ ըստ Ուռհայեցւոյ Յովհ. Կողեռն ընկերացած է Պետրոս Գետադարձի Տրապիզոն Վասիլ կայսեր այցելութեան, եւ այս առթիւ ներկայ գտնուած է Ջրօրհնէքի հանդիսութեան, թերեւս նոր կռուան մ'ըլլայ այս մեզի

Կողեանի վերագրելու Հացունեաց խաչի պատմութիւնը, որուն վերջը քանի մը ձեռագիրներու համաձայն կայ դէպքիս (հրաշագործութեան) յիշատակութիւնը, զոր կը պատմեն նաեւ Ուռհայեցի, Լաստիվերտցի եւ Կիրակոս:

Արդ քանի որ Հացունեաց խաչի պատմութիւնը իր նկարագրովը ծնունդ է Վասպուրական կողմանց եւ "Շապհոյ Պատմութիւնը" գրուած է Արծրունեաց շունչով եւ "պէտք է ուրիշ Արծրունի գրչի գործ", կրնայ մտածուիլ թէ Յովհ. Կողեան ըլլալով Տարօնէն՝ շրջած ըլլայ ժամանակ մը Վասպուրական աշխարհը եւ լսած հոն ժողովրդեան բերանը շրջան ընող աւանդութիւններ Վարդ Պատրիկի[1], Դերենիկի[2], Տաճատ Ընձեւացւոյ, Աշոտի, Գուրգէնի եւն վրայ, եւ այսպէս գրի առած անոնց զրոյցները, նմանելով յայսմ Յովհ. Մամիկոնեանի:

Մեր համոզումն է. 1. Թիւրիմացութեամբ ընծայուած է Շապուհ Բագրատունւոյ Պատմութիւն մը, որ գրուած է Շապուհէն շատ վերջը: 2. Պատմութեանս գրութեան ժամանակն է ԺԱ դարու առաջին քառորդը: 3. Հեղինակն է հա-

---

1 Վարդ պատրիկի դերեզմանի մասին հմմտ. Առ. Դաւրիժեցի, էջ 486—488. "զոր ծերք եւ վաղեմի մարդիկք պատմեցին... իբր զաւանդութիւն առացեալ յորդւո ի հարցն":

2 Գրիգոր Դերենիկի մասին պատմուածը շատ նման է "Հազարումէկ գիշերներու" պատմութեանց. շատ հաւանական է որ հեղինակը լսած ըլլայ պարսկական կամ արաբական աղբիւրէ "Ըղբատ Թագաւորի պատմութեան" հնագոյն մէկ խմբագրութիւնը եւ փորձած զայն հայկական հողի վրայ պատուաստել:

ւանօրէն Յովհաննէս վարդապետ Տարօնեցի, կոչուած Կոզեռն։ 4. Ասիկա ըլլայ թերեւս Տարօնեցւոյ «Բագրատունեաց պատմութիւնը», զոր գրած է Պետրոս կաթողիկոսի հրամանաւ։ Վերջին կէտիս վերջնական լուծումը պիտի տայ Էջմիածնի թ. 1675 ձեռագրին քննութիւնը։

Ինչ ենթադրութիւն ալ ընենք Պատմութեանս հեղինակի եւ ժամանակի մասին, այն ստոյգ կը մնայ թէ հոն պահուած է մեզի գրական յարգի գործ մը, յարգի մանաւանդ իր երկրորդ մասին մէջ, ուր գողտրիկ ոճով աւանդուած են պատմական շրջանէն ժողովրդական զրոյցներ, ասպետական տիպեր, որոնք խօսուն պատկերներ են հայ ժողովրդեան անդորրութեան եւ պատերազմի շրջաններէն։ Յայտնի կը տեսնուի թէ հեղինակը կը գծէ հոն հեռաւոր շրջանի պատկերը զրուցախառն ոճով, եւ որչափ կը մերձենայ նոր եւ նորագոյն շրջաններուն, այնչափ աւելի անաղօտ եւ յստակ կը ներկայացնէ դէպքերը, աստիճանաբար աւելի համապատասխան իրականութեան։ Ափսոս որ ոչինչ մնացած է մեզի նորագոյն շրջանի պատմութենէն։ Բաղձալի էր որ յաջողէր գտնել աւելի անաղարտ եւ աւելի ամբողջական օրինակ մը։

* * *

Շապուհի մասին մեր ուսումնասիրութիւնը տպագրուած էր արդէն «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ, երբ հասաւ մեր ձեռքը «ԲԱՆԲԵՐ Հայ-

*սատանի գիտական ինստիտուտի„. Գիրք Ա. եւ Բ. (1921—1922), որ երկու յօդուած կը պարունակէր Շապուհի վերագրուած Պատմութեան վերաբերեալ։ Ի լրումն մեր ուսումնասիրութեան կը բաւականանանք յիշել համառօտիւ անոնց բովանդակութիւնը։*

*Թ. Աւգալբէգեան "Կարծեցեալ Շապուհը„ խորագրով կը նուիրէ "մի քանի խօսք "Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ, գրքոյկի հեղինակն որոշելու խնդրի շուրջը„, էջ 244—254։ Աւգալբէգեան մանր տարրալուծութեան ենթարկելով Յովհ. Կաթողիկոսի տողերը Շապհոյ պատմութեան մասին եւ քննելով հակաժամանակագրական կէտերը Շապհոյ վերագրուած Պատմութեան մէջ կը յանգի այն եզրակացութեան թէ "հրատարակուած գրքոյկը չէ կարող Շապուհ Բագրատունու գործը լինել„ (էջ 253), առանց ժխտելու որ գրուածքիս հեղինակը "մեզ թողել է նշանաւոր մի ժառանգութիւն, որ ոչ միայն ընծայում է Հայոց լեզուի շատ ուսանելի մի նմուշ ու ընդլայնում է մեր պատմական ծանօթութիւնները, այլ եւ արժանաւոր տեղ է բռնում մեր գրականութեան մէջ, իբրեւ պատմական զրոյցներ պարունակող մի երկ„ (էջ 254)։*

*Երկրորդ յօդուածի մէջ՝ "Պատմութիւն աստուածընկալ Ս. Նշանին Ս. Աղբերկու եւ Շապուհ Բագրատունին„, էջ 137—140, ուշադիր կ՚ընէ Ս. Կանայեան, թէ Շապհոյ վերագրուած*

այս պատմութիւնը ձեռքի տակ ունեցած է Գրիգորիս Աղթամարցի Մշոյ Ս. Աղբերկայ վանից կեղծ կոնդակը գրելու ժամանակ, որուն մէջ բազմաթիւ բառական փոխառութիւններ կան պատմութենէն: «Շապուհի այժմ հրատարակուած պատմութիւնը հաւանօրէն մի քաղուածք է նախնականից, եւ հեղինակը գուցէ — Գրիգոր աղթամարցին, եթէ ոչ վանեցի, անշուշտ Վասպուրականցի է... Նա մանաւանդ որ Շապուհի Էջմիածին հրատարակուած այժմեան պատմագրութիւնն աւելի Արծրունեաց — եսկապէս Վասպուրականի — պատմութիւն է քան Բագրատունեաց» (էջ 140):

«Շապհոյ» պատմութեան եւ կոնդակի աղերսը մենք կը փափագէինք բացատրել պարզապէս ենթադրելով որ պատմութիւնը ծանօթ եղած է «1504ին» Գրիգորիս Աղթամարցւոյ, որ օգտուած է ըստ կամի իւր կոնդակը կեղծելու ժամանակ: Կոնդակի գրութեան կամ նորոգութեան թուականը 1504 նոյնպէս կեղծիք կ'երեւայ, որովհետեւ Գրիգորիս Աղթամարցի իբրեւ կաթողիկոս 1511էն ետքը միայն կրնար կոնդակով զբաղիլ (հմմտ. մեր «Գրիգորիս Աղթամարցի եւ իւր տաղերը», էջ ԺԸ):



# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Էջ 95. Ս. Ղազարու Բ. Ճառընտրի մանրամասն նկարագրութիւնը ունինք այժմ Հ. Բ. Սարգիսեանի Մայր Ցուցակին մէջ (Բ, էջ 61), ուր վկայաբանութիւնս այսպիսի սկզբնաւորութիւն եւ վերջաւորութիւն ունի. «Վկայաբանութիւն Կիպրիանոսի սրբոյ եպիսկոպոսի եւ Յուստինեայ կուսի: Երանելի սուրբ եպիսկոպոսն Անթիմոս տեսեալ զառաւելութիւն շնորհացն Աստուծոյ որ ի Կիպրիանոս որ յետ մկրտութեան... գործեցաւ այս ի հիւպատութեան Դիոկղետիանոսի եւ Մաքսիմիանոսի ի Նիկոմեդիա քաղաքի, թագաւորելով մեզ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր միանգամայն եւ Հոգւոյն սրբոյ... (թ. 201, թղ. 474բ—477բ):

Ասկէ տարբեր խմբագրութիւն կ'երեւայ թ. 203, թղ. 185բ—186բ (Ճառընտիր Գ = Նախկին Գ.) յիշուած վկայաբանութիւնը, որ այսպէս կը սկսի եւ կը վերջանայ. «Վկայաբանութիւն Կիպրիանոսի եպիսկոպոսի եւ Յուստիանէ կուսի. Կիպրիանոս էր այր մեծազգի աշ-

*նուակաւ եւ մեծատուն յոյժ ... Զմարմին սորին՝ հանգերձ պատմուճանն (այսպէս) գրելով տարան ի Հռոմ քաղաք եւ եդին ի կին մի մեծատուն անուանի ի Նոսա. եւ նա պատուով հանգոյց ի նշանաւոր տեղւոջ ի փառս եւ ի գովութիւն Աստուծոյ մերոյ։ Կատարեցաւ սուրբ եպիսկոպոսն Կիպրիանոս եւ Յուստինիա ի հոկտեմբերի Բ„* (*Սարգիսեան, անդ, էջ* 124)։

1922 *ապրիլին այցելելով Ս. Ղազար, փափագս էր ուսումնասիրել ի մերձուստ այս կրկին խմբագրութիւնները. բայց ի ցաւ՝ Մատենադարանի վարչութիւնը թոյլ չտուաւ ինձ առ հասարակ մերձենալ ձեռագիրներուն։*

Էջ 101. V *ձեռագիրն է այժմ թ.* 201, *թղ.* 380—382*բ* (*Ցուցակ, էջ* 55). *վերջաւորութեան մէջ “կատարեալ սրով„* V *կ'ընթեռնու “կատարեցաւ„։*

Էջ 158. 11. *Ուշագրութեան արժանի է այս տեսակէտով նաեւ “Կիւրղի ի չարչարանս եւ ի խաչելութիւնն Քրիստոսի„ ճառը “Յորժամ ի զանազան թատերս մոլորութեանցն եւ ի փողոցս քաղաքաց երեւութեանցն յաւրինեալս„ սկզբնաւորութեամբ* (*Սարգիսեան՝ Ցուցակ Բ, էջ* 105, *թ.* 202, *թղ.* 489*ա*—490*բ. Էջմիածնի՝ Գէորգեան Ցուցակ, թ.* 126), *որ Ս. Ղազարու թ.* 305, *թղ.* 151*ա*—152*ա ձեռագրին մէջ կ'ընծայուի Ոսկեբերանի* (*Սարգիսեան, անդ, էջ* 1165)։ *Այս ճառը դա-*

*տեղով սկզբնաւորութենէն բառ առ բառ կը համապատասխանէ Դանայի Մեկնութեան էջ 403—408 Յորդորակին. ուստի եւ Նոր ապացոյց մ'ալ, թէ Դանայի Մեկնութեան Բ. Մասը քաղուածոյք մըն է հնագոյն հարց գրուածներէն:*

Էջ 170, 14 *եւ* 174, 9 *Սմբատ Բագրատունւոյ մահն փոխանակ* † 722 *իմա՛* † 772։



# ՅԱՆԿ ՆԻՒԹՈՑ

---

## ՀԵՂԻՆԱԿԻՆ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ԱՌԱՆՁԻՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՄԲ

1. Տիմոթէոս Կուզ Հայ մատենագրութեան մէջ. 1909:
2. Զաքարիա եպիսկոպոս Գնունեաց եւ իւր տաղերը. 1909:
3. Կիւրիոն Կաթողիկոս Վրաց. Պատմութիւն Հայ-վրական յարաբերութեանց Է. դարու մէջ (քառասնամեայ շրջան Հայոց եկեղեցական պատմութենէն. 574—610). 1910:
4. Յովնաթան Նաղաշ եւ Նաղաշ Յովնաթանեանք եւ իրենց բանաստեղծական եւ նկարչական աշխատութիւնք. 1911:
5. Յովհաննէս Կաթողիկոս Օձնեցւոյ նորագիւտ գրուածք մը Բանին մարմնաւորութեան վրայ. 1911 (արտատպ. "Յուշարձան„է):
6. Ակնարկ մը Վիեննական Մխիթարեան Միաբանութեան գրական գործունէութեան վրայ. 1912:

7. Նիւթեր հայ վկայաբանութեան պատմութեան համար (1. Վարք Ս. Աբերկիոսի: — 2. Պատմութիւն Ս. Դիոնեսիոսի Արիսպագացւոյ: — 3. Վկայաբանական հատուածներ. քննութիւն եւ բնագիր). 1914:
8. Գաւազանագիրք Կաթողիկոսաց Աղթամարայ. 1920:
9. Հինգ պանդուխտ տաղասացներ (1. Վրթանէս եպ. Սոնկեցի: — 2. Մինաս դպիր Թոխաթեցի: — 3. Ստեփանոս երէց Թոխաթեցի: — 4. Յակոբ երէց Թոխաթեցի: — 5. Ղազար եպ. Թոխաթեցի). 1921:
10. Քանի՞ տեսակ թուական ծանօթ էր Հայոց. Կ. Պոլիս 1922 (արտատպ. Թէոդիկի 1923ի "Ամէնուն Օրացոյց„էն):
11. Ս. Եփրեմի Ասորւոյ Մեկնութիւն Գործոց առաքելոց. բնագիր. 1921:
12. Մատենագրական հետազօտութիւններ. Ա. 1922:





